# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



---





# ՄԵՐ ԿՈՒՐՍԸ ԽԱՂԱՂ, ՍՏԵՂԾԱՐԱՐ ԱՇԽԱՏԱՆՔՆ Է

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ՄՈՍԿՎԱՅԻ ԲԱՈՒՄԱՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ԺՈՂՈՎՈՒՄ 1980 Թ. ՓԵՏՐՎԱՐԻ 22-ԻՆ

Հարգելի ընկերնե՛ր:

Թանկագին մոսկվացինե՛ր:

Ի սրտե ուրախ եմ հանդիպելու ձեզ՝ մայրաքաղաքի բնակիչներին, Բաումանյան օկրուգի ընտրողներին և, ես կավելացնեի, իմ վաղեմի ծանոթների հետ: Հաճելի է իմանալ, որ դուք ընտրությունները դիմավորում եք մեծ նվաճումներով: Ձեր շրջանի, ինչպես և մայրաքաղաքի այլ շրջանների, հազարավոր աշխատավորներ արդեն կատարել են իրենց հնգամյա պլանները: Հարյուր հազարավոր մոսկվացիներ պարտավորվել են դրանք ավարտել մինչև Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը: Ի սրտե ձեզ հաջողություն եմ մաղթում, բարեկամնե՛ր:

Մեր երկիրը, բոլոր սովետական հանրապետությունները լենինյան հոբելյանը դիմավորում են սոցիալիստական մրցության, համաժողովրդական տնտեսաշինարարական խանդավառության նոր թափով: Եվ, ինչպես միշտ, առջևում է Մոսկվան՝ բազում նախաձեռնությունների հեղինակը, հերոս քաղաքը, աշխատավոր քաղաքը, ստեղծարար քաղաքը:

Այս ընտրությունները անցնում են երկու տասնամյակների սահմանագծում: Անցյալ են դարձել յոթանասնական թվականները: Սկսվում է նոր տասնամյակ: Եվ, հավանաբար, ձեզանից յուրաքանչյուրը մտածում է՝ ինչպիսին կլինեն դրանք՝ այդ ութսունական թվականները: Ի՞նչ կբերեն դրանք իրենց հետ: Ինչպե՞ս կդասավորվեն մարդկանց ճակատագրերը, ժողովուրդների և պետությունների ճակատագրերը: Իհարկե, ապագան միշտ էլ իր մեջ թաքցնում է անակնկալներ, իրադարձությունների այնպիսի շրջադարձեր, որոնք դժվար է կանխատեսել: Բայց և այնպես, մենք՝ կոմունիստներս, հավատում ենք, և ոչ միայն հավատում ենք, մենք համոզված ենք, մենք գիտենք, որ ութսունական թվականները կլինեն կոմունիստական շինարարության նոր հաջողությունների տարիներ: Դրանք կլինեն համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման և զարգացման, կայուն խաղաղության ապահովման պայքարի գործում նոր առաջընթացի տարիներ:

Այս վստահությունը խարսխվում է մեր սեփական և համաշխարհային զարգացման արդյունքների վերլուծության վրա, էկոնոմիկայում, սոցիալական հարաբերություններում և քաղաքականության մեջ առաջատար միտումների հաշվառման վրա:

Այդ տեսակետից ինչո՞վ են բնորոշ յոթանասնական թվականները:

Ամբողջ անցած տասնամյակում շարունակվում էր մեր հայրենիքի տնտեսական և գիտատեխնիկական պոտենցիալի, արդյունաբերության և գյուղա-

տնտեսության հնարավորությունների հաստատուն աճը: Դա հնարավորություն ընձեռեց էապես բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը, որը եղել և մնում է մեր ամբողջ տնտեսական գործունեության գլխավոր նպատակը: Յոթանասնական թվականներին բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները ավելացան մեկուկես անգամ: Ավելի քան 108 միլիոն մարդ բարելավեց իր բնակարանային պայմանները: Իսկ դա, ընկերնե՛ր, երկրի բնակչության 40 տոկոսից ավելին է:

Պատշաճ մակարդակի վրա է պահվում նաև Սովետական Միության պաշտպանական հզորությունը: Այսօր, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի տոնի նախօրյակին, Կենտրոնական կոմիտեն կարող է սովետական ժողովրդին հավաստիացնել, որ մենք ունենք ողջ անհրաժեշտը, որպեսզի հակահարված տանք ամեն տեսակ ռազմական պրովոկացիաների: Սովետական տերության խաղաղ ապագան ապահովված է և հուսալիորեն է ապահովված:

Մոտենում է ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակի 35-րդ տարեդարձը: Հաճելի է հաղորդել ձեզ, որ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել «ՍՍՀՄ զինված ուժերի վետերանների ու նրանց ընտանիքների նյութական դրության հետագա բարելավման մասին»: Դա Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների նկատմամբ կուսակցության և պետության մշտական հոգատարության ևս մի վկայություն է:

Յոթանասնական թվականներին մենք սկսեցինք մեր ամբողջ էկոնոմիկայի շրջադարձը դեպի ինտենսիվ զարգացում, արդյունավետության և որակի բարձրացում, շեշտը դրվեց տնտեսական գործունեության վերջնական արդյունքների վրա: Ութսունական թվականներին մենք պարտավոր ենք շարունակել և ավարտել այդ կարևորագույն գործը, որը կազմում է կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը:

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում սուր կերպով և քննադատաբար քննության առնվեցին ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքները: Դեռևս ոչ բոլոր ճյուղերը, ոչ բոլոր ձեռնարկություններն են կատարում պլանը: Դեռևս դժվարություններ կան պարենային և արդյունաբերական որոշ ապրանքների, բնակարանային հարցերում, կենցաղային ծառայությունների կազմակերպման գործում:

Այդ թերությունները վերացնելու, գործերի վիճակը բարելավելու համար պլենումը անհրաժեշտ համարեց է՛լ ավելի հաստատորեն, է՛լ ավելի եռանդուն կերպով կենսագործել կուսակցության տնտեսական քաղաքականությունը: Դրա ուղին բոլոր օղակներում կառավարման մակարդակի բարձրացումն է, տնտեսական մեխանիզմի բարելավումը, բոլոր աշխատատեղերում, աշխատանքի բոլոր տեղամասերում պատասխանատվության բարձրացումը, կարգապահության ամրապնդումը:

Այստեղ շատ բան կախված է կենտրոնական գերատեսչությունների աշխատանքից: Ահա թե ինչու պլենումը նրանց ավելի բարձր պահանջներ ներկայացրեց: Բայց պակաս նշանակություն չունի նաև տեղական նախաձեռնությունը: Չէ որ տնտեսության տարբեր ոլորտների և վիթխարի երկրի բոլոր շրջանների համար միասնական դեղատոմս ուղղակի գոյություն չունի: Պարզ է մի բան՝ այնտեղ, ուր ձեռքները ծալած նստել՝ ամեն մի հարցի առթիվ վերևից ցուցումների են սպասում, այդտեղ հաջողության չեն հասնի: Եվ, ընդհակառակը, եթե մարդիկ համարձակորեն ձեռնամուխ են լինում գործին, ասպարեզ տալիս նախաձեռնությանը, ընդօրինակում գործարար ձեռնարկումները, այդտեղ հաջողությունն ապահովված է:

Հսկայական, հիասքանչ է մեր երկիրը, ընկերնե՛ր: Մենք վիթխարի գործեր ենք անում: Եվ այսօր, 80-ական թվականների շեմին, երբ ծավալվում է կուսակցության XXVI համագումարի նախապատրաստությունը, մենք բոլոր հիմքերն ունենք հանգիստ ու վստահ նայելու ապագային: Մեր կուրսը, ինչպես և առաջ, խաղաղ ստեղծարար աշխատանքի, երկրի անծայրածիր տարածությունների հետագա վերափոխման, սովետական ժողովրդի նյութական ու հո-



գևոր հարստությունների բազմապատկման կուրսն է: Եվ ոչ ոք չի կարող մեզ այդ կուրսից շեղել:

Իհարկե, կուսակցությունը տնտեսական խնդիրներին մոտենում է սոցիալական լայն դիրքերից, էկոնոմիկան դիտելով հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմի հետ անխզելի կապի մեջ: Ինչպիսի՞ն էր այդ հարաբերությունների զարգացման գլխավոր միտումը յոթանասնական թվականներին: Կարծում եմ, որ գլխավորը սովետական հասարակության միասնության, նրա համախմբվածության հետագա ամրապնդումն էր:

Ես նկատի ունեմ գաղափարաքաղաքական համախմբվածությունը: Այն արտահայտվում է կուսակցության և ժողովրդի ամենասերտ միասնության, կոմունիստների և անկուսակցականների բլոկի անխախտության մեջ, մեր կուսակցության նախընտրական պլատֆորմի՝ համաժողովրդական հավանության մեջ, մի պլատֆորմ, որը մարմնավորված է կուսակցական համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում:

Ես նկատի ունեմ, այնուհետև, սոցիալական համախմբվածությունը: Այն արտահայտվում է բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության անխզելի դաշինքի, բոլոր սոցիալական խմբերի ու խավերի արմատական շահերի ընդհանրության մեջ, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացման մեջ:

Ես նկատի ունեմ, վերջապես, մեր երկրի ազգերի և ազգությունների համախմբվածությունը: Այն արտահայտվում է սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի սերտ միահյուսման, միաձուլման մեջ, միասնական ընդհանուր-միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի ստեղծման, ազգային կուլտուրաների բարերար փոխներթափանցման մեջ:

Հատկապես կկամենայի շեշտել այն վիթխարի դերը, որ այդ պրոցեսներում խաղացել և խաղում է Ռուսաստանի Ֆեդերացիան: Մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների միջև իրավահավասար հարաբերություններ, սովետական հանրապետությունների կամավոր միություն ստեղծելու գործում նրա ավանդը հիրավի անգնահատելի է:

Հասարակության համախմբվածությունը, միասնությունը սոցիալիզմի բացառիկ նվաճումն է, մեր անգնահատելի, անպարտելի ուժը: Իհարկե, իմպերիալիստները ևս հրթիռներ ունեն ինչպես մենք: Թե՛ նրանք, թե՛ մենք ունենք ոչ քիչ բնական հարստություններ: Նրանց մոտ ևս կան տաղանդավոր գիտնականներ, ինժեներներ, կուլտուրայի գործիչներ: Բայց նրանց մոտ չկա և չի կարող լինել հասարակության միասնություն: Եվ թող մեր թշնամիները հիշեն պատմության դասերը: Թող նրանք իմանան, որ սովետական մարդկանց միասնությունն առանձնահատուկ ուժով դրսևորվում է հենց այն ժամանակ, երբ մեզ հետ փորձում են խոսել սպառնալիքների լեզվով:

Սովետական ժողովրդի համախմբվածությունը մեր սոցիալիստական պետության հզորության հուսալի հիմքն է: Յոթանասնական թվականներին սովետական պետականությունը, նրա տնտեսական, սոցիալական և քաղաքական հիմքերը է՛լ ավելի ամրապնդվեցին: Խորանում է սոցիալիստական դեմոկրատիան: Ընդունվել է նոր սահմանադրություն՝ զարգացած, հասուն սոցիալիզմի սահմանադրությունը: Բուռն թափով տեղի է ունենում օրենսդրության նորացումը:

Անցած տասնամյակում նկատելիորեն աճեց սովետների ակտիվությունը: Է՛լ ավելի լավ երևացին նրանց հսկայական հնարավորությունները: Դա տընտեսության և կուլտուրայի, բնակչության սպասարկման, լայն պահանջարկ վայելող ապրանքների թողարկման շատ հարցերի լուծման գործում ցուցաբերվող նախաձեռնությունն է: Դա անդուլ և խստապահանջ վերահսկողությունն է կառավարման մարմինների, բոլոր ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի նկատմամբ: Դա ժողովրդական մասսաների հետ սովետների կապերի մշտական ընդլայնումն ու խորացումն է, ընտրողների պատվիրանների կատարումը: Կարծում եմ, որ հենց այդ հունով կընթա-

նա Ռուսաստանի Ֆեդերացիայի, բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների նոր կազմի աշխատանքը:

Այս ընտրություններում, ինչպես դուք գիտեք, ձևավորվում է նաև ժողովրդական դեպուտատների տեղական սովետների ամբողջ սիստեմը: Կուսակցությունը գտնում է, որ նրանց դերը պետք է անշեղորեն աճի: Խոսքը վերաբերում է առաջին հերթին երկրամասային և մարզային սովետներին: Հարկավոր է, որ նրանք հանդես գան որպես իրենց տերիտորիայում տնտեսական և սոցիալական կոմպլեքսային զարգացման գլխավոր ուժ: Նրանց նյութական հնարավորությունները պետք է է՛լ ավելի սերտորեն շաղկապել ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների հետ: Զգալիորեն ավելի պետք է խըստացվի սովետների վերահսկողությունը պլանների կատարման, սովետական օրենքների անշեղ կիրառման նկատմամբ: Որպես ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, կարող եմ հաղորդել, որ ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային և օկրուգային սովետների հիմնական լիազորությունները մենք նախատեսում ենք վավերացնել օրենքով: Այդ օրենքի նախագիծը կներկայացվի ՍՍՀՄ Գերագույն սովետի մոտակա նստաշրջանի քննարկմանը:

Ժողովրդական դեպուտատների սովետներն այսօր միավորում են մի հսկայական ակտիվ, միլիոնավոր դեպուտատներ, ապարատի աշխատողներ: Նրանց սկզբունքայնությամբ ու պահանջկոտությամբ, մարդկանց նկատմամբ նրանց հոգատարությամբ է աշխատավոր մարդը դատում այն մասին, թե ինչ է սովետական իշխանությունը: Սովետների ուժը ոչ միայն նրանց մասսայականությունն է: Այն որոշվում է ամենից առաջ նրանով, թե ինչպես է աշխատում յուրաքանչյուր, շեշտում եմ, յուրաքանչյուր դեպուտատ, յուրաքանչյուր պաշտոնատար անձ:

«Պաշտոն» և «պարտք». ռուսերեն այս բառերը միևնույն արմատից են: Ժողովրդի հանդեպ կուսակցական, ծառայողական, մարդկային սեփական պարտքի մասին հարկավոր է միշտ հիշել: Առանց այդ պարտքի անշեղ կատարման, առանց խոսքն ու գործը ամուր շաղկապելու կարողության, չկա և չի կարող լինել իսկական կուսակցական և սովետական աշխատող: Մեծ աշխատասիրություն և կարգապահություն, պահանջկոտություն իր նկատմամբ և անկաշառ ազնվություն՝ ահա նրա բարի համբավի հիմքը: Եվ այդ համբավը հարկավոր է հաստատել ամբողջ կյանքում և ամբողջ կյանքով:

Աշխատողի հեղինակությունը, ինչպիսի պոստ էլ նա գրավի, դրսից չի տրվում: Այն նվաճվում է անձնական ջանքերով, ամենօրյա աշխատանքով, ռեալ գործերով: Միայն այդպես կարելի է արժանանալ ժողովրդի հարգանքին: Իսկ սովետական դեպուտատի համար, պետական գործչի համար դրանից բարձր ոչինչ չկա և չի կարող լինել:

Ընկերնե՛ր: Թույլ տվեք այժմ անդրադառնալ արտաքին քաղաքականության և արդի միջազգային դրության մի քանի հարցերի:

Նախ և առաջ, անհրաժեշտ է շեշտել, որ անցած տասնամյակը նշանավորվեց սոցիալիստական ընկերակցության երկրների համագործակցության հետագա զարգացմամբ ու հարստացմամբ: Այդ համագործակցությունը եղբայրական երկրներից յուրաքանչյուրի զարգացման հզոր արագացուցիչն է: Դա նաև այս բարդ ու անհանգիստ ժամանակներում վստահ առաջընթացի մեր ընդհանուր երաշխիքն է:

Եղբայրական երկրների միասնության ուժը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ուժը հատկապես համոզիչ կերպով դրսևորվեց այն հզոր աջակցությամբ, որ ցույց տրվեց Վիետնամի ժողովրդին ամերիկյան, ապա և չինական ագրեսորների դեմ նրա մղած պայքարում: Այդպես կլինի նաև այսուհետև, եթե որևէ մեկի խելքին փչի ձեռք բարձրացնել այդ հերոսական երկրի խաղաղության և անվտանգության վրա: Մեր համերաշխությունն ու աջակցությունը նաև Լաոսի ու Կամպուչիայի ժողովուրդների կողմն է, որոնք երկարատև պայքարում նվաճեցին նոր կյանքի իրենց իրավունքը:

Միջազգային կյանքի հիմնական գործոններից մեկն է դարձել սոցիալիստական ընկերակցության երկրների կողմից վարվող խաղաղության քաղաքականությունը, լարվածության թուլացման և համաշխարհային հրթիռամիջուկային պատերազմի սպառնալիքի թուլացման համար նրանց համատեղ պայքարը: Այդ պայքարն է այժմ մարդկության խաղաղ ապագայի գլխավոր երաշխիքը:

Խաղաղության ամրապնդման և սպառազինությունների մրցավազքի սանձահարման բնագավառում վերջին տասնամյակում միջազգային համաժողովներում ընդունված փաստորեն բոլոր կարևորագույն որոշումները, ինչպես նաև այդ հարցերի շուրջ վարված կարևորագույն բանակցությունները սոցիալիզմի երկրների նախաձեռնության արգասիքն են: Զինաթափման և միջազգային համագործակցության հարցերի վերաբերյալ նրանց կոնկրետ առաջարկությունները մեր դարաշրջանում խաղաղության ապահովման լայն, հեռամետ և ռեալիստական ծրագիրն են: Այդ ծրագրի կենսագործման համար մենք կպայքարենք, կպայքարենք հաստատակամորեն և անդուլ կերպով:

Այժմ, երբ իմպերիալիզմի ուժերը հակահարձակման են անցել լարվածության թուլացման, խաղաղության, ժողովուրդների իրավունքների դեմ, այդ մեծագույն արժեքների պաշտպանության գործում սոցիալիզմի երկրների գործողությունների միասնությունը կարևոր է ավելի, քան երբևիցե: Եվ իրենց այդ պատմական խնդիրը մեր երկրները, վստահ եմ, արժանավայել կերպով կկատարեն:

Մեր արտաքին քաղաքականության ուժն այն է, որ դա համապատասխանում է ինչպես սոցիալիզմի երկրների, այնպես էլ առհասարակ աշխարհի բնակչության հսկայական մեծամասնության կենսական շահերին: Եվ ամենից առաջ այն ժողովուրդների շահերին, որոնք ազատագրվել են գաղութային ճնշումից ու զբաղված են նոր, անկախ կյանքի կառուցման դժվարին գործով: Նրանց ոչ պակաս, քան սոցիալիզմի երկրներին, հարկավոր են կայուն խաղաղություն, պետությունների սուվերենության և ժողովուրդների իրավունքների խստիվ հարգում, իրոք իրավահավասար միջազգային հարաբերություններ:

Հենց այսպիսի հիմքի վրա են զարգանում մեր բարի հարաբերություններն ու փոխշահավետ համագործակցությունը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի տասնյակ պետությունների հետ, լինի դա մեծ Հնդկաստանը թե փոքրիկ Բենինը, հանրապետական Ալժիրը թե միապետական Հորդանանը, հարևան Թուրքիան թե մեզանից հեռու գտնվող Բրազիլիան:

Մենք գնահատում ենք այդ բոլոր պետությունների հետ ունեցած հարաբերությունները, հարգում ենք նրանց իրավունքները, աչք չենք տնկում նրանց հարստություններին, այնտեղ չենք որոնում ռազմական բազաներ: Մենք գնահատում ենք միջազգային շատ հարցերում մեր դիրքերի մոտիկությունը, բայց չենք փորձում նրանց թելադրել, թե ինչ քաղաքականություն վարեն:

ՍՍՀՄ-ը նկատելի ավանդ է մուծել մի քանի երկրների էկոնոմիկայի, կուլտուրական շինարարության և պաշտպանության ամրապնդման գործում. և մենք դրանով հպարտանում ենք: Հավատարիմ լինելով լենինյան պատգամներին, մենք միշտ այն ժողովուրդների կողմն ենք, որոնք պաշտպանում են իրենց ազատությունն ու անկախությունը: Բայց մենք երբեք մեր օգնությունը չենք օգտագործում՝ ճնշում գործադրելու համար նրա՛նց վրա, ում այդ օգնությունը ցույց է տրված:

Այս ամենն էլ մեր հարաբերություններում ստեղծում է փոխադարձ հարգանքի և վստահության մթնոլորտ՝ հօգուտ երկու կողմերի և ընդհանուր շահերի:

Հատկապես ուզում եմ շեշտել բարի հարաբերությունների հաջող զարգացումը Հնդկաստանի հետ: Դրանք լավ են համապատասխանում երկու երկրների ժողովուրդների շահերին, Ասիայի և ամբողջ աշխարհի խաղաղության գործին: Ահա մեր բարեկամության խորհրդանիշը դարձավ վերջերս ձեռք բերված պայմանավորվածությունը մոտ ապագայում սովետական և հնդիկ տիեզերագնացների համատեղ տիեզերական թռիչքի վերաբերյալ:

Տիկին Ինդիրա Գանդիի կառավարությունն ընդունել է մեր առաջարկությունը դրա վերաբերյալ, և մենք ուրախ ենք դրա համար:

Բայց իմպերիալիզմի ռազմատենչ շրջանների, և ամենից առաջ ԱՄՆ-ի իմպերիալիզմի, քիմքին հաճելի չեն խաղաղության ամրապնդումը և ժողովուրդների ազատագրական պայքարի հաջողությունները: Տեսեք, թե ինչով պատասխանեցին նրանք կապիտալիստական շատ երկրների հետ սոցիալիստական երկրների փոխշահավետ կոնտակտների զարգացմանը, Հելսինկիի համաեվրոպական խորհրդակցության հաջողությանը, ինտերվենտների և իմպերիալիզմի վարձկանների նկատմամբ Անգոլայի և Եթովպիայի հեղափոխական ժողովուրդների հաղթանակին: Պատասխանեցին ՙյուրովի: Սկսեցին ձգձգել ՍՍՍ—2-ի շուրջ տեղի ունեցող բանակցությունները, իսկ հետո՝ այդ պայմանագրի վավերացումը: Խրախուսեցին Սադաթի դավաճանությունը, որը պառակտեց ագրեսորի դեմ ուղղված՝ արաբական միասնության ճակատը: ՆԱՏՕ-ի երկրներին պարտադրեցին ուժգին սպառազինման բազմամյա ծրագիր: Սառեցրին, իսկ մի շարք դեպքերում էլ վիժեցրին զինաթափման պրոբլեմների շուրջ վարվող բանակցությունները: Եվ, վերջապես, պրովոկացիոն որոշում ընդունեցին՝ Արևմտյան Եվրոպայում տեղադրելու ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների դեմ ուղղված ամերիկյան նոր հրթիռներ:

Ակնհայտ դարձավ, որ ԱՄՆ-ի այժմյան ղեկավարությունը վարում է լարվածության թուլացումը խարխլելու և միջազգային իրադրությունը սրելու գիծ: Նա փորձում է իր կամքը թելադրել սոցիալիստական պետություններին և մյուս երկրներին:

Արդյոք դա անսպասելի՞ էր: Իհարկե, ոչ: Հենց սկզբից պարզ էր, որ խաղաղությունն ու լարվածության թուլացումը հուսալի կերպով կարելի կլինի ապահովել միայն քաղաքական համառ պայքարով: Լարվածության թուլացումը համապատասխանում է ժողովուրդների շահերին: Դրա անհրաժեշտությունը հասկանում են պատասխանատու, ռեալիստորեն մտածող քաղաքագետները: Բայց դրան դեմ են խոշոր ուժեր, որոնք կապիտալիստական երկրներում ուղղակի կամ անուղղակի կերպով աշխատում են պատերազմի նախապատրաստման նպատակով. այդ ուժերն են զինվորականությունը, նրա հետ կապված մոնոպոլիաները, պետական ապարատում և մասսայական ինֆորմացիայի միջոցներում նրանց դրածոները:

Եվ որքան կրճատվում են մյուս երկրների ու ժողովուրդների վրա իշխելու իմպերիալիզմի հնարավորությունները, այնքան կատաղաբար են դրան արձագանքում առավել ագրեսիվ և անհեռատես ներկայացուցիչները: Այդ ագրեսիվությունը զսպել կարող են միայն խաղաղասեր պետությունների հզորությունն ու խելամիտ քաղաքականությունը և ժողովուրդների վճռականությունը՝ վիժեցնելու համաշխարհային տիրապետության հավակնորդների վտանգավոր պլանները:

Արևմտյան Եվրոպայի երկրներին իր «հրթիռային» պլանները պարտադրելուց հետո ԱՄՆ-ը հայացքն ուղղեց դեպի Ասիա և Մերձավոր Արևելք: Նա իր նավատորմի խոշոր ուժերը մոտեցրեց հեղափոխական Իրանի ափերին՝ իբր ներկալված դիվանագետների խմբին փրկելու համար: Իսկ հետո կառչեց, իր կարծիքով, հարմար պատրվակի՝ Աֆղանստանի իրադարձություններին: Այս կապակցությամբ Ամերիկայում բարձրացված չարամիտ հակասովետական աղմուկը, թերևս, գերազանցում է նախկին բոլոր ռեկորդները:

Իհարկե, դա սոսկ պատրվակ է: Պ-րն Քարտերին և նրա շրջապատին հիանալի հայտնի է, որ Աֆղանստանում ռուսների ոչ մի «ինտերվենցիա» չի եղել և չկա: ՍՍՀՄ-ը գործել է բարեկամության մասին սովետա-աֆղանական պայմանագրի հիման վրա: Դրսից հակահեղափոխության ուժերի ներխուժումից երկիրը պաշտպանելու գործում օգնություն ցույց տալու թախանձագին խնդրանքով մեզ դիմել են միմյանց փոխարինած աֆղանական երեք կառավարություններ:

Վաշինգտոնին քաջ հայտնի է նաև ամեն ինչ՝ Պակիստանի տերիտորիայից Աֆղանստանի դեմ կատարվող ինտերվենցիայի մասին: Չէ որ ամերիկացիները չինացիների և մյուսների հետ մեկտեղ իրենք են ուղղություն տալիս այդ ինտերվենցիային, որը լուրջ սպառնալիք է ստեղծել աֆղանական հեղա-



փոխության համար, ինչպես նաև մեր հարավային սահմանի անվտանգության համար:

Սպիտակ տանը հայտնի է նաև, որ ՍՍՀՄ-ը իր զինվորական կոնտինգենտները Աֆղանստանից կհանի, հենց որ կվերանան այնտեղ նրանց ներկայությունը պայմանավորող պատճառները, և աֆղանական կառավարությունը կգտնի, որ այդ ներկայությունը այլևս անհրաժեշտ չէ: ԱՄՆ-ը բարձրաձայն պահանջում է հանել սովետական զորքերը, բայց չէ որ ինքը փաստորեն ամեն ինչ անում է այդ հնարավորությունը հեռացնելու համար՝ շարունակում և ուժեղացնում է միջամտությունը Աֆղանստանի գործերին:

Ուզում եմ ամենայն որոշակիությամբ հայտարարել. մենք պատրաստ կլինենք սկսելու մեր զորքերի դուրսբերումը, հենց որ լիովին դադարեցվեն Աֆղանստանի կառավարության ու ժողովրդի դեմ դրսից կատարվող ամեն ձևի միջամտությունները: Թող ԱՄՆ-ը Աֆղանստանի հարևանների հետ երաշխավորի այդ, և այն ժամանակ կվերանա սովետական ռազմական օգնության անհրաժեշտությունը: Աֆղանստանի կառավարությունը, իր կողմից, ինչպես հայտնի է, հստակորեն հայտնել է իր մտադրությունը՝ խաղաղության ու բարեկամության հարաբերություններ պահպանելու իր հարևանների և մասնավորապես Իրանի ու Պակիստանի հետ: Մենք, իհարկե, ողջունում ենք Աֆղանստանի այդ դիրքը:

ԱՄՆ-ի ղեկավարները գիտեն նաև, որ Աֆղանստանի կառավարությունը լիովին հարգում է բնակչության կրոնական համոզմունքները, ազատ է արձակել Ամինի կողմից բանտ նետված հոգևորականներին և պաշտոնապես իսլամը վերցրել է օրենքի պաշտպանության ներքո: Բավական անշնորհք են իսրայելական ագրեսորի հովանավորների և Իրանի դեմ ռեպրեսիաների կազմակերպիչների փորձերը՝ իրենց ներկայացնելու որպես «իսլամի պաշտպաններ»:

Այդ դեպքում ինչո՞ւ Վաշինգտոնում աշխարհով մեկ հիստերիկա են բարձրացնում: Ի՞նչ նպատակներով է սուտ տարածվում «աֆղան ժողովրդի դեմ ռուսների պատերազմի» վերաբերյալ, «Պակիստանին և Իրանին սպառնացող սովետական վտանգի» վերաբերյալ և նման այլ բաներ:

Պատասխանը պարզ է. Վաշինգտոնին ուղղակի պատրվակ է պետք Ասիայում իր էքսպանսիան ընդլայնելու համար, և նա այդ պատրվակն ստեղծում է ուզած միջոցներով:

Հակասովետական հիստերիան պետք եղավ ոչ միայն այն նպատակով, որ այդ ալիքի կատարին ինչ-որ մեկը հաղթանակ ձեռք բերի աշնանը կայանալիք պրեզիդենտական ընտրություններում: Գլխավորն այն է, որ ԱՄՆ-ը մտահղացավ իր ռազմական բազաների ցանցն ստեղծել Հնդկական օվկիանոսում, Միջին և Մերձավոր Արևելքի երկրներում, Աֆրիկայի երկրներում: ԱՄՆ-ը կուզենար այդ երկրները ենթարկել իր հեգեմոնիային, անարգել կերպով քամել նրանց բնական հարստությունները: Եվ միաժամանակ նրանց տերիտորիաներն օգտագործել սոցիալիզմի աշխարհի և ժողովրդաազատագրական ուժերի դեմ ուղղված իր ստրատեգիական ծրագրերում: Ահա թե որն է էությունը:

Միայն թե ժամանակակից գաղութարարները սխալվելու ռիսկի են դիմում: Հիմա նախապատերազմյան ժամանակը չէ և նույնիսկ 50-ական թվականները չեն: Անցյալում կախյալ տասնյակ երկրներ ձեռք են բերել ինքնուրույն կյանքի և քաղաքականության փորձ: Ժողովուրդներն սկսել են ավելի լավ ըմբռնել իմպերիալիստների խաղը և գիտեն, թե որտեղ են իրենց բարեկամները, որտեղ՝ թշնամիները: Նույնիսկ աշխարհի այնպիսի շրջաններում, ինչպես, ասենք, Արևմտյան Եվրոպան կամ Ճապոնիան է, մարդիկ փորձով ճանաչել են հանգիստ, խաղաղ կյանքի և շահավետ առևտրի առավելությունները: Նրանք այնքան էլ հեշտությամբ չեն հրաժարվի լարվածության թուլացումից՝ ի հաճույս համաշխարհային տիրապետության ամերիկյան պլանների: Մենք մեր կողմից առաջվա պես հանդես ենք գալիս բոլոր գծերով այդ երկրների հետ, ինչպես և, իմիջիայլոց, նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ, խաղաղ համագործակցությունը զարգացնելու օգտին:

Վաշինգտոնում սիրում են խոսել այն մասին, որ անհրաժեշտ է ապահովել ԱՄՆ նավթ առաքելու ուղիների անվտանգությունը: Դա դեռ մի կերպ կարելի է հասկանալ: Բայց մի՞թե այդ բանին կարելի է հասնել կոմունիկացիաների շրջանը դարձնելով վառոդի նկուղ: Պարզ է, որ արդյունքը հակառակը կլինի:

«Ուժի դիրքի քաղաքականության» նոր քարոզիչների արկածախնդրական «դոկտրինաները» վտանգավոր են ոչ թե միայն ինչ-որ մի առանձին երկրի կամ մի խումբ երկրների համար: Դրանք սպառնալիք են ներկայացնում բոլոր պետությունների ու ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար: Եվ այդ չարագույժ դիտավորություններին հակահարված տալը բոլոր նրանց գործն է, ում հարկավոր է և ում համար թանկ է խաղաղությունը:

Ոչ ոքի չի հաջողվի անհաբեկել Սովետական Միությանը: Մեր ուժերն ու հնարավորությունները հսկայական են: Մենք և մեր դաշնակիցները միշտ էլ կկարողանանք պաշտպան կանգնել մեզ և հակահարված տալ թշնամական ամեն տեսակ ոտնձգությունների: Եվ ոչ ոքի չի հաջողվի մեզ պրովոկացիայի ենթարկել: Պատերազմական հիստերիայի և սպառազինությունների տենդագին մրցավազքի «դոկտրինային» մենք հակադրում ենք աշխարհի խաղաղության և անվտանգության համար հետևողական պայքարի դոկտրինան: Մենք հավատարիմ ենք մեր կուսակցության XXIV և XXV համագումարների առաջ քաշած խաղաղության ծրագրին: Ուստի հիմա, ութսունական թվականներին, ինչպես և առաջ, յոթանասունական թվականներին, մենք հանդես ենք գալիս հանուն լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդման և ոչ թե դրա խափանման: Հանուն սպառազինությունների մրցավազքի կրճատման և ոչ թե դրանց ուռճացման: Հանուն ժողովուրդների մերձեցման ու փոխըմբռնման և ոչ թե նրանց արհեստական խորթացման ու թշնամանքի:

Մենք վստահորեն ու բարձր ենք պահում մեր լենինյան արտաքին քաղաքականության դրոշը՝ ժողովուրդների խաղաղության, ազատության և անկախության դրոշը, սոցիալական առաջընթացի դրոշը:

Ավարտելով, թանկագին բարեկամներ, թույլ տվեք սրտագին երախտագիտություն հայտնել աշխատավորական այն կոլեկտիվներին, այն բոլոր աշխատավորներին, որոնք ինձ առաջադրել են Ռուսաստանի Ֆեդերացիայի Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու և պաշտպանել են իմ թեկնածությունը: Շնորհակալություն այն բարի խոսքերի համար, որ այսօր հնչեցին այս ամբիոնից: Կոմունիստների և անկուսակցականների վստահությունը ես դիտում եմ որպես մեր փառապանծ լենինյան կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության հավանություն, որպես ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի կոլեկտիվ գործունեության բարձր գնահատական:

Ուզում եմ հավաստիացնել ձե՛զ, ընկերնե՛ր, որ ես, ինչպես մինչև հիմա, կաշխատեմ արդարացնել ձեր մեծ վստահությունը: Մարդկանց խաղաղ կյանքը, նրանց ստեղծագործական աշխատանքը, նրանց բարեկեցությունն ու հոգևոր աճը՝ հանուն այս ամենի են ապրում ու պայքարում կոմունիստները: Ահա թե հանուն ինչի ենք քվեարկելու մենք՝ սովետական մարդիկս:

**(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական հետաքրքրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով):**

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՏՈՄԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԻ ՇԻՆԱՐԱՐՆԵՐԻՆ, ՄՈՆՏԱԺՈՂՆԵՐԻՆ, ՇԱՀԱԳՈՐԾԱՅԻՆՆԵՐԻՆ, ՄԵՔԵՆԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԻՆ, ԿԱՌՈՒՅՑԻ ԲՈԼՈՐ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻՆ

**Թանկագին ընկերնե՛ր:**

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ի սրտե շնորհավորում է ձեզ Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարության հաջող ավարտման և 410 հազար կիլովատ հզորությամբ երկրորդ էներգաբլոկի գործարկման առթիվ:**

**Աշխատանքային այդ նվերը, որով դուք հայրենիքին ուրախացրիք Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի շեմին, էլեկտրակայանի կառուցման բոլոր մասնակիցների նպատակասլաց աշխատանքի, ստեղծագործական նախաձեռնության և ՍՄԿԿ XXV համագումարի մշակած՝ ատոմային էներգետիկայի արագ զարգացման ծրագրի իրականացման համար բարձր պատասխանատվության արգասիքն է:**

**Ձեռք բերված հաջողությունները հնարավոր են դարձել լայնորեն ծավալված սոցիալիստական մրցության, էներգետիկների և էներգաշինարարների բազմազգ կոլեկտիվին համախմբելու և դաստիարակելու ուղղությամբ կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական մասսայական աշխատանքի շնորհիվ:**

**Հայաստանի ատոմային էլեկտրակայանի ստեղծումը մեր հայրենիքի շատ միութենական հանրապետությունների, երկրամասերի և մարզերի ինտերնացիոնալ կարևոր ներդրումն է Հայաստանի և անդրկովկասյան մյուս հանրապետությունների արտադրողական ուժերի հետագա վերելքի, երկրի հարավային շրջանների վառելիքաէներգետիկ հաշվեկշռի կառուցվածքի բարելավման գործում:**

**Ուրախալի է նշել, որ ատոմային էլեկտրակայանի շինարարության ժամկետների կրճատման հետ մեկտեղ ապահովվել է առաջին էներգաբլոկի նախագծային տեխնիկատնտեսական ցուցանիշների հաջող յուրացումը, էլեկտրաէներգիայի արտադրության արդյունավետության բարձրացումը:**

**Ձեզ, թանկագին ընկերնե՛ր, տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարում մաղթում եմ քաջառողջություն և աշխատանքային նոր հաջողություններ՝ ի բարօրություն մեր բազմազգ հայրենիքի:**

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**

## Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակին ընդառաջ

**Վլադիմիր Իլյիչ Լենինի կյանքը, նրա մտքերը, գործերը, վարվելակերպը գրող Մարիետա Շահինյանի ստեղծագործության գլխավոր թեման է:**

**Նրա ամեն մի նոր ելույթ արժանանում է ընթերցողի մըշտական հետաքրքրությանը, հուզում բոլոր նրանց, ում համար թանկ է հեղափոխության առաջնորդի, համաշխարհային պրոլետարիատի առաջնորդի կերպարը: Այսօր ընթերցողին կծանոթացնենք Մ. Շահինյանի նոր ստեղծագործության— Վոլոդյա Ուլյանովի մասին ակնարկի հետ՝ զետեղված «Իլյիչի հայրենիքը» գիրք-ալբոմում, որը վերջերս լույս է ընծայել «Молодая гвардия» հրատարակչությունը:**

# *ԵՐԿԻՐ, ՈՒՐ ՔԱՅԼԵԼ Է ՍԿՍԵԼ ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎԸ*

**ՄԱՐԻԵՏԱ ՇԱՀԻՆՅԱՆ**
Սոցիալիստական աշխատանքի հերոս,
Լենինյան մրցանակի դափնեկիր

I

Այն ժամանակներում, մեզնից հարյուր տարի առաջ, ռուսական հինավուրց Սիմբիրսկ քաղաքը փոքր-ինչ այլ էր, և Վոլգան էլ նրա մոտ այլ տեսք ուներ: Կիսագոտևորելով ափը՝ նա գալարապտույտ աղեղնավորում էր այն բարձրավանդակը, ուր գտնվում էր Սիմբիրսկը:

Գեղեցիկ էր Վոլգան քաղաքի վերնամասից՝ Վենցայից, ինչպես և ներքևից՝ շոգենավով քաղաքին մոտենալիս: Հիմա ուղղել են Վոլգան նավարկությունը հեշտացնելու համար, և այն, ինչպես և նրանից երևացող տեսարանը, արդեն այնպիսին չէ, որով հիանում էին Ուլյանով երեխաները Վենցայից նայելիս: Բայց Սիմբիրսկի «լեռնային» դիրքը եղել և մնում է քաղաքի բնորոշ հատկանիշը: Երբ անցյալում կատարվեց քաղաքացիների համար կարևոր մի իրադարձություն՝ անցկացվեց ջրատար, որը փոխարինեց ջրհորի սակավ ջրին ու անկտիներով դույլերին, ապա դրա բացման ժամանակ տեղի քահանան հանդիսավոր ճառում արտասանեց, ինչպես Աստվածաշնչում. «Սարերն էլ ջրով ծածկվեցան»:

Ինձ բախտ էր վիճակվել լինելու այդ հատուկ քաղաքում, երբ Վոլգայի գալարը դեռևս մնում էր, ինչպես անցյալի շատ այլ հատկանիշներ, նման ավազի վրա մանկան թույլ ոտնահետքերի: Հարկավոր էր դրանք տեսնել ու պահել հիշողության մեջ: Վերն ասացի «հատուկ քաղաք»: Մերձվոլգյան մյուս քաղաքների համեմատությամբ այն ուներ առանձնահատուկ հայտանիշներ— արմատական կապ ռուս մեծ գրականության հետ, հիշարժան տարեթվեր՝ Պուգաչովի մասին նյութեր հավաքելու նպատակով Պուշկինի Օրենբուրգ ժամանելու և մեկնելու վերաբերյալ: Այնտեղ հաստատուն և պատկառազդու կանգնած էր գրող Գոնչարովի վաճառականական տունը, որն իր ճարտարապետական ոճով նման չէր մենատներին ազնվական գրողների, որոնք իրենց քաղաքային տները կառուցում էին կալվածատիրական դաստակերտների օրինակով և դրանց նման:



Ես տեսել եմ պատմաբան Կարամզինի գրադարանի չկարգավորված արտասահմանյան մասը, որ բերված էր Սիմբիրսկի կալվածքից: Եվ որքա՜ն անուններ կարելի էր գտնել այնտեղ: Առաջին հերթին պուշկինյան դարաշրջանի վոլգյան «Ավազակների» սերնդի բանաստեղծի՝ Յազիկովի անունը, որի տանն իջևանել է Պուշկինը: Սիմբիրսկի նահանգային դաստակերտներից տեղական քաղաքային գրադարան էին բերվում շատ հին գրահավաքածուներ, որոնք ընթերցանության բարձր կուլտուրայի, մի քանի օտար լեզուների իմացության վկայությունն էին: Հիանալի գրքեր՝ կաշվե կազմով, XVIII դարի բրոնզյա ճարմանդներով: Ակամա հիշում ես Լենինի խոսքերն անցյալի կուլտուրայի յուրացման մասին:

Իսկ կարամզինյան դեռևս չկարգավորված հավաքածուում կային ժամանակակից դեդեկտիվների նախահայրերը՝ սարսափների անգլոամերիկյան հին վեպերը: Ինձ վիճակվել է մասնակցել դրանց քարտարանները կազմելուն, և կրկին հիշեցի երկու կուլտուրաների լենինյան սահմանումը:

Գրապահեստներից մեկում, սովետական դպրոցի համար ոչ պիտանի դասագրքերի կույտում, ես գտա գրքեր այն օրիորդաց գիմնազիայի գրադարանից, ուր գրեթե նույն այդ ժամանակ սովորել էր Օլգա Ուլյանովան: Ընտրած գրքերի այդ կապոցը ես տարա Մոսկվայի Լենինյան գրադարան:

Հակասություններ, հակասություններ՝ ամեն քայլափոխում: Եվ դրանք բոլորը արտակարգ ուսանելի էին, բոլորը դառնում էին դասեր— անցյալի միջոցով՝ ապագայի մասին: Այնպես ամուր ու հաստատ էր թվում հին աշխարհը իր դասային, ազնվականական առօրյայով, արդարություն ուսուցանող իր դասական ռուս գրականությամբ, որը պայքարում է հանուն ճնշված, անգրագետ, իրավազուրկ գյուղացիության ազատագրման և այդ գյուղացիության լռությունը, նրա անզորությունը... Բայց ո՛չ, ո՛չ միայն անզորությունը:

Վլադիմիր Իլյիչը վոլգացի է: Նրա հոր՝ Իլյա Նիկոլաևիչի ողջ կյանքն ու գործունեությունը կապված է Վոլգայի խոշորագույն քաղաքների՝ Աստրախանի, Կազանի, Նիժնի Նովգորոդի, Սիմբիրսկի հետ: Նրա որդու մանկության և պատանեկության տարիներն անցել են Սիմբիրսկում և Կազանում:

Իսկ Վոլգան՝ ռուսական գետերի մայրը, ինքը կարող է շատ բան սովորեցնել: Ռիբինսկից մինչև Աստրախան իր վտակներով նա թափանցում է Ռուսաստանի սիրտը: Այն և՛ ջրառատ է գարնանը, և՛ այնքան ծանծաղ չորային ժամանակ, որ հին շոգենավերի անիվները քերծում են հատակը:

Վոլգայի հողը հայտնի է և՛ բերքով, և՛ ռուսական դաշտերի համար ահեղ աղետով՝ երաշտով: Գետափնյա բնակչությունն ազգությունների խիստ բազմազանություն է: Նա ինքը ևս հասարակ գետ չէ, սահանքավոր է, գալարուն, ոլորապտույտ: Վոլգան մայրն է բուռլակների մշտահունչ երգի, ժողովրդի տառապանքի երգի, այն մայրն է և մի այլ երգի— ինքնակալության դեմ ժողովրդի տարերային դիմադրության ազատ երգի:

*Գետի անսանձ ալիքն ի վար,*
*Կղզուց դեպի հորձանուտ,*
*Մակույկներն են նախշուն լողում*
*Կտրիճ Ստենկա Ռազինի:*

Մինչև օրս այդպես հրաշալի կատարվող այս երգը հիշեցնում է այն մասին, որ ժողովուրդը չի լռել: Պատմության մեջ է նա մխրճվել բունտերով, իր ազատաբաղձ տարերային կամքով:

Հեռու չէին Պուգաչովը և ժողովրդական լեգենդները նրա մասին: Հեռու չէր Ստեփան Ռազինն իր խմբով, հեռու չէր Պենզայի «Վիհը»՝ հեղափոխության գյուղական առաջնորդ Անտոն Պետրովով, որին տանջամահ արին ցարական ոստիկանները:

Եվ Ռուսաստանի պատմական զարգացման այս բոլոր հակասությունները, արեգակի ճերմակ լուսապատկերի բազմերանգ ճառագայթների պես, ներթափանցում էին լենինյան մանկության պատուհանից:

II

Ես միանգամից չըմբռնեցի հին Սիմբիրսկի բոլոր առանձնահատկությունների ներգործությունը մանուկ Լենինի վրա: Սկզբում խնդիրն էր գտնել ու պահպանել նրա մանկության պատառիկները: Ուլյանովսկ քաղաքը, գոնե արտաքուստ, ինձ համար քիչ էր տարբերվում Սիմբիրսկից:

Նրա ոչ բոլոր փողոցներն էին սալարկված, հատկապես ծայրամասերում, իսկ քաղաքի կենտրոնում ոչ բոլոր սալարկվածներն էին փոխարինված ասֆալտով: Երկաթյա անիվների հավերժական շարժումից և ձիու սմբակների դոփյունից խոնավության չափ փայլող հին լավ սալաքարը դեռևս դղրդում էր կառապանի կառքի և գյուղական սայլի անիվների տակ. փողոցներում դեռևս հանդիպում էին հին «գըծակառքեր», որտեղ մարդիկ նստում էին մեջքմեջքի տված: Եվ դղրդում էր այդ ամենը, հատկապես գարնանը, երբ ձյունը հալվում էր, և սահնակներն անհետանում էին, երևի նաև 1870 թ. ապրիլին... Այդ քաղաքում ընդմիջումներով ես ապրեցի մոտ չորս տարի՝ ժողովելով թանկարժեք վկայությունների պատառիկներ

Լենինի հոր դեռևս կենդանի ժամանակակիցներից, թոշակառու ժողովրդական ուսուցիչներից, Լենինի հետ գիմնազիայի միևնույն դասարանում նստած աշակերտներից, զառամյալ ծերունիներից, քաղաքի առաջին «գիտնական-բուժակ» ազգականուհուց, որն իր ձեռքով էր ընդունել Ուլյանովների երկրորդ որդու՝ ապագա Լենինի ծնունդը:

Հիշողությանս մեջ դեռևս մնում է այդ արտասովոր կնոջ նկարը՝ վաթսունականի դեմքով, որ նկարել է նրա քրոջ որդին: Ահա այն մի քանի կարճ տողերը, ըստ իս լավագույնը, որ ստեղծել է ուլյանովյան գրող Նիլին:

«Աննա Դմիտրիևնա Իլյինա, քաղաքի հնագույն մանկաբարձուհին, առաջինը՝ իսկական բժշկի կրթությամբ: Դաստիարակել է իր քրոջ աղջկան, որը հետագայում ավարտել է կանանց բարձրագույն դասընթացները (Բեստուժևյան) և եղել տնային ուսուցչուհի: Այնուհետև, ծնողներիս մահից հետո դաստիարակել է մեզ՝ ինձ ու քույրերիս: Նա ցածրահասակ էր, գեր, գլորվում էր գնդակի պես: Դեմքը վարդագույն էր, մազերով խալը այտին, սև բեղիկներով: Ծխում էր աչքերը կկոցած և խոսում բամբ ձայնով: Աղքատ ծննդկաններից փող չէր վերցնում, և առավոտից մինչև գիշեր նրա սենյակներում խռնվում էին աղքատ կանայք... Նրան ճանաչում էր քաղաքի ողջ վաճառականությունը, խորհուրդների և գործի համար նրան ընծայում թանկարժեք նվերներ, որոնք նա բաժանում էր աղքատ ծննդկաններին որպես աչքալույս: Նա հանկարծամահ եղավ սրտից: Վերջին օրերին դժվարությամբ էր քայլում, շնչահեղձ էր լինում: Միշտ ուրախ էր, առույգ: Ծնչահեղձության պահին իսկ հաճախ ծաղրում էր ինքն իրեն: Հիշում եմ, նա ընկավ անկողնու մոտ ձմեռվա մի գիշեր, երբ պատրաստվում էր ծնունդ ընդունելու (նրա հետևից մարդ էին ուղարկել քաղաքից դուրս ինչ-որ տեղ գնալու): Նրան խոզանակով շփեցին, նա տընքաց և շնչահեղձ լինելով կերկերաց, կատակեց և հանկարծ... լռեց մեկընդմիշտ»:

Այդպես բացառիկ էին Միշա Կուզնեցովի վկայությունները, որը Սիմբիրսկի գիմնազիայի առաջին դասարաններում (գուցե միայն առաջին) Վոլոդյա Ուլյանովի հետ նստել էր միևնույն նստարանին: Աչքիս առաջ է ութսունամյա այդ մարդը՝ Միշան, ծեր, փխրուն, դըժգունած դեմքի աննշան բծերով և լույս միայն աչքերում— հիշողության լույսը: Նա սրբորեն պահում էր դպրոցական տետրակները, հիշում ինչ էին անցնում առաջին դասարանում, կարող էր նկարագրել ուսուցիչներին, իսկ գլխավորը՝ մի ժամանակ, համարյա ամեն կիրակի, նա գնում էր Վոլոդյայենց տուն՝ նրա օգնությամբ հանձնարարված դասերը պատրաստելու: Նա գալիս էր առավոտ վաղ, երբ Ուլյանովների ընտանիքը թեյում էր, և Մարիա Ալեքսանդրովնան, որն այնքան էլ բարեհաճ չէր տնային աշխատանքից իրեն կտրող սիմբիրսկյան ազդեցիկ տիկնանց այցերի նկատմամբ, վարանոտ Միշային քնքշանքով նստեցնում էր սեղանի շուրջը, նրա առջև դնում մի բաժակ կաթով թեյ և հացի վրա առատորեն կարագ քսում:

Ես հարցուփորձեցի Միշային, որ խոր ծերության մեջ իսկ պահպանել էր իր անցյալի հանդեպ տածած երկյուղածությունն ու խանդաղատանքը. ինչպիսի՞ն էր նրանց հացը: Ի՞նչ կար սեղանին: Գավաթները տարբե՞ր էին, թե՞ սերվիզի: Ի՞նչ էր սիրում ուտել Վոլոդյան: Ինչպե՞ս էր պահում իրեն սեղանի առաջ:

Ուլյանովների հացը նույնիսկ կիրակի օրը մաղած ալյուրից էր: Կարագը բերում էին սառցահորից. այն ժամանակ չկար սառնարանների արհեստական սառույցը. փայտե ստիճաններով իջնում էին տան մոտ փորված, ձմռանը սառույցով լցված փոսը և ուղղակի սառույցի վրա դնում կաթով լի պուլիկներն ու գյուղական կարագի գնդերը... Բայց առավոտյան թեյի ժամանակ գլխավոր հյուրասիրությունը էժանագին (ամենաէժան և՛ այն ժամանակ, և՛ հիմա) կանաչ պանիրն էր: Ահա կանաչ պանիրն էր ամենից ավելի սիրում Վոլոդյան: Ուտում էր արագ, սեղանի շուրջը տիտիկ չէր անում. գիտեր, որ Միշային պետք էր օգնել դասերը պատրաստելու, բայց ուտելուց անմիջապես հետո վեր չէր թռչում, այլ հարցնում էր մորը. «Կարելի՞ է, մայրի՛կ». և այդ ժամանակ Միշայի հետ նրանք բարձրանում էին Վոլոդյայի առանձնական սենյակը. այն այժմ էլ տուն-թանգարանում այնպիսին է, ինչպիսին առաջ էր: «Ես դժվարությամբ էի սովորում,— խոստովանեց ինձ ծեր Միշան,— բայց նա երբեք չէր զայրանում, բացատրելիս չէր բորբոքվում, թեև արագաշարժ էր մանկության տարիներին, բայց բացատրում էր համբերատար, հստակ, կարծես ողջ կյանքում ուսուցիչ էր եղել»:

Ծեր տարիքում էլ Միշա Կուզնեցովը պահպանում էր այդ տղայական ակնածանքը նրանց հանդեպ, ում ճակատագիրը նստեցրել էր նրան նույն նստարանին: Հիշում եմ, ապրում էր նա ոչ մեծ, մթին սենյակում, նավթի լամպը սեղանին. ոչ մի անգամ չէր խնդրել քաղաքին՝ իր մոտ էլեկտրականություն անցկացնելու: Այդ մենք արեցինք առանց նրա խնդրանքի: Նրա բոլոր պատմածներից իմ հոգում առանձնապես տպավորվել է ասես նոր թխված մեծ, կլոր, մաղած ալյուրից թխած հացի բուրմունքը. ո՛չ սպիտակ, ո՛չ սև, ուղղակի մաղած ալյուրից: Այդ ժամանակ արդեն պետական խորհրդականի, Սիմբիրսկի նահանգի բոլոր դըպրոցների տեսչի (կամ արդեն դիրեկտորի), պետի՝ Ուլյանովի ընտանիքն ապրում էր ընտանիքի գլխավորի լավ աշխատավարձով: Բայց ընտանիքը մեծ էր, պետք էր կերակրել, հագցնել, կրթել: Իսկ օրինակելի տնտեսուհու համբավ վաստակած Մարիա Ալեքսանդրովնան սովորեցնում էր երեխաներին կենցաղում լինել համեստ ու պարզ: Սովորական, անուշաբույր հա՛ց:

## III

Անընդհատ տարված այդ հեռավոր, թվացյալ անցյալով, ժամերով նստելով արխիվներում և ուսումնասիրելով այդ տարիների օրացուցային տարեգրություններն ու հին «Սիմբիրսկի նահանգական տեղեկագրերը», ամեն օր շփվելով Ուլյանովների տուն-թանգարանի այն ժամանակվա ինձ համար թանկ հիանալի աշխատողների հետ, որոնք անձնվիրաբար ջանում էին վերստեղծել անցյալը, ես, այնուամենայնիվ, ապրում էի ոչ թե Սիմբիրսկում, այլ նորակերտ քաղաքում՝ ինձ ակամա գերած Ուլյանովսկում: Անուշաբույր հա՛ց: Իսկ քաղաքում բնակչության շրջանում կամպանիա էր անցկացվում դեպի հացահատիկի հասուն արտերը՝ օգնելու կոլտնտեսականներին խրձեր կապելու հնձված հարուստ բերքից: Առաջինն արձագանքեցին գործարանների բանվորուհիները: Լրագիրը այլևս հինը, սիմբիրսկյանը չէր, որ կրում էր պաշտոնեական «Տեղեկագրեր» անունը, այլ նորը, սովետականը, ուլյանովյանը և ծառայում էր ոչ թե գերատեսչությանը, այլ ճշմարտությանը— կոչ էր անում բոլորին, բոլորին խրձեր կապել: Քաղաքացիների մեծամասնության համար այդ նոր գործը համարվում էր կանացի: Ես էլ գյուղ մեկնեցի և բոլորովին անվարժ ձեռքերով, հարևանուհիներիս օգնությամբ, նրանց նայելով և քիչ-քիչ հարմարվելով խրձեր կապելու շատ նուրբ, գեղեցիկ վարպետության ռիթմին ու հաջորդականությանը, տարվեցի ինձ անծանոթ այդ գործով: Կիզիչ արևի, փոշոտ ցորենի հասկի տակ քամուց արձակված մազերը գլխաշորի տակից թափվում էին աչքերին, թրջվում քրտինքից: Կորանալ, ուղղվել, կորանալ, ուղղվել— ետ չմնալ մյուսներից, չփչացնել հանուրի աշխատանքը, այլ կապել բոլորի պես և ժամանակը զուր չվատնել, չկորցնել, այլ եղած ժամանակաընթացքում երբեք, ոչնչով չշեղվել խրձեր կապելու կայուն ձևից— կրկնակի խրթին խընդիր է այս յուրաքանչյուր աշխատանքում. պահպանի՛ր ժամանակը՝ պահպանելով որակը... Ամեն մի աշխատանքի ոսկե կանոնն է սա, որը պետք է իմանալ, որը պետք է դառնա ցանկացած պրոֆեսիայի աշխատանքային սովորույթը: Քանի դեռ սովորում էի խուրձ կապել, բացի ջանալուց, ոչ մի բանի մասին չէի մտածում, իսկ երեկոյան պետք էր օգնել մեր ողջ ճամբարի համար պատի թերթի պատրաստմանը: Եվ այստեղ պայծառ միտք ծագեց՝ մեր այսօրվա կենդանի առօրյայում անցյալի կենդանի ներկայության մասին:

Լրագրի էջերից գոչել՝ չէ՛ որ Լենինն այստեղ է: Չէ՛ որ առանց Լենինի այս բոլորը— անծայրածիր դաշտերի զով, հրաշալի երեկոն, գյուղին օգնող քաղաքացի կանայք՝ քրտնած, հոգնած, բայց աշխատանքից երջանիկ, խարույկի ծուխը, իրարից հեռու, միմյանց մոտեցող խուրձ կապողների փոխկանչերը— չէ՛ որ այս ամենը արթմնի է, երազ չէ, այս ամենը երբեք չէր լինի, եթե չլիներ Լենինը, եթե չլիներ լենինյան Հոկտեմբերը, եթե մեր սրտերում չլիներ կենդանի, գործող, երկրի վրա նոր կյանք ստեղծող Վլադիմիր Իլյիչը: Այդ մնում էր իմ հոգում, ինչպես հնձած դաշտերի բուրմունքը: Գիտակցության մեջ այդպես էր թափանցում նոր հասարակական կեցությունը՝ մեզ ևս նոր մարդ դարձնելով:

Այն օրերին, երբ ես նյութ էի հավաքում իմ առաջին գրքի՝ «Ուլյանովների ընտանիքի» համար, համակվում Լենինի նկատմամբ ինչ-որ նոր, դաստիարակող սիրո զգացումով, տեղի ունեցան այլ անակնկալ իրադարձություններ: Մենք ապրում էինք «հատուցման» ժամանակաշրջանը, երբ քաղաքն իր ուժերը նվիրում էր գյուղին օգնելուն, մասնակցելով «լենինյան հացի» ստեղծմանը, բայց և գյուղը կանչում էր մեզ, որպեսզի ստանայինք նրանից թանկագին ընծա՝ Պուշկինի նորովի ընթերցումը:

## IV

Այս իրադարձությունը կատարվել է փոքրինչ ուշ, ու ես բազմիցս և՛ գրել, և՛ պատմել եմ դրա մասին:

Ուլյանովսկից ոչ հեռու, քսան վերստի վրա (այն ժամանակ մենք դեռ հաշվում էինք վերստերով) գտնվում էր Կրեմենկի գյուղը, իսկ այդ գյուղում «Первенство» կոլտնտեսությունը: Ի՞նչ կար այդ գյուղում ցարի ժամանակ: Երկու «հենասյուն»— պանդոկը և եկեղեցին. երկու խավ— մեծաքսակ կուլակներն ու չքավոր գյուղացիները, համարյա բոլորովին անգրագետ, ընչազուրկ, վոլգյան երաշտներից, խավարից, աղքատությունից, իրավազրկությունից տառապող բատրակները: Իսկ այժմ, նոր տարվա շեմին, Ուլյանովսկի քաղաքացիները «Первенство» կոլտնտեսությունից ստացան տպագիր հրավեր՝ մասնակցելու դպրոցում կազմա-

կերպվող՝ Ալեքսանդր Սերգեևիչ Պուշկինին նվիրված կոնֆերանսին: Կոլտնտեսության դպրոցը միջնակարգ էր, և դիրեկտորն էլ կոմերիտական Ալեքսեյ Միխայլովիչ Կրուգլովն էր: Հրավեր ստացա և ես: Բքաշունչ երեկո էր, ցուրտ և քամի, երբ մեկնեցինք Կրեմենկի, իսկ երբ ոտք դրինք դպրոցի շեմին, մեզ համակեց մարզի գրեթե բոլոր շրջաններից կոնֆերանս ժամանած բազմաթիվ մարդկանց ջերմ մտերմությունը: Մեղքս ինչ թաքցնեմ, մենք՝ քաղաքացիներս, մտածում էինք, թե «տեղական ուժերին», սովորաբար, ամեն ինչում օգնել է քաղաքը— կոնսուլտանտները, շրջանի աշխատողները, բայց այստեղ նրանք նստած էին մեզ հետ կողք-կողքի և կոնֆերանսի ծավալմանը զուգընթաց ավելի ու ավելի էին թրթվում ուսերը, տարուբերում գլուխները, զարմանքով վեր բարձրացնում աչքերը. որտեղից որտեղ օգնության եկան Պուշկինի մասին պաշտոնական, ատամն առած տրաֆարետները: Ամեն ինչ՝ և՛ ճառերը, և՛ դպրոցականների ելույթները, և՛ զառամյալ ձեռնափայտին հենված պապիկի մուտքը. նա եկավ բեմի կենտրոն և արտահայտիչ, զգացմունքով անգիր արտասանեց ամբողջ «Պոլտավան». իսկ գլխավորը՝ զեկուցումներ, զեկուցումներ գյուղսովետի նախագահի, խրճիթավարի, դարձյալ ինչ-որ մեկի (Ալեքսեյ Միխայլովիչ Կրուգլովը հնարավորություն էր ընձեռել նրանց՝ ասելու իրենց մտածածն ու զգացածը Պուշկինի մասին): Այդ զեկուցումները բոլորովին նոր կերպ ներկայացրին մեծ բանաստեղծին: Հեղափոխությունից հետո վեր բարձրացած ժողովուրդը, նորովի ստեղծված դպրոցը, ժողովրդի նոր կենցաղը փոխեցին գյուղացիների վերաբերմունքը ընթերցման նկատմամբ: Իսկ այդ ընթերցումը նորովի ինքնուրույն էր: Եվ մենք՝ քաղաքի մտավորականներս, դաստիարակված ցարիզմի կողմից հալածված հանճարեղ բանաստեղծի ողբերգական ճակատագրով, նստել ու լսում, սովորում էինք, ինչպես է ժողովուրդը նորովի գնահատում իր դասականին: Ով ցանկանում է մանրամասն ծանոթանալ նրանց ելույթներին, թող կարդա իմ երկերի յոթերորդ հատորում զետեղված «Երեք ճառ Պուշկինի մասին» հոդվածը, իսկ այստեղ կասեմ միայն, թե ինչն էր զարմացրել մեզ: Ողբերգության փոխարեն՝ ուրախ, հեքիաթային Պուշկին, ինչպես հերոսկտրիճ: Ինչպե՞ս ասես չի վարվել նրա հետ ցարը. օտարերկրացի քեռիները սովորեցրել են ֆրանսերեն, իսկ դայակը՝ մերը, գեղջկուհին, սովորեցրել է նրան մայրենի ռուսաց լեզուն: Նրան պալատական համազգեստ են հագցրել, իսկ նա ռուսական բնությունն է սիրել և բանաստեղծություններում գովերգել տարվա բոլոր չորս եղանակները, և՛ ռուսական ձմեռը, և՛ գարնան գետի հորդանալը, և՛ աշունը՝ նրա սիրած ժամանակը, և՛ ռուսական ժողովրդական ծիսակատարությունները, սովորույթները: Ցարը նրան պատմաբան դարձրեց, որ փառաբանի ցարերին, իսկ նա առաջինը Պուգաչովից սկսեց և եկավ մեր կողմերը՝ նրա մասին ժողովրդական զրույցներ հավաքելու...

Եվ այստեղ զեկուցումներից մեկում նկատեցինք հապաղում: Դադար: Զեկուցողը չէր մոռացել շարունակությունը: Ինչպես իմացանք, նա ամաչել էր Պուշկինի համար: Բանն այն է, որ Սիմբիրսկից մեկնելիս Պուշկինը տեսնում է իր ճանապարհը կտրող նապաստակ և վերադառնում տուն՝ ասելով՝ վա՜տ նշան է: Իսկ կոլտնտեսականը, հասարակ ռուս մուժիկը, իր զեկուցմանը պատրաստվելիս առաջին անգամ էր կարդացել այդ բոլոր մանրամասնությունները և ամաչեց այստեղ, իր համագյուղացիների և քաղաքի հյուրերի առաջ ասել բանաստեղծի սնահավատության մասին, որ նա նապաստակից վախեցել է: Կմկմալով ու կարմրելով, նա շարունակեց: «Այստեղ Ալեքսանդր Սերգեևիչի հետ անախորժություն պատահեց, և նա քաղաք վերադարձավ»:

Մեզ համար հայտնագործությո՜ւն էր այդ: Հայտնագործություն նոր սովետական կոլտնտեսականի էության մեջ, հայտնագործություն ինքն իր մեջ, մեղքս ինչ թաքցնեմ, չէ որ մենք, համենայն դեպս ես, աչքով տալուց խուսափելու համար երբեմն թխկթխկացնում եմ փայտե սեղանին. բայց չէ՛ որ կոլտնտեսականը, զեկուցելով մեծ բանաստեղծի մասին, ամաչեց նրա թուլության համար:

Այդպես երջանկանալով գյուղին իմ ուժերը նվիրաբերելուց, ես ապրեցի սովետական գյուղի գիտակցության նոր լուսավոր պարգևն ըստանալու վիթխարի երջանկությունը:

Կարծում եմ, որ գյուղում անչափ զգացմունք է ներդրել ուսուցչական և դաստիարակչական իր գործում երիտասարդ ուսուցիչ-կոմերիտականը, պատրաստվելով այդ արտասովոր կոնֆերանսին, որտեղ կոլտնտեսականները Պուշկինին ինչպես կենդանի, լավ ծանոթ մարդու, սիրով կոչում էին «Ալեքսանդր Սերգեևիչ»:

***

Ստեղծագործական վիթխարի երջանկություն է մարդու նոր գիտակցության առաջացման բախտավորությունը, հայրենի երկրում մարդու նոր գոյավիճակի հաստատման երջանկությունը: Այն մեզ տրված է աշխատավոր հասարակ ժողովրդի նկատմամբ Լենինի տածած մեծ սիրով: Այն տրված է մեզ նաև Լենինի նկատմամբ տածած մեր սիրով: Լենինն անմահ է բոլոր նրանց մեջ, ովքեր ինքնամոռաց աշխատում են հայրենի երկրում:

«Литературная газета», № 6, 1980 г.

# ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՑԵՆՏՐԱԼԻԶՄԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԵՋ

Ա. Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ արշալույսին Վ. Ի. Լենինը սոցիալիստական արտադրության կառավարման ու կազմակերպման խնդիրը համարեց ամենադժվարինը, «որովհետև գործը վերաբերում է տասնյակ և տասնյակ-միլիոնավոր մարդկանց կյանքի ամենախոր, տնտեսական հիմքերը նոր ձևով կազմակերպելուն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 288): Առանց այդ խնդիրը լուծելու անհնար է սոցիալիզմի կառուցումն ու դրա վերաճումը կոմունիզմի: Լենինը մատնանշում էր, որ կոմունիզմի հաղթանակի վճռական պայմանն է աշխատանքի արտադրողականության բարձրացումը, «...իսկ դրա կապակցությամբ (և դրա համար) նրա բարձրագույն կազմակերպումը» (Նույն տեղը, էջ 306):*

*ՍՄԿԿ-ի, սովետական ողջ ժողովրդի վրա պատմությունը դրել է մեծ առաքելություն՝ լինել նոր հասարակարգի կառուցման պիոները: Սովետական մարդիկ ստիպված եղան ընթանալ չտրորված ճանապարհով, հաղթահարել բազմաթիվ դժվարություններ, երկրի զարգացման զանազան փուլերում որոնել ու գտնել արտադրության պետական կառավարման նորանոր ձևեր:*

*Տնտեսության կառավարումը՝ որպես պետական ֆունկցիա, առաջացել է սոցիալիստական պետության ստեղծման հետ միասին, շարունակ զարգանում է, արտադրաուժերի աճի ու արտադրահարաբերությունների վերելքի հետ զուգընթաց փոփոխվում, կատարելագործվում: Երկրի էկոնոմիկայի նոր պահանջմունքներին են համապատասխանեցվում դրա կազմակերպման ձևերն ու մեթոդները:*

*Տնտեսության կառավարումը արտադրության պրոցեսի գիտակցական կարգավորում է՝ դրա բոլոր մասերի փոխադարձ նորմալ կապը և գործունեության անխափանությունն ապահովելու նպատակով: Այդ կառավարումը տնտեսական, քաղաքական և իրավական հարաբերությունների մի բարդ ամբողջություն է: Սովետական պետությունն իր ձեռքում է պահում քաղաքական ողջ իշխանությունը և արտադրամիջոցների հիմնական մասի սեփականատերն է: Արտահայտելով հասարակության արմատական շահերն ու կամքը, պետությունը գիտակցաբար տնտեսությունը զարգացնում է սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջներին համապատասխան:*

*Սոցիալիստական պետության առանձնահատուկ դերը, արտադրությունը տնտեսական օրենքների և էկոնոմիկայի հասունացած կարիքների պահանջներին համապատասխան գիտակցականորեն կառավարելը բուրժուական պետության հանդեպ մեծագույն առավելություններ են: Դա նոր, հասարակության մինչսոցիալիստական զարգացման պատմության մեջ աննախընթաց երևույթ է, որը բնորոշ է միայն սոցիալիստական պետությանը և բխում է նրա սոցիալ-տնտեսական էությունից:*

շրջանների միջև եղած բարդ ու բազմակողմանի կապը կարող է ամբողջ հասարակության շահերին առավել արդյունավետ կերպով ծառայել միասնական պլանի օգնությամբ միայն։ Սոցիալիստական ձեռնարկությունները որպես միասնական ամբողջի՝ հանրային սեփականության առանձին մասեր կարող են գոյություն ունենալ և զարգանալ ժողովրդական տնտեսության միասնական կենտրոնացված պետական ղեկավարությամբ միայն։ Այդպիսի ղեկավարությունը բացառում է առանձին ձեռնարկությունների, երկրի գոտիների կամ շրջանների տնտեսական որևէ ինքնամփոփություն, տնտեսական ավտարկիա։

Լենինը շեշտում էր հանուն կոմունիզմի կառուցման աշխատանքի հասարակական կազմակերպման բարձր տիպն իրականացնող սոցիալիստական պետության հսկայական տնտեսական դերը և անդուլ կերպով պայքարում սովետական պետության տնտեսական ֆունկցիան վերացնելու կամ թուլացնելու փորձերի դեմ։ Տակավին 1918 թվականի կեսերին նա գրում էր. «...սովետական իշխանության հիմնական սկզբունքները մեծապես խեղաթյուրել և սոցիալիզմից ամբողջովին հրաժարվել է նշանակում այն, երբ ամեն ձևով, ուղղակի կամ անուղղակի կերպով օրինականացնում են առանձին գործարանի կամ առանձին պրոֆեսիայի բանվորների սեփականությունն իրենց առանձնահատուկ արտադրության նկատմամբ, կամ թե նրանց իրավունքը թուլացնելու կամ կասեցնելու համապետական իշխանության կարգադրությունները...» (Երկեր, հ. 42, էջ 87)։

Կոմունիստական կուսակցությունն անհաշտ պայքար էր մղում բոլոր նրանց դեմ, ովքեր հանդես էին գալիս տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման դեմ։ Օրինակ, կուսակցությունը ջախջախեց, այսպես կոչված, «բանվորական օպոզիցիան», որը 1920—1922 թթ. հանդես էր գալիս տնտեսության ղեկավարման ապակենտրոնացման անարխոսինդիկալիստական «տեսությամբ»։ Օպոզիցիան առաջարկում էր հրաժարվել արտադրության պետական կենտրոնացված ղեկավարումից և նախատեսում տնտեսության կառավարումը հանձնել արտադրական արհմիություններում միավորված «արտադրողների համագումարի» տնօրինությանը։ Հրաժարումը տնտեսության կենտրոնացված պլանային կառավարումից, տնտեսության ղեկավարության հանձնումը «արտադրողներին» (այդ թվում և մանր արտադրողներին) հավասարազոր են սոցիալիստական պետության տնտեսական-կազմակերպչական գործունեությունը վերացնելուն, տնտեսությունը տարերայնության իշխանությանը հանձնելուն։ Ուստի կուսակցության X համագումարը որոշեց այդ հայացքների պրոպագանդումը անհամատեղելի համարել կոմունիստական կուսակցությանը պատկանելու հետ։

Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիզմի կառուցումը կենտրոնացված տնտեսության, կենտրոնից տնտեսության կառուցումն է (տե՛ս Երկեր, հ. 28, էջ 519)։

Տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման հարցերն առավել կարևորվում են այժմ՝ զարգացած սոցիալիստական հասարակարգում, երբ անմիջականորեն ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, երբ արտադրության հանրայնացման և աշխատանքի հասարակական բաժանման աստիճանն անհամեմատ ավելի բարձրացել է։ Տնտեսության կենտրոնացված ղեկավարման հետագա ամրապնդումն ու կատարելագործումը տեխնիկական և տնտեսական անհրաժեշտություն են, թելադրվում են կոմունիզմին անցնելու օբյեկտիվ պահանջմունքներով, խոշոր մեքենայական արտադրության հետագա զարգացման օրինաչափություններով։

Այս դրույթի հաստատումն է երկրի էլեկտրիֆիկացման օրինակը։ Հայտնի է, որ նոր տեխնիկան (առաջին հերթին ավտոմատացման ու մեքենայացման միջոցները), տեխնոլոգիան զարգանում և ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում էլեկտրիֆիկացման հիման վրա։ Բայց էլեկտրիֆիկացիայի աճը ո՛չ միայն և ոչ այնքան քանակական, որքան որակական պրոցես է, որը պահանջում է կատարելագործել և ուժեղացնել տնտեսության կենտրոնացված ղեկավարումը։

Երկրի էլեկտրիֆիկացման ծրագրի լիակատար իրականացման համար տեխնիկական հիմք է ծառայում միասնական բարձրավոլտ ցանցը, որն ընդ-



գրկում է բազմաթիվ (ջրային, ջերմային և ատոմային) էլեկտրակայաններ։ Այդ ցանցը չի կարելի պատկերացնել առանց մեկ միասնական կենտրոնի ղեկավարության։ Խոսքը ո՛չ միայն էլեկտրակայանների աշխատանքի ղեկավարման, այլև քաղաքում և գյուղում դրանց հետ կապված բազմաթիվ տնտեսական օբյեկտների աշխատանքի ղեկավարման մասին է։

ՍՍՀՄ-ի մասշտաբով միասնական էներգասիստեմ ստեղծելու հիման վրա ժողովրդական տնտեսության համատարած էլեկտրիֆիկացումը և արտադրության համընդհանուր ավտոմատացումը կհանգեցնեն այն բանին, որ տեղի կունենա առանձին արտադրամասերի կամ ձեռնարկությունների շրջանակներում մեքենաների սիստեմից անցում մեքենաների միասնական սիստեմին՝ առանձին շրջանների և ամբողջ երկրի շրջանակներում։ Տեղի կունենա արտադրության համակենտրոնացման վիթխարի աճ քաղաքում և գյուղում։ Այդ ամենը պահանջում է է՛լ ավելի ամրապնդել տնտեսության կենտրոնացված ղեկավարումը։

Վերջին տարիներս ՍՍՀՄ-ում սկսվել է տեխնոլոգիական խոշոր պրոցեսների, ձեռնարկությունների և արտադրության ճյուղերի կառավարման ավտոմատացված սիստեմների ստեղծումը։ Կառավարման ճյուղային ավտոմատացված սիստեմների հետ միասին արդեն ստեղծվում են համապետական նշանակություն ունեցող ավտոմատացված սիստեմներ՝ պլանային հաշվարկների, պետական վիճակագրության, ՍՍՀՄ պետբանկի, ՍՍՀՄ պետստանդարտի և այլն։ Այդ սիստեմները տեխնիկական հիմք կհանդիսանան ողջ տնտեսության միասնական կենտրոնացված ղեկավարման համար, կնշանավորեն նոր, ավելի բարձր փուլ ավտոմատացման զարգացման գործում, երբ մարդն ազատվում է վերահսկողության շատ ֆունկցիաներից, ավտոմատացվում են հաշվառման ու պլանային հաշվարկների պրոցեսները, երբ կառավարման տեխնիկան հանդես է գալիս ավտոմատ մեքենաների ու սարքերի ձևով։ Այդ պայմաններում խիստ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և փոխվում կառավարչական աշխատանքի բնույթը, իսկ կենտրոնացված պետական պլանային ղեկավարման դերն անչափ աճում է։

Սոցիալիստական էկոնոմիկայի նյութական տարրերի աճի հետ մեկտեղ տեղի է ունենում սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացում և դրանց վերաճում կոմունիստականի։ Բարձրանում է հանրայնացման մակարդակը, արտադրության բոլոր միջոցները վերածվում են համաժողովրդական սեփականության, գոյանում է միասնական ղեկավարություն պահանջող միասնական ֆոնդ։

Այսպիսով, ընդլայնված սոցիալիստական վերարտադրության (նյութական տարրերի և արտադրահարաբերությունների) երկու կողմերը ծավալվում են արտադրության վիթխարի համակենտրոնացման ու կենտրոնացման և ժողովրդական տնտեսության հանրայնացման մակարդակի վերելքի նշանաբանի ներքո։ Այդ պայմաններում կապիտալ ներդրումների, տեխնիկական առաջընթացի, գնագոյացման և այլ հարցերում միասնական քաղաքականության իրականացումը դառնում է առավել նշանակալից ու հրատապ։

Մենք դեպի կոմունիզմ ենք ընթանում տնտեսության զարգացման կենտրոնացված պլանային ղեկավարման ոչ թե թուլացման, այլ ըստ ամենայնի ամրապնդման միջոցով։ Կենտրոնացված պլանային ղեկավարումը, որպես սոցիալիստական տնտեսության կառավարման հիմնական սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի բաղկացուցիչ մաս, այն ժամանակ է միայն ճիշտ և այն ժամանակ է տնտեսական բարձր արդյունք տալիս, երբ կենտրոնացված կարգով լուծվում են ո՛չ թե բոլոր, այլ միայն առավել արմատական հարցերը։ Դեմոկրատական ցենտրալիզմը արտադրության կառավարման գործում ենթադրում է միայն հիմնական հարցերի կենտրոնացում պլանային ղեկավարության կենտրոնական մարմինների ձեռքում։

Տնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման դերը արտադրության ղեկավարման դեմոկրատական հիմունքների թուլացման հաշվին չէ, որ աճում է։ Այլապես հարկ կլիներ ընդունել, որ դեմոկրատիզմը ապագայում

աստիճանաբար կվերանա: Դա կնշանակեր հրաժարվել դեմոկրատական ցենտրալիզմից, անցնել միայն ցենտրալիզմին:

Կենտրոնացված ղեկավարության դերի աճը զուգակցվում է դեմոկրատական հիմունքների ուժեղ զարգացման հետ: Դա է արտադրության մեր կառավարման սիստեմի պրոգրեսիվ նշանակությունը: Միայն այդպես կարելի է հասկանալ դեմոկրատական ցենտրալիզմի զարգացման երկու կողմերի դիալեկտիկան:

Կառավարման կենտրոնացումը արմատական հարցերում զուգակցվում է տեղական նախաձեռնության և աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական ինքնագործունեության առավելագույն զարգացման հետ: Սա դեմոկրատական ցենտրալիզմի երկրորդ առանձնահատկությունն է, որը բացառիկ կարևոր նշանակություն ունի արտադրաուժերի անընդմեջ ու արագ զարգացումն ապահովելու գործում: Լենինը նկատել է, որ կենտրոնական մարմինների որոշումը չի կարելի իրականացնել մեխանիկորեն. դրանք հարկավոր է կատարել՝ հաշվի առնելով «տեղական առանձնահատկությունները, այլև տեղական ձեռներեցությունը, տեղական նախաձեռնությունը, ընդհանուր նպատակին հասնելու ուղիների, պրիոմների և շարժման միջոցների բազմազանությունը» (Երկեր, հ. 27, էջ 244): Նա շեշտում էր, որ տնտեսության կառավարման բոլոր հարցերում համապետական միջոցառումներ իրականացնելիս «հաշվի չառնել տեղական առանձնահատկությունները՝ կնշանակեր ընկնել բյուրոկրատական ցենտրալիզմի մեջ և այլն, կնշանակեր խանգարել տեղական աշխատողներին տեղական տարբերությունների այն հաշվառման գործում, որը հանդիսանում է խելացի աշխատանքի հիմքը» (Երկեր, հ. 33, էջ 430):

Կազմակերպական և ղեկավար աշխատանքի մեծ կենտրոնացումը և դրա անխուսափելի ուղեկիցը հանդիսացող մանրախնդիր խնամակալությունը կաշկանդում են կառավարման ստորին օղակների և արտադրության անմիջական ղեկավարների նախաձեռնությունը: Դրանք բացասաբար են ազդում ռեզերվների բացահայտման ու օգտագործման վրա, խոչընդոտում միջոցներով մանևրելու գործին: Տեղական հնարավորություններն ու պահանջմունքները չեն կարող լրիվ հաշվի առնվել կենտրոնից: Դրանք բացահայտվում են տեղական տնտեսական մարմինների և ձեռնարկությունների օպերատիվ գործունեության ընթացքում միայն, աշխատավորների ստեղծագործական ջանքերի շնորհիվ պլանների կատարման ընթացքում: Ուստի կառավարչական աշխատանքի ապակենտրոնացումը, իհարկե, հիմնական հարցերում կենտրոնացված ղեկավարության պահպանման պայմաններում, հսկայական նշանակություն ունի սոցիալիստական արտադրության աճի համար:

Սովետական պետությունն իր բոլոր ֆունկցիաները, այդ թվում և տնտեսական-կազմակերպչական գործունեությունն իրականացնում է՝ հենվելով մասսաների ստեղծագործական ակտիվության վրա: Սոցիալիստական արտադրության կառավարումը չի կարելի պատկերացնել առանց մասսաների ակտիվ մասնակցության, առանց մասսաների փորձի հաշվառման, առանց նրանց նախաձեռնության և ստեղծագործական ջանքերի: Իրականացվելով հանուն ժողովրդի շահերի և նրա ուժերով, սոցիալիստական տնտեսության կառավարումը մարմնավորում է իսկական դեմոկրատիան:

Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալման համար լայն հնարավորություններ է ընձեռում կոլեկտիվ ղեկավարությունը: Դրա շնորհիվ ավելի դեմոկրատական են դառնում կառավարման մեթոդները, աշխատավորներն առավել լայնորեն են ներգրավվում կառավարչական աշխատանքում:

Սոցիալիզմի օրոք արտադրության կառավարումը հենվում է ո՛չ միայն ղեկավարների անձնական փորձի, այլև մասսաների ամենահարուստ կոլեկտիվ փորձի վրա: Այդպիսի ղեկավարությունը արտադրության կառավարումը զերծ է պահում պատահականության և միակողմանիության տարրերից. կոլեկտիվության սկզբունքի պահպանմամբ է պայմանավորված ղեկավար մարմինների որոշումների ճշտությունը և դրանց կատարման հաջողությունը: Տնտեսության ղեկավարման հետագա ամրապնդման խնդիրները կարող են հաջողությամբ



լուծվել արտադրության կոլեկտիվ ղեկավարության, արտադրության կառավարմանը բանվորներին, ինժեներատեխնիկական աշխատողներին ու ծառայողներին ակտիվ մասնակից դարձնելու պայմանով միայն: Կոլեկտիվ ղեկավարությունը արտադրական ռեզերվների բացահայտման, մոբիլիզացման և խելացի օգտագործման անհրաժեշտ պայմանն է:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությունը պետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունների նկատմամբ դեմոկրատական ցենտրալիզմի իրականացման հիմնական և վճռական պայմանն է: Կուսակցությունը քաղաքականությունը մշակում է սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջներին համապատասխան, հաշվի առնելով երկրի ներքին և արտաքին իրադրությունը: Այդ քաղաքականության կենսագործումը գլխավորն է ողջ կառավարչական ապարատի գործունեության մեջ:

Արտադրության անմիջական կազմակերպման գործում կարևոր դեր ունեն սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք գործում են աշխատավորական զանգվածների շրջանում, կոմունիզմի համար մղվող պայքարի առաջավոր գծում. Միավորումներում (ձեռնարկություններում) յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպություն ավանգարդային դեր է խաղում արդյունաբերության մեջ, լայն մասսաների շրջանում աշխատանք է ծավալում կուսակցական որոշումները կենսագործելու նպատակով, նրանց դաստիարակում է կոմունիստական շինարարությանն անսահման նվիրվածության ոգով, մոբիլիզացնում արտադրական պլանները կատարելու, աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և սոցիալիստական մրցությունը զարգացնելու համար: Սկզբնական կուսկազմակերպություններն օգտվում են ադմինիստրացիայի տնտեսական գործունեության նկատմամբ վերահսկողություն իրականացնելու իրավունքից: Արդի պայմաններում խիստ աճել են նրանց դերն ու պատասխանատվությունը՝ արդյունաբերական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքներն ընդլայնելու և նրանց ավելի մեծ ինքնուրույնություն վերապահվելու կապակցությամբ:

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով զինված կոմունիստական կուսակցությունը կազմակերպում է լայն մասսաներին՝ սոցիալիստական տնտեսության կառավարման մեջ նրանց ներգրավվելու նպատակով: Գոյություն ունեն աշխատավոր մասսաներին տնտեսության կառավարմանը մասնակից դարձնելու բազմազան ձևեր՝ ժողովրդական դեպուտատների սովետները, արհմիությունները, լենինյան կոմերիտմիությունը և այլն: ՍՄԿԿ XXV համագումարը, շեշտելով աշխատավորների լայն խավերին արտադրության կառավարմանը մասնակից դարձնելու գործում այդ կազմակերպությունների դերն առավել բարձրացնելու անհրաժեշտությունը, նախատեսել է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման դեմոկրատական հիմունքների հետագա ամրապնդման ու զարգացման միջոցառումներ:

Այսպիսով, դեմոկրատական ցենտրալիզմի ամրապնդումը կենտրոնացված պլանային ղեկավարության կատարելագործման և արտադրության կառավարման դեմոկրատական հիմունքների ծավալման երկկողմանի պրոցես է: Սոցիալիզմից կոմունիզմին անցնելիս արտադրության կառավարման կատարելագործումն ընթանում է այդ երկու ուղղություններով էլ: Այս առթիվ ՍՄԿԿ ծրագրում շեշտված է. «Կոմունիստական շինարարությունը ենթադրում է ամեն կերպ զարգացնել կառավարման դեմոկրատական հիմունքները՝ ամրապնդելով ու կատարելագործելով ժողովրդական տնտեսության պետական կենտրոնացված ղեկավարումը» (էջ 135):

Կապիտալիզմի պայմաններում կառավարչական խնդիրների լավագույն լուծումների ընտրությունը կատարվում է մրցակցության մեխանիզմի օգնությամբ: Դա ուղեկցվում է մեծ կորուստներով, հասարակական աշխատանքի անասելի վատնումով: Սոցիալիստական պլանային տնտեսության մեջ սոցիալական պատճառներ չկան աշխատանքը շռայլելու համար, այլ կա աշխատանքի զգալի խնայողության հնարավորություն: Մեր էկոնոմիկայի այս մեծագույն առավելությունն իրականացվում է գիտականության՝ արտադրության կառա-

վարման գործում գիտության լայն ու խոր կիրառման հիման վրա: Ոչ գիտական մոտեցումը կորուստների կհանգեցնի ո՛չ թե մեկ, այլ բազմաթիվ ձեռնարկություններում: Եթե կապիտալիստի սխալը տեղայնանում է նրա ձեռնարկության շրջանակներում, ապա սոցիալիստական տնտեսության պայմաններում սխալը կարող է մեծ կորուստներ առաջ բերել: Այստեղից բխում է սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի դեմ պայքարելու անհրաժեշտությունը, տնտեսությունը բանիմաց ղեկավարելու անհրաժեշտությունը՝ հաշվի առնելով գիտության, տեխնիկայի և էկոնոմիկայի զարգացման արդի մակարդակը, դրանց հասունացած պահանջմունքները, այն ամեն արժեքավորն ու լավը, որ կա հայրենական ու արտասահմանյան պրակտիկայում: Ահա ինչու գիտականությունն արտադրության կառավարման մեջ սոցիալիստական տնտեսության ղեկավարման անհրաժեշտ ու կարևորագույն պայմանն է:

Տնտեսության կառավարման գիտական մակարդակի հետագա բարձրացման անհրաժեշտությունն ավելի մեծ, բացառիկ կարևոր նշանակություն է ձեռք բերել այժմ՝ զարգացած սոցիալիզմի պայմաններում:

Մեր հասարակարգի առավելությունները հանուն ժողովրդի շահերի օգտագործելու, ժողովրդատնտեսական գլխավոր խնդիրը լուծելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է տնտեսության կառավարման գործում ճիշտ կիրառել և ամրապնդել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը՝ հաշվի առնելով զարգացած սոցիալիստական հասարակության մեջ տեղի ունեցող խոշոր փոփոխությունները:

Հասուն սոցիալիստական հասարակության մեջ քաղաքական փոփոխություններն արտացոլվել են այն բանում, որ ՍՄԿԿ-ն՝ բանվոր դասակարգի կուսակցությունը, դարձել է ողջ ժողովրդի կուսակցությունը, ՍՍՀՄ ազգերն ու ազգությունները միավորվել են պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմում, պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը վերաճել է համաժողովրդական պետության, աշխատավորների դեպուտատների սովետները՝ ժողովրդական սովետների: Այս ամենն ուղեկցվել է ժողովրդի քաղաքական գիտակցականության և ակտիվության բարձրացմամբ, պետության և տնտեսության կառավարմանն աշխատավորների առավել լայն մասնակցությամբ:

Զարգացած սոցիալիզմն աչքի է ընկնում ո՛չ միայն երկրի քաղաքական կյանքի, այլև էկոնոմիկայի ամբողջականությամբ. ժողովրդական տնտեսությունը դարձել է միասնական արտադրական կոմպլեքս, որում հաստատվել են ՍՍՀՄ բոլոր հանրապետությունների և շրջանների շարունակ ընդլայնվող և կատարելագործվող խոր ու կայուն տնտեսական կապերը: Ըստ որում, վիթխարի չափով աճել են արտադրության մասշտաբները: Բավական է նշել, որ Սովետական Միությունում յուրաքանչյուր օր գործարկվում է մեկ-երկու խոշոր պետական ձեռնարկություն կամ արտադրամաս, շահագործման է հանձնվում մոտ 9 հազար բարեկարգ բնակարան և 1.300 անհատական բնակելի տուն, կատարվում է ավելի քան 20 մլն խմ հողային և 200 հազար խմ բետոնային ու երկաթբետոնե աշխատանք, շարվում է 110 մլն հատ աղյուս և մոնտաժվում են ավելի քան 500 հազար տոննա պողպատե կոնստրուկցիաներ: Ամեն օր արտադրվում է 3,3 մլրդ կվտ/ժ էլեկտրաէներգիա, 1 մլրդ խմ բնական գազ, 1,5 մլն տոննա նավթ (ներառյալ և գազային կոնդենսատը) և 2 մլն տոննա քարածուխ:

1979 թվականին կապիտալ ներդրումների ծավալը ՍՍՀՄ-ում կազմեց 131 մլրդ ռուբլի: Դա 20 տոկոսով ավելի է, քան Անգլիայում, ԳՖՀ-ում, Ֆրանսիայում և Իտալիայում՝ միասին վերցրած: Եթե 1950 թվականին կապիտալ ներդրումները մեր երկրում կազմում էին ԱՄՆ-ի ներդրումների ծավալի ընդամենը 30 տոկոսը միայն, ապա 1970 թվականին այդ ճեղքվածքն արդեն վերացվել էր, իսկ այժմ գերազանցում է ԱՄՆ-ի մակարդակը: Արտադրական հիմնական ֆոնդերն արդեն հասել են ավելի քան 1 տրիլիոն ռուբլու, իսկ ազգային հարստությունը՝ մոտ 2,5 տրիլիոն ռուբլու (չհաշված հողի և անտառների գինը):

Արդի փուլում էկոնոմիկայի զարգացման մակարդակը, աճած մասշտաբներն ու հնարավորությունները նոր, ավելի բարձր պահանջներ են ներկայացնում արտադրության կառավարմանը: Երևան են եկել նոր, բարդ խնդիրներ, որոնք բխում են ժողովրդական տնտեսության զարգացման հասունացած պահանջմունքներից: Անհրաժեշտ է դարձել պլանավորումը և ամբողջ տնտեսական մեխանիզմը համապատասխանեցնել ներկա՝ զարգացած սոցիալիզմի փուլի պահանջներին:

Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ-ը զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանն է թևակոխել 1960-ական թվականների սահմանագծում, որից հետո կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ձեռնարկել են էական միջոցներ երկրի տնտեսական և սոցիալական զարգացման աճած պահանջներին համապատասխան ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու նպատակով: Դրանք իրենց մարմնավորումն են գտել ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների, կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներում և ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ:

Սոցիալիստական տնտեսության կառավարման ողջ սիստեմի հետագա բարելավման գործում նոր խոշոր քայլ էր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» 1979 թվականի հուլիսի 12-ի որոշումը:

Սովետական իշխանության տարիներին մեր երկրում ստեղծված սոցիալիստական տնտեսավարության հիմնական սկզբունքների ու մեթոդների պահպանմամբ ու ամրապնդմամբ հանդերձ, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը էական փոփոխություններ է մտցնում տնտեսության պլանային ղեկավարման մեջ և առաջընթաց խոշոր քայլ է սոցիալիստական տնտեսավարությունը կատարելագործելու բնագավառում:

Նշված որոշմամբ նախատեսված է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի հետագա ամրապնդում՝ կենտրոնացված պլանային կառավարման ուժեղացում և արտադրության ստորին օղակների ինքնուրույնության ընդլայնում՝ հնգամյա պլանը երկրի տնտեսական և սոցիալական զարգացման պլանավորման գլխավոր ձևը դարձնելու և տևական տնտեսական նորմատիվներ լայնորեն արմատավորելու հիման վրա:

Կուսակցության Կենտկոմի և կառավարության որոշման մեջ նշված է տնտեսության կառավարումը կատարելագործելու միջոցառումների սիստեմ, որի նպատակն է ամբողջ հայրենական արտադրության ըստ ամենայնի զարգացումը և դրա արդյունավետության բարձրացումը, էկոնոմիկայի և աշխատավորների բարեկեցության նոր, առավել հզոր վերելքի ապահովումը:

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ՍՈՎԵՏՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ՆՈՐ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. Զ. ԲԵԳԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների դոկտոր

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, զարգացնելով ու հարստացնելով ժողովրդապետության վերաբերյալ լենինյան գաղափարները, մշտապես հոգում է սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման մասին: Սովետների գործունեության Լենինի ձևակերպած կարևորագույն սկզբունքները մարմնավորվել և ստեղծագործաբար զարգացվել են ՍՄԿԿ համագումարների որոշումներում, կուսակցական ու պետական մյուս փաստաթղթերում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում:

Վ. Ի. Լենինը նշել է, որ արտադրաուժերի և կուլտուրայի զարգացման յուրաքանչյուր աստիճան պետք է ուղեկցվի մեր սովետական սիստեմի կատարելագործումով: Մեր կուսակցությունը մշտապես ջանում է զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, միլիոնավոր աշխատավորներին ներգրավել հասարակության և պետության գործերի կառավարման ոլորտը:

Իրականացել է Լենինի այն կանխատեսումը, թե սոցիալիզմի օրոք «քաղաքակրթված հասարակությունների պատմության մեջ առաջին անգամ բնակչության մասսան կբարձրանա այն աստիճանին, որ նա կկարողանա ինքնուրույնորեն մասնակցել ո՛չ միայն քվեարկություններին ու ընտրություններին, այլև ամենօրյա կառավարմանը» (Երկեր, հ. 25, էջ 637): Մեզ համար սա եղել ու մնում է գլխավոր չափանիշը, որով կողմնորոշվում ենք դեմոկրատիայի հաջողությունները գնահատելիս, դրա հետագա զարգացման և կատարելագործման ուղիները սահմանելիս:

«Զարգացած սոցիալիզմի մեր հասարակությունը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— դարձել է նաև զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակություն:Հասուն սոցիալիզմի փուլում, համաժողովրդական պետության պայմաններում երկրի կյանքի կառավարմանը աշխատավոր մասսաների ավելի ու ավելի լայն և ակտիվ մասնակցությունը ամուր կերպով հաստատվել է որպես սովետական հասարակության քաղաքական զարգացման կենտրոնական ուղղություն» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ սահմանադրության մասին, «Հայաստան» հրատ., 1978 թ., էջ 86):

Վ. Ի. Լենինի ժառանգության մեջ մեծ տեղ են գրավում այն գործերը, որոնցում մշակված են սովետների կազմակերպման և գործունեության սկզբունքներն ու արմատական հարցերը: Դրանց նա անդրադարձել է 1917—1923 թվականներին հրապարակված ավելի քան 300 աշխատություններում, հոդվածներում, նամակներում, կուսակցության և սովետների համագումարներում, ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումներում, աշխատավորների ժողովներում ունեցած ելույթներում:

Վ. Ի. Լենինը մշտապես զբաղվել է սովետական շինարարության պրոբլեմներով. ընդունել է տեղական սովետների բազմաթիվ պատվիրակությունների ու զրուցել նրանց հետ, նամակագրություն է ունեցել սովետների ղեկավարների



հետ, կոնկրետ և սկզբունքային ցուցումներ է տվել սովետների աշխատանքը բարելավելու վերաբերյալ: Արխիվներում կան Լենինի կատարած նշումներով շատ փաստաթղթեր, որոնք վկայում են սովետների գործերի ու կարիքների նկատմամբ նրա հսկայական հետաքրքրությունը: Դրանցից մեկի մասին հիշատակել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ 1979 թ. մարտի 2-ին ունեցած հանդիպման ժամանակ: Մոսկվայի քաղաքային սովետի գործկոմի 1920 թ. առաջին երեքուկես ամսվա գործունեության ամփոփագրում asված էր, թե այդ ընթացքում գործկոմը քննարկել է 46 կազմակերպչական և միայն 8 տնտեսական բնույթի հարցեր: Վ. Ի. Լենինը ընդգծել է այդ թվերը և լուսանցքում գրել. «Պետք է լինի ընդհակառակը»:

Լենինը սովետական շինարարության առաջին տարիների փորձի վերլուծության ու ընդհանրացման հիման վրա սահմանեց սովետների կազմակերպման ու գործունեության հիմնական սկզբունքները, որոնք իրենց նշանակությունը պահպանում են նաև մեր օրերում: Աշխատանքի լենինյան ոճի կարևորագույն հատկանիշներից է կոլեկտիվությունը: «Ինչպես ուրիշ ոչ ոք,— նշում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— Լենինը կարողանում էր աշխատանքում ստեղծել իսկական կոլեկտիվության ոգի: Կրքոտ կերպով, համոզվածությամբ, հաստատակամորեն պաշտպանելով իր տեսակետը, Լենինը գնահատում էր իր ընկերների կարծիքը, զգայուն ունկնդրում նրանց» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 762):

Սովետների գործունեության կազմակերպման լենինյան գաղափարներին ու սկզբունքներին խորթ են հրամայողականությունն ու վարչարարությունը: Լենինը պահանջել է խնդիրները քննարկելիս ու վճիռներ կայացնելիս ցուցաբերել լրջախոհություն և մանրակրկիտություն, խուսել ամեն մի հապճեպության նկատմամբ փրկարար թերահավատությամբ տոգորվելու անհրաժեշտության մասին: Անհրաժեշտ բարձրության հասնելու համար, գրել է Լենինը, «պետք է հետևել՝ «յոթ անգամ չափի՛ր, մի անգամ կտրի՛ր» կանոնին» (Երկեր, հ. 33, էջ 582): Նման իրադրության մեջ սովետում որևէ հարց վճռելիս, յուրաքանչյուր դեպուտատ, համոզվելով, որ իրեն գնահատում են, իր և կոլեկտիվի ջանքերը հավանության և աջակցության են արժանանում, ցանկանում է աշխատել ավելի լավ, ավելի ձեռներեցությամբ ու ավելի արդյունավետ: Դա ամենևին էլ չի հակասում միանձնյա ղեկավարության սկզբունքին, այլ, ընդհակառակն, հնարավոր է դարձնում բարձրացնել կառավարման արդյունավետությունը:

Կոլեկտիվ աշխատանքի ու ղեկավարման լենինյան սկզբունքը բնավ չի բացառում անձնական պատասխանատվությունը: «...Ինչպես կոլեգիալություն է անհրաժեշտ հիմնական հարցերի քննարկման համար,— գրել է նա,— այնպես էլ անհրաժեշտ է միանձնյա պատասխանատվություն և միանձնյա տնօրինություն, որպեսզի քաշքշուկ չլինի, որպեսզի անկարելի լինի խուսափել պատասխանատվությունից» (Երկեր, հ. 30, էջ 304): Այսպիսով, աշխատանքի ճիշտ կազմակերպման կարևորագույն պայմանն է աշխատելու և ղեկավարելու կոլեգիալության զուգակցումը միանձնյա պատասխանատվության հետ: Սոցիալիզմը օրինաչափորեն ենթադրում է բարձր կազմակերպվածություն, գործնականություն և ձեռներեցություն, որոնց նշանակությունն աստիճանաբար ավելի է բարձրանում զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում: Լենինը գրել է. «Գլխավորը և հերթականն այժմ հատկապես գործնականության և հատկապես գործիմացության լոզունգն է» (Երկեր, հ. 27, էջ 252—253): Ունենալով սոցիալիստական նպատակամետություն, այդ սկզբունքը մշտապես եղել է կարճատես գործնականության և անսկզբունք գործամոլության հակապատկերը: Լենինը խարազանում էր այն մարդկանց, որոնք աշխատանքի նկատմամբ գործնական մոտեցումը նենգափոխում էին տնականությամբ ու ազմկարարությամբ, ընկնելով «բավականին հիմար, խայտառակ և ծիծաղելի» դրության մեջ (Երկեր, հ. 30, էջ 676): Աշխատանքի հետզհետե կատարելագործվող ծրագրի առկայությամբ միայն կարելի է խուսափել պատահականությունից ու տարերայնությունից, հասնել կազմակերպվածության, որի էական տարրերն են ճըշգրտությունն ու հստակությունը:

Սովետների աշխատանքի կազմակերպման լենինյան կարևոր սկզբունքը մշտապես եղել է հրապարակայնությունը, որով ներթափանցված պետք է լինի

ների գործունեությունը հիմնվում է հարցերի կոլեկտիվ, ազատ, գործնական քննարկման ու վճռման, հրապարակայնության, գործադիր ու կարգադրիչ մարմինների, ինչպես նաև սովետների և այլ մարմիններին պարբերաբար հաշվետու լինելու, նրանց աշխատանքներին քաղաքացիների լայն մասնակցությունն ապահովելու վրա։

Նոր հիմնական օրենքում սահմանադրական աստիճանի է բարձրացված ընտրողների պատվիրանների կատարումը։ Մեծ նշանակություն տալով ընտրողների պատվիրանների լենինյան ինստիտուտին (հայտնի է, որ Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին իսկ քայլերից սովետների աշխատողներից պահանջել է ընտրողների պատվիրանների ստուգում և կատարման ապահովում), նոր սահմանադրության 92, 93, 134 և այլ հոդվածներում խոսվում է դեպուտատներին ընտրողների պատվիրաններ տալու իրավունքի և ընտրողների պատվիրանները կատարելու դեպուտատների սովետների ու նրանց ստեղծած մարմինների պարտականությունների մասին։

Հայկական ՍՍՀ-ում, ինչպես և ամբողջ երկրում, իրագործված են մեծ ծավալի օրենսդրական աշխատանքներ։ Հանրապետության սահմանադրությանը համապատասխան և դրա հիման վրա ընդունվել են օրենքներ Մինիստրների խորհրդի, Հայկական ՍՍՀ Գերագույն և տեղական սովետների ընտրություն-արտահայտած սկզբունքին։ Սահմանադրական այս պահանջից հետևում է, որ լրացումներ կատարելու վերաբերյալ։

Հայկական ՍՍՀ շրջանային, քաղաքային, քաղաքի շրջանային, գյուղական, ավանային սովետների մասին օրենքների համապատասխան հոդվածներում, Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությանը տեղական սովետների մասին օրենսդրությունը համապատասխանեցնելիս, արտացոլվել են այն սահմանադրական նորմերը, որոնք մեծացնում են սովետների դերը պետական, սոցիալ-տնտեսական ու կուլտուրական շինարարության կարևորագույն հարցերը լուծելիս։ Այդ նորմերն արտացոլվել են նաև այն հոդվածներում, որոնք վերաբերում են աշխատավորական կոլեկտիվներին, իրենց ենթակա տերիտորիայում տնտեսական ու սոցիալական կոմպլեքս զարգացում ապահովող սովետների լիազորություններին, իրենց դեպուտատներին պատվիրաններ տալու ընտրողների իրավունքներն ավելի լիակատար և ուղղակի արտացոլելուն, և դեպուտատների, սովետների ու նրանց ստեղծած մարմինների՝ այդ պատվիրանները կատարելու պարտականություններին։

Որոշելով մասսաների հետ կապերի հետագա ընդլայնման և պետական կառավարման մեջ քաղաքացիների ներգրավման ուղիները, տեղական սովետների մասին նոր օրենքները սահմանում են, որ սովետներն իրենց գործունեությունն իրականացնում են հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների հետ սերտորեն համագործակցած, մշտական հանձնաժողովների, գործադիր կոմիտեների և սովետներին ենթակա այլ մարմինների աշխատանքներում քաղաքացիներին ներգրավելով։

Դեմոկրատական սկզբունքների տեսակետից սովետների ու դրանց մարմինների աշխատանքի կոլեկտիվ ձևերի բուն կառուցվածքում պետք է հատկապես շեշտել, որ տեղական սովետների մասին նոր օրենքներում, 1969 և 1971 թթ. օրենքների համեմատ, առավել ամրապնդվել ու զարգացվել են սովետների աշխատանքի կազմակերպման լենինյան հիմնարար գաղափարներն ու սկզբունքները։

Խոսքը վերաբերում է այն նոր պահանջներին, որոնք տեղ են գտել սահմանադրության և տեղական սովետների մասին օրենքներում, և պարտավորեցնում են սովետներին, որպեսզի իրենց աշխատանքները հիմնեն ո՛չ միայն ղեկավարման կոլեկտիվության վրա, ինչպես դա պահանջում է աշխատավորների դեպուտատների շրջանային սովետի մասին օրենքի 6-րդ հոդվածը։ Սովետների կոլեկտիվ կառավարման ակտերի ձևավորման մեխանիզմը այժմ խստիվ պայմանավորված է դրանց իրավասության մեջ մտնող հարցերի կոլեկտիվ, ազատ, գործնական քննարկմամբ ու լուծմամբ։ Դա սովետների կազմակերպման գործում հետևողականորեն զարգացած դեմոկրատիզմի վկայությունն ու ցուցանիշն է, նրանց աշխատանքի որակի ու արդյունավետության մշտական բարե-



լավման աղբյուրը։ Ընդ որում, տեղական սովետների մասին օրենքները ամրապնդում են իրենց տերիտորիայում գտնվող հիմնարկությունների, ձեռնարկությունների, կազմակերպությունների, ինչպես նաև պաշտոնատար անձանց և քաղաքացիների համար սովետների որոշումների կատարման պարտադիր լինելու մասին նոր սահմանադրական նորմը, որը վառ կերպով վկայում է ժողովրդական դեպուտատների սովետների դերի և լիիշխանության իրական աճի մասին։ Հայկական ՍՍՀ 1937 թ. սահմանադրությունում այդպիսի նորմ չկար։

Տեղական սովետների մասին նոր օրենքներ նախապատրաստելիս հաշվի է առնվել, որ պետական շինարարության պրակտիկայում, տեղական սովետների մասին օրենքներն ընդունելուց հետո անցած ժամանակաշրջանում, մեծ թվով նոր կարևոր խնդիրներ են լուծվել։ Օրինակ, ընդլայնվել է այն հարցերի շրջանակը, որոնք բացառապես քննարկվում են նստաշրջաններում (շրջանային սովետի մասին օրենքի 36-րդ հոդված)։

Այս նոր օրենքները մեծապես նպաստում են կոմունիստական շինարարության՝ բոլոր ոլորտներում, բարձրացնելով այդ գործում ժողովրդական դեպուտատների սովետների դերը։

Սովետների մասին օրենսդրությունը մշտապես ծառայել և այժմ էլ ծառայում է իբրև սովետների աշխատանքի բարելավման հզոր միջոց։ Սահմանադրության և տեղական սովետների մասին օրենսդրության ուժն ու կազմակերպող էությունն արտահայտվել են այն բանում, որ դրանցում մարմնավորված լենինյան գաղափարների և սկզբունքների հետևողական կիրառմամբ ձեռք են բերվել լուրջ հաջողություններ, որոնք լիովին հաստատում են դրանց ճշմարտացիությունն ու կենսունակությունը։

Սովետների գործունեության կարևոր ցուցանիշներից է այն, որ դրանց նստաշրջանների, գործադիր կոմիտեների և մշտական հանձնաժողովների նիստերի աշխատանքային պրակտիկայում հետզհետե ավելի լիովին է ներդրվում կոլեկտիվիզմի սկզբունքը։ Սովետի վճռած հարցերի քննարկմանն ակտիվորեն մասնակցելը դեպուտատը ո՛չ միայն իր իրավունքը, այլև պարտականությունն է համարում։ Շատ դեպուտատներ նախապես պատրաստվում են սովետների նստաշրջաններում հարցերի քննարկմանը, խորհում քննարկվելիք պրոբլեմների շուրջ, հարկ են համարում խորհրդակցել ընտրողների հետ, օգտագործել նրանց փորձն ու գիտելիքը։ Ինչպես ցույց է տալիս սովետներում հարցերի կոլեկտիվ քննարկման պրակտիկայի ուսումնասիրությունը, դրանց հատուկ են դեպուտատների թե՛ առաջարկությունների և թե քննադատական դիտողությունների հանգամանալից քննությունը, նորի, առաջավորի ջերմ պաշտպանությունը։ Ջգալի աշխատանք է կատարվում սովետի նիստերում բանիմացության, փոխադարձ խստապահանջության մթնոլորտ ստեղծելու համար։

Լենինյան սկզբունքների լիովին կենսագործման և սովետների աշխատանքի մշտապես կատարելագործման պրոցեսում կարևոր է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ղեկավարող դերը։ Դա հատկապես ակնհայտ դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելուց հետո։ Նա հսկայական ուշադրություն է հատկացնում տեղական սովետների աշխատանքի կազմակերպմանը նպաստող միջոցառումների ողջ կոմպլեքսին։ Սովետական Միության Գերագույն սովետի նախագահության գործունեությունը հուսալի ուղեցույց է, որին հետևում են միութենական հանրապետությունների Գերագույն սովետների նախագահությունները։

ՍՍՀՄ Գերագույն սովետի, նրա նախագահության սևեռուն ուշադրությունը տեղական սովետների աշխատանքի կազմակերպմանն ու կատարելագործմանը, բարենպաստ վիճակ ստեղծեց դրանց գործունեության արդյունավետության մեծացման և ոլորտի ընդլայնման, իրենց աշխատանքի ոճի կատարելագործման առավել արդյունավետ միջոցներ ու մեթոդներ ընտրելու համար։ Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերվածը, պետք է հատկապես շեշտը դնել աշխատանքի որակի հետագա բարելավման խնդիրները լուծելու, բացերն ու թերությունները վերացնելու վրա։

Սովետների աշխատանքի արդյունավետության բարձրացման, սահմանա-

դրական սկզբունքների անխախտ պահպանման համար պատասխանատու է յուրաքանչյուր դեպուտատ, հատկապես դեպուտատ-ղեկավարը։ Անհրաժեշտ է, որպեսզի սահմանադրությունից, տեղական սովետների մասին օրենքների նորմերից կատարված ամեն մի շեղման կամ այդպիսի նորմերի աղավաղման համար մեղավորը՝ լինի ղեկավար, թե ստորադրյալ, ենթարկվի լիակատար պատասխանատվության։ Այժմ ավելի, քան երբևէ, անհրաժեշտ են դարձել բարձր կազմակերպվածությունը, կարգապահությունը և կարգ ու կանոնը։

Այսպիսով, կարևոր է ո՛չ միայն սահմանադրության նորմերի պարզաբանումը, այլև դրանք խախտելու փորձերի ու դրսևորումների դեմ անհաշտ պայքարի ծավալումը։

Շեշտելով այդ, ՍՍՀՄ Գերագույն սովետի Միության սովետի օրենսդրական նախագծումների հանձնաժողովի նախագահ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ի. Վ. Կապիտոնովը 1974 թ. մարտին ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատների հանձնաժողովների միացյալ նիստում ասել է, թե այժմ հարցում պետք է հանդես բերել ավելի շատ սկզբունքայնություն, համառություն և ո՛չ միայն բացատրել, այլև լրիվ չափով պատասխան պահանջել նրանցից, ովքեր դեռևս չեն սովորել խստորեն հետևել օրենքի ոգուն ու տառին։

Սովետական մարմինների պաշտոնատար անձանց նկատմամբ այս պահանջները համապատասխանում են «Հանձնարարված գործի համար յուրաքանչյուր պետական մարմնի և պաշտոնատար անձի պատասխանատվության» վերաբերյալ ՍՍՀՄ սահմանադրության և Հայկական ՍՍՀ սահմանադրության արտահայտած սկզբունքին։ Սահմանադրական այս պահանջից հետևում է, որ կադրեր պատրաստելը հետամտում է կազմակերպվածություն և ճշտակատարություն, սովետի գործադիր կոմիտեի ու նրա բաժինների յուրաքանչյուր աշխատողի լիակատար պատասխանատվություն աշխատանքի հանձնարարված տեղամասի համար։ Այդ իսկ պատճառով հարկ է շարունակ պայքարել սովետների դեպուտատների նկատմամբ «հրամանատարության» մեթոդի մնացուկների դեմ, ոչ ոքի հնարավորություն չտալով ետ քաշել սովետները դեպի աշխատելու ու ղեկավարելու հին, իրենց արդեն սպառած մեթոդները։ Հրատապ խնդիր են նաև դեռևս պահպանվող կազմակերպական թերությունների, ինքնագոհության ու անտարբերության դեմ պայքարի առավել ուժեղացումը և պատասխանատվության հետագա բարձրացումը։

«Մեր բոլոր հաղթանակների գլխավոր աղբյուրը կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունն է, կուսակցության ունակությունը՝ Լենինի խոսքերով ասած, մերձենալու, որոշակի չափով ձուլվելու աշխատավորների ամենալայն մասսայի հետ, բարձրացնելու նրանց եռանդը, հերոսությունն ու խանդավառությունը, հեղափոխական լարված ջանքերը կենտրոնացնելով հերթական կարևորագույն խնդիրների վրա»,— ասված է «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Կուսակցությունը հետևողականորեն մեծ աշխատանք է ծավալում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու կատարելագործման ասպարեզում, նպատակ ունենալով ապահովել մասսաների է՛լ ավելի ակտիվ մասնակցությունը կառավարմանը, սովետների կողմից իրենց բազմազան ֆունկցիաների առավել լրիվ իրականացումը հասարակական կյանքի ղեկավարման ասպարեզում, ներկայացուցչական մարմինների հանդեպ գործադիր մարմինների հաշվետու լինելու սկզբունքի առավել հետևողական կենսագործումը, սոցիալիստական օրինականության հետագա ամրապնդումը, ժողովրդական վերահսկողության գործունեության բարելավումը։

---



# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՒՂԵՑՈՒՅՑԸ

**Ռ. Մ. ԳԵՎՈՐԳՅԱՆ**
ՀԿԿ Հրազդանի շրջկոմի երկրորդ քարտուղար

ԿՅԱՆՔԸ, ՊՐԱԿՏԻԿԱՆ ՄՇՏԱՊԵՍ հաստատում են այն ճշմարտությունը, որ աշխատանքի ցանկացած բնագավառում, յուրաքանչյուր կոլեկտիվում հաջողությունները ու թերությունները ուղղակիորեն առնչվում են սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության հետ։ Այնտեղ, որտեղ սկզբնական կուսկազմակերպությունը հանդես է գալիս որպես աշխատանքային կոլեկտիվի, մասսաների մարտական կազմակերպիչ ու դաստիարակ, որտեղ կոմունիստներն ապահովում են իրենց ավանգարդային դերն ինչպես արտադրության մեջ, այնպես էլ հասարակական կյանքում, այնտեղ հաջողությամբ են լուծվում առաջադրված խնդիրները։

Կուսակցական աշխատանքը բարդ, ստեղծագործական աշխատանք է, այն ներառում է էկոնոմիկայի, գաղափարաքաղաքական դաստիարակության, սոցիալական զարգացման և կուլտուրական շինարարության, մեր կենսագործունեության բոլոր բնագավառները։ Կուսկազմակերպություններին, նրանց բյուրոներին մշտապես հարկ է լինում լուծելու արտադրության, կոլեկտիվի անդամների դաստիարակության, աշխատանքային պայմանների բարելավման և այլ կարգի շատ խնդիրներ։

ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ սովետական հասարակության զարգացման դինամիզմը, կոմունիստական շինարարության աճող մասշտաբները, միջազգային ասպարեզում մեր գործունեությունը հրամայաբար պահանջում են անընդհատ բարձրացնել տնտեսության և կուլտուրայի զարգացման, մարդկանց դաստիարակության նկատմամբ կուսակցական ղեկավարման մակարդակը։ Այդ խնդրի հաջող լուծման համար պահանջվում է մշտապես կատարելագործել կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները, բարձրացնել դրանց գիտական հիմնավորվածության մակարդակը, դրանք դարձնել է՛լ ավելի նպատակային ու արդյունավետ, ընդհանրացնել ու տարածել կուսակցական շինարարության առաջավոր փորձը։

Յուրաքանչյուր սկզբնական կազմակերպություն ունի իր որոշակի պրոբլեմները, խնդիրներն ու առաջադրանքները։ Եվ նրա աշխատանքի հաջողությունը պայմանավորված է այն բանով, թե որքանով են ճիշտ որոշվում տնտեսական-գաղափարական և կուսակցական-կազմակերպական գործունեության ուղղությունները ու կոնկրետ անելիքները։ Այլ կերպ ասած՝ վճռական նշանակություն է ստանում կուսակցական կազմակերպության աշխատանքի պլանավորումը։

ՀԿԿ Հրազդանի շրջկոմի և սկզբնական կազմակերպությունների պրակ-

տիկայում վերջին տարիներին հիմնավորապես արմատավորվել է աշխատանքի ընթացիկ և հեռանկարային պլանավորման եղանակը։ Ընդ որում, ընթացիկը կազմվում է ըստ ամիսների և եռամսյակների, իսկ ավելի երկար ժամանակաշրջանի գործունեության համար մշակվում են հեռանկարային պլաններ։

Ամենամսյա և եռամսյակային պլանները կազմելիս կուսկազմակերպությունները ամենից առաջ ելնում են այն հրատապ խնդիրներից, որոնք ծառացած են յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի առջև։ Հեռանկարային պլաններում շեշտը դրվում է արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արմատավորման, արտադրության կառավարման հետագա կատարելագործման, սոցիալիստական մրցության զարգացման, աշխատավորներին մարքս-լենինյան գաղափարներով զինելու, կադրերի ընտրության, դաստիարակության և նրանց պրոֆեսիոնալ ու գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման վրա։ Պլանը ներառում է նաև աշխատավորների նյութական-կուլտուրական պահանջմունքների բավարարման, նրանց մեջ աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության, նրանց հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման և այլ հարցեր։ Լուրջ ուշադրություն ենք նվիրում նաև արտադրության մեջ աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման և արտադրական կարևորագույն խնդիրների լուծման գործում նրանց անմիջական մասնակցության ապահովմանը։

1979—1980 թվականների աշխատանքի հեռանկարային պլանը կազմելիս շրջանային կոմիտեն մի շարք հիմնարկ-ձեռնարկություններում նախապես կատարեց մանրազնին հետազոտություններ, որոնց նպատակն էր պարզել, թե աշխատանքային ինչպիսի իրավիճակ գոյություն ունի այս կամ այն կազմակերպությունում, տվյալ կոլեկտիվը ինչպես է պայքարում իր առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծման համար, ինչպիսի փոխհարաբերություններ են հաստատված շարքային աշխատողների ու ղեկավար անձնակազմի միջև, ինչպիսի պայմաններ են ստեղծված կոլեկտիվում անհատի համակողմանի զարգացման և նրա ստեղծագործական աճի համար և, վերջապես, ինչպիսին է բարոյահոգեբանական մթնոլորտը կոլեկտիվում։

Բնականաբար, մեր անելիքը չի սահմանափակվում նման հարցերի ու պրոբլեմների սոսկ ուսումնասիրությամբ։ Հետազոտության արդյունքները հաշվի են առնվում շրջկոմի բաժինների ընթացիկ և հեռանկարային պլաններում, շրջկոմի բյուրոներում և պլենումներում պարբերաբար քննարկվում են լուծում պահանջող հարցերը, գործնական օգնություն է ցույց տրվում կազմակերպություններին՝ նրանց առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրների իրականացման նպատակով։

Վերջին տարիներին շրջկոմի աշխատանքի պրակտիկայում հաջողությամբ կիրառվում են Լենինգրադի, Վիլնյուսի, Մինսկի, Ռիգայի, Չերեպովեցի, Չելյաբինսկի և Գոմելի մարզերի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի պլանավորման առաջավոր մեթոդները։

Շրջանի կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը մեծապես նպաստել են ամենօրյա այն օգնությունն ու հսկողությունը, որն իրականացնում են կուսշրջկոմի անդամները և ապարատի աշխատողները։ Ընդ որում, պլանի բնույթով էլ պայմանավորվում է աշխատանքի կազմակերպման եղանակի ընտրությունը։ Այսպես, շրջկոմի պլենումներում և ակտիվի ժողովներում քննադատված տնտեսություններին ու կազմակերպություններին օգնելու, գործերի վիճակը բարելավելու հարցում մենք չենք բավարարվում բաժինների աշխատողներին տեղեր ուղարկելով, այլև, խորապես ուսումնասիրելով թերությունները ծնող պատճառները, դրանց ղեկավարներին, դրությունը շտկելու համար, որոշակի ժամկետ է տրվում։ Բացի այդ, շրջկոմի ընթացիկ պլանում նախատեսվում է այս կամ այն կազմակերպությանը նվիրված հարց և որոշ ժամանակ անց բյուրոյի կամ բաժինների խորհուրդների նիստերում անդրադառնում ենք դրանց գործունեությանը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ օգնության և հսկողության նման ձևը բավական արդյունավետ է։

Կուսակցական կազմակերպության աշխատանքի պլանավորման ստանդ-



դարտ ձև, անշուշտ, չկա և չի կարող լինել։ Մեկ կազմակերպություն պլանը կազմում է ամսվա, մյուսը՝ եռամսյակի համար, իսկ կոլտնտեսային, սովխոզային կազմակերպությունները շատ հաճախ պլանավորումն առնչում են գյուղատնտեսական աշխատանքների որոշակի ժամանակաշրջանի հետ (գարնանացան, կերի կուտակում, բերքահավաք, անասունների ձմեռային շրջան և սեզոնային այլ աշխատանքներ)։ Օրինակ, «Հրազդանշին» տրեստի կուսկոմիտեն, շինվարչությունների սկզբնական կազմակերպությունները պլանները կազմելիս հաշվի են առնում նաև կարևոր կառույցները շահագործման հանձնելու ժամկետները։ Առանձին դպրոցական սկզբնական կուսկազմակերպություններ պլանները կազմում են ուսումնական քառորդներին համապատասխան, մյուսները՝ ուսումնական տարվա համար։ Տեխնիկումներում և պրոֆտեխնիկական ուսումնարաններում պլանավորում են ամբողջ տարվա գործունեությունը։

Կարելի է վիճել պլանավորման այս կամ այն ձևի նպատակահարմարության հարցում. դրանցից ո՞րն է ավելի արդյունավետ, ավելի ճիշտ կամ ավելի ռեալ, սակայն չպետք է մոռանալ, որ յուրաքանչյուր կազմակերպություն իր գործունեության մեջ խստորեն պետք է հաշվի առնի ձեռնարկության կամ հիմնարկության առանձնահատկությունը, տվյալ կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները։

Պրակտիկան հաստատում է, որ անգամ նույն բնագավառի կուսկազմակերպությունների պլանները միատեսակ չեն կարող լինել և միևնույն պլանը չի կարող մի այլ կազմակերպության համար հավասարապես պիտանի լինել։ Բայց և անվիճելի է, որ կան որոշակի ընդհանուր դրույթներ, որոնցով անպայմանորեն պետք է ղեկավարվել պլանները կազմելիս։ Բոլոր դեպքերում պլանը պարտադիր կարգով պետք է ներառի երեք հիմնական բաժին՝ արտադրության կուսակցական ղեկավարումը, կուսակցական-կազմակերպական և գաղափարական-քաղաքական աշխատանքը։ Միայն թե տարբեր կազմակերպություններում դրանք կարող են տարբեր դրսևորումներ ունենալ։

Կուսկազմակերպությունների աշխատանքի պլանն ինքնանպատակ չէ, այն կոչված է օգնելու կոմունիստներին՝ հետևողականորեն ու ճիշտ լուծելու իրենց առաջադրված խնդիրները։ Նրանց համար գործունեության հիմնական ուղեցույց են կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, համագումարների, պլենումների, վերադաս կուսակցական մարմինների որոշումները։ Իրենց գործունեության ընթացքում սկզբնական կազմակերպությունները ղեկավարվում են շրջանային կոմիտեի ցուցումներով, հանձնարարականներով, որոնք բխում են ձեռնարկությունների կոլեկտիվների գործերի շահերից։ Այսպես, Չարենցավանի գործիքաշինական արտադրական միավորման կուսկազմակերպությունը պլանավորման ժամանակ հաշվի է առել իրեն վերաբերող այն բոլոր հարցերը, որոնք անմիջականորեն լուծում է կուսակցության շրջանային կոմիտեն։ Կազմակերպության տեսադաշտում են գտնվում կոլեկտիվի սոցիալ-տնտեսական զարգացման պլանի կատարումը, կազմակերպական-տեխնիկական միջոցառումների իրականացումը, աշխատանքի արտադրողականության աճի, եղած ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, սոցիալիստական մրցության կազմակերպման, արտադրության կուլտուրայի, արդյունավետության ու որակի բարձրացման հարցերը։

Միանգամայն այլ բնույթի հարցեր են նախատեսված կոլտնտեսային ու սովխոզային կուսկազմակերպությունների պլաններում։ Աշխատանքի առանձնահատկությամբ էլ այստեղ որոշվում է կոմունիստների գործունեության գլխավոր ուղղությունը։ Պարզ է, որ պլաններում առաջին հերթին արտացոլվում են կուսակցության ագրարային քաղաքականության հիմնական խնդիրները, որոնք առաջադրվել են ՍՄԿԿ XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի կողմից։ Ներկա փուլում շեշտը դրվում է գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման վրա։

Մեղրաձորի կոլտնտեսության կուսկազմակերպության (քարտուղար՝ Գ. Ավետիսյան) աշխատանքի պլանների և դրանց իրականացման արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ կոմունիստները հետևողական պայքար են ծավալել գյուղատնտեսության հետագա վերելքի համար։ Նրանք հաջողությամբ

մոբիլիզացնում են կոլտնտեսականների ուժերը՝ անասնապահության և հողագործության կուլտուրան բարձրացնելու, անասունների մթերատվությունն ու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ավելացնելու համար, ամեն կերպ օգնում են վերասարքավորելու արտադրական շենքերը, մեքենայացնելու աշխատատար դժվարին պրոցեսները, բարելավելու աշխատանքային պայմանները։ Կուսբյուրոն կոմունիստների ուժերն ուղղում է տնտեսության համար առավել կարևոր խնդիրների լուծմանը, նրանց ներգրավում կատարված աշխատանքի արդյունքների քննարկմանը։ Այստեղ ստեղծված է անկաշկանդ մթնոլորտ, կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են մտքերի փոխանակմանը, բացահայտում թերություններն ու թերացումները, նշում դրանց վերացման ուղիներն ու միջոցները։

Կուսակցական աշխատանքի պլանավորումը պահանջում է խորությամբ վերլուծել գործերի վիճակը կազմակերպությունում, կոլեկտիվում, պլանները կազմելիս չցուցաբերել հապճեպություն, այլ խորհրդակցել կոմունիստների հետ, լսել նրանց կարծիքները, խուսափել ուրիշներին մեխանիկորեն ընդօրինակելուց։ Հիմնավորված, գործնական պլան կազմելիս հարկ է առաջնորդվել մի սկզբունքով. պլանը կազմակերպության բոլոր անդամների կոլեկտիվ ջանքերի, նրանց ամենօրյա փորձի և որոնումների արգասիքն է, հասունացած խնդիրների լուծման մարտական ծրագիրը։

Պլանավորման հիմքում դրվում են կուսակցական ժողովներում (մասնավորապես հաշվետու-ընտրական), ակտիվի ժողովներում, պլենումներում և կոնֆերանսներում կոմունիստների արած քննադատական դիտողություններն ու առաջարկությունները։ Չէ՞ որ կուսակցական ժողովի որոշումը կոմունիստների կամքի արտահայտությունն է, նրանց պատվիրանը կուսակցական մարմնին (բյուրոյին կամ կոմիտեին)։ Նույն բանը կարելի է ասել նաև ակտիվի ժողովի, կոնֆերանսի վերաբերմամբ։

Հրազդանի շրջանային կուսակցական կազմակերպության XXXVIII կոնֆերանսում խստորեն քննադատվեցին Սոլակի և Աղավնաձորի կոլտնտեսությունների ղեկավարները այն բանի համար, որ նրանք 1978 թ. տնտեսական տարում աչքաթող էին արել անասնապահական մթերքների որակի բարելավման խնդիրը. պետությանը հանձնված խոշոր եղջերավոր անասունների կենդանի քաշը զգալիորեն պակաս էր շրջանի միջինից, տարվա ընթացքում պետությանը չէր վաճառվել ոչ մի կիլոգրամ առաջին տեսակի կաթ։ Կոնֆերանսից հետո սկզբնական կուսկազմակերպությունները վերանայեցին իրենց աշխատանքային պլանները, անհրաժեշտ միջոցառումներ մշակեցին անասնապահական մթերքների որակական ցուցանիշների բարելավման նպատակով։ Արդյունքը եղավ այն, որ հաջորդ տարվա ցուցանիշներով երկու տնտեսություններն էլ հայտնվեցին մրցության հաղթողների շարքում։

Պլանները մշակելիս շատ կազմակերպությունների քարտուղարներ զրուցում, խորհրդակցում են նաև հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների, մասնագետների, ճյուղերի, տեղամասերի ղեկավարների, առանձին կոմունիստների հետ, հաշվի առնում նրանց կարծիքն ու արժեքավոր խորհուրդները։ Դա բոլորովին ավելորդ աշխատանք չէ, ընդհակառակը՝ օգնում է կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման ուղիների ճիշտ որոշմանը, կուսակցական կազմակերպական և քաղաքական աշխատանքի բարելավմանը։ Այս սկզբունքով են գործում Չարենցավանի հոսանքի քիմիական աղբյուրների փորձնական գործարանի, գործիքաշինական արտադրական միավորման, ավտոձեռնարկության, Մեղրաձորի կոլտնտեսության, Ջրառատի և Աթարբեկյանի սովխոզների, Հրազդանի շրջանային հիվանդանոցի, № 4 միջնակարգ դպրոցի, ինդուստրիալ տեխնոլոգիական տեխնիկումի սկզբնական կուսակցական կազմակերպությունները։

Մեզ մոտ արդեն ավանդույթ է դարձել պլանները քննարկել կոմերիտական, արհմիութենական, ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի ակտիվիստների մասնակցությամբ։ Նման պրակտիկան հնարավորություն է ընձեռում օբյեկտիվորեն հաշվի առնել գործերի վիճակը կոլեկտիվում, ավելի ճիշտ որոշել նպատակին հասնելու ուղիներն ու եղանակները։ Խելացի պլանավորումն օգնում է կազմակերպությանը՝ ուժերը տեղաբաշխել համամասնաբար և կենտրոնացնել կարևոր պրոբլեմների լուծման վրա, գործել ավելի արդյունավետ, ամրապնդել կարգապահությունը բոլոր տեղամասերում։



Պլանը արդյունավետ գործունեության հիմնաքարն է։ Վ. Ի. Լենինը հաստատակամորեն սովորեցնում էր կուսակցական կադրերին՝ կարողանալ պլանում ընդգրկել գլխավորը, տվյալ փուլի հիմնական հարցերը։ Նա բազմիցս նշել է, որ քաղաքական աշխատանքի ամբողջ դժվարությունը և արվեստն այն է, որ հաշվի առնվեն յուրաքանչյուր ժամանակաշրջանի խնդիրների յուրահատկությունն ու պայմանները։ Լենինյան այդ պահանջներից բխում է պլանավորման էական սկզբունքներից մեկը՝ կարևոր օղակի սկզբունքը։ Խոսքը վերաբերում է այն գլխավոր խնդրին, որի շուրջը պետք է կենտրոնացվեն ուժերը և որով պայմանավորված է մյուս խնդիրների լուծման հաջողությունը։

Խոսելով գլխավոր օղակի մասին, պետք է հաշվի առնել, որ այն կարող է փոփոխվել որոշակի պայմանների փոփոխման համապատասխան։ Կուսակցական աշխատանքի պլանը քարացած չէ, կյանքն ինքն է փոփոխություններ մտցնում նրա մեջ՝ պարտավորեցնելով հաշվի առնել օրվա պահանջները, հարստացնել այն կուսակցության առաջադրած նոր խնդիրներին համապատասխան։

Կենսագործելով կուսակցության առաջադրած խնդիրները՝ շրջանի արդյունաբերական մի շարք խոշոր ձեռնարկություններ, շինարարական կազմակերպություններ, կոլտնտեսություններ և սովխոզներ իններորդ և տասներորդ հնգամյակների համար հանրապետությունում առաջիններից մեկը մշակեցին տեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության գիտական կառավարման, կոլեկտիվների սոցիալական զարգացման հեռանկարային կոմպլեքսային պլաններ։ Կոմպլեքսային պլաններում արտադրության գիտական կառավարման, տեխնիկական առաջընթացի և աշխատանքի կազմակերպման կատարելագործման հարցերը սերտորեն զուգակցվել են կոլեկտիվների գաղափարական-քաղաքական դաստիարակության հետ։ Դրա նպատակն է յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծել բարոյահոգեբանական բարենպաստ մթնոլորտ, որի պայմաններում մարդիկ կարողանան աշխատել ստեղծագործաբար ու ներշնչանքով, բովանդակալից կազմակերպել իրենց կուլտուրական հանգիստը։ Կոմպլեքսային պլանով գործող հիմնարկ-ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները հաջողությամբ են կատարում պետական պլան-առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, լուծում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման խնդիրները։ Շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները և կուսկազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել կոլեկտիվների դաստիարակության հարցերով, խրախուսել նրանց ստեղծագործական նախաձեռնությունները և նորարարական առաջարկությունները, օգնել դրանց արմատավորմանը։ Այդ ամենի շնորհիվ ամրապնդվել է աշխատանքային կոլեկտիվների կազմը, մինիմումի է հասցվել հոսունությունը։

Շրջկոմի բյուրոն պարբերաբար քննարկում է կոմպլեքսային պլաններով աշխատող կազմակերպությունների հաշվետվությունները և այդ բնագավառում եղած առաջավորն ու դրականը մասսայականացնում շրջանում։ Վերջին երկու տարում բյուրոյում քննարկվել և նրա հավանությանն է արժանացել Չարենցավանի կենտրոնական ձուլարանի, հոսանքի քիմիական աղբյուրների փորձնական գործարանի, գործիքաշինական արտադրական միավորման, Աթարբեկյանի սովխոզի և Հրազդանի № 1 միջնակարգ դպրոցի սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի փորձը։

Թե՛ շրջանային կոմիտեն և թե սկզբնական կազմակերպությունները մշակել են նաև գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հեռանկարային կոմպլեքսային պլաններ և այժմ ղեկավարվում են դրանցով։ Այդ պլանները մշակելիս առաջնորդվել ենք գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հարցերի կոմպլեքսային լուծման ասպարեզում Օրսկի քաղկոմի գործունեության մասին (1977 թ.) և գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին (1979 թ.)

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով: Գաղափարախոսական գործունեության համար ծրագրային փաստաթուղթ հանդիսացավ հատկապես վերջին որոշումը: Շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները մշակեցին գաղափարադաստիարակչական աշխատանքի 1979—80 թթ. պլանները: Կուսկազմակերպություններին օգնելու և նրանց գործունեությունը վերահսկելու նպատակով այդ պլանների մեկական օրինակը պահվում է շրջկոմի համապատասխան բաժնում: Պլանների ուսումնասիրությունից և վերլուծությունից հետո կազմվում է ժամկետացանկ, որտեղ նշվում են կուսկազմակերպություններում նախատեսվող միջոցառումների անցկացման օրերն ու ժամերը:

Շրջկոմի անդամներն ու ապարատի պատասխանատու աշխատողները, ժամկետացանկին համապատասխան, մասնակցում են կազմակերպությունների ժողովներին ու տեղերում նրանց ցույց տալիս գործնական օգնություն: Շրջկոմը մշակել է հատուկ ինֆորմացիոն քարտեր, որոնցում կազմակերպությունների քարտուղարները գրանցում են կազմակերպական և գաղափարական աշխատանքի բնագավառներում իրենց անցկացրած միջոցառումները և եռամսյակը մեկ ուղարկում շրջկոմ: Ամեն տարի շրջկոմն առանձին գրքույկով հրապարակում և կազմակերպություններն է ուղարկում շրջանի կուսակցական-գաղափարական, կուլտուր-լուսավորական և ուսումնական հաստատությունների ղեկավար կադրերի ուսուցման տարեկան պլանները, որտեղ բազմապիսի միջոցառումներ են նախատեսվում նրանց գաղափարական և մասնագիտական մակարդակի բարձրացման նպատակով:

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները և շրջկոմը ձգտում են, որպեսզի աշխատանքային պլանները դառնան առաջադրված բոլոր խնդիրների կոորդինացման միջոց, իսկ յուրաքանչյուր միջոցառում առավելագույն արդյունավետությամբ նպաստի գլխավոր խնդրի լուծմանը: Այս սկզբունքի հետևողական պահպանումը աշխատանքի նպատակայնության և բարձր արդյունավետության երաշխիքն է:

Մեզ մոտ, ցավոք, դեռևս քիչ չեն և այն կազմակերպությունները, որոնք իրենց պլաններն այնքան են ծանրաբեռնում ամենաբազմազան հարցերով ու միջոցառումներով, որ դրանցով հագեցվում են ամսվա համարյա բոլոր օրերը: Այդպես են վարվում, օրինակ, «Հայարդմոնտաժի» մոնտաժային վարչության, Չարենցավանի դարբնոցային գործարանի, հանքվարչության, № 62 շինվարչության, Լեռնանիստի միջնակարգ դպրոցի և Ֆանտանի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունները: Բնականաբար, նրանք ի վիճակի չեն լինում իրականացնելու բոլոր միջոցառումները: Դա ոչ այլ ինչ է, եթե ոչ ձևամոլության ու թղթաբարության արտահայտություն, որոնք բացասաբար են անդրադառնում կուսկազմակերպության հեղինակության վրա:

Պլանավորման կարևոր սկզբունքներից է նախատեսված միջոցառման իրագործելիությունը: Պլանները մշակելիս մենք հաշվի ենք առնում դրանց իրագործման ռեալ հնարավորությունները, նախատեսում տվյալ կազմակերպության ուժերին համապատասխանող միջոցառումներ: Անիրագործելի հարցերի պլանավորումը նվազեցնում է պլանի արդյունավետությունը և ջլատում կազմակերպության ուժերը: Այսպես, հազիվ թե կարելի է խոսել պետական որականիշով արտադրանք թողարկելու մասին, երբ ձեռնարկությունում (ինչպես, օրինակ, Չարենցավանի հանքվարչություն, «Բջնի», «Հանքավան» հանքային ջրերի և խոշոր պանելային տնաշինական գործարաններ) չի ներդրված որակի կառավարման կոմպլեքսային համակարգը և չեն մշակված կոնկրետ միջոցառումներ ընդհանրապես աշխատանքի որակն ըստ ամենայնի բարելավելու համար:

Պլանների կազմումը միայն գործի սկիզբն է: Որքան էլ դրանք բազմակողմանի նախապատրաստված ու հիմնավորված լինեն, միևնույն է, լիովին իրենց նպատակին չեն ծառայի, եթե բարձր մակարդակով չկազմակերպվի դրանց իրագործումը: Կուսկազմակերպությունից, նրա բյուրոյից ու քարտուղարից պահանջվում են մեծ ջանքեր ու հետևողականություն՝ նախատեսվածն իրականացնելու համար: Միայն այդպիսի պայմաններում պլանը կդառնա կուսակցական աշխատանքի հիմնական ուղեցույցը:

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

**ՆԱԴԵԺԴԱ ԳՈՐԲԱՉՈՎԱ**
ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի քարտուղար

ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ նվիրված հանդիսավոր ժողովում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Լուծելով Լենինի նշած ուղիով երկրի հետագա զարգացման հարցերը, կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս Սովետական Միության բոլոր քաղաքացիներին մշտապես, սիստեմատիկորեն ու խորապես ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործին: Այս երկու հասկացությունները մեզ համար անխզելի ամբողջություն են ներկայացնում: Անշուշտ, սովետական աշխատավորներին դրանցով դաստիարակում են բուն սովետական կյանքը, մեր ամբողջ իրականությունը: Բայց այստեղ անհրաժեշտ են նաև կուսակցության, քաղաքական-գաղափարական ճակատի բոլոր աշխատողների գիտակցական ջանքերը: Այս ասպարեզում տարվող աշխատանքը կոմունիզմի կառուցման ընդհանուր գործի խիստ կարևոր մասն է» (Լենինյան կուրսով, Երևան, 1974, հ. 4, էջ 86—89): Այս խորիմաստ խոսքերի մեջ կոմունիստները տեսնում են իրենց գործողությունների ծրագիրը: Կուսկազմակերպությունները, ղեկավարվելով կուսակցության որոշումներով, ակտիվ գործունեություն են ծավալում աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի և շովինիզմի, ազգային սահմանափակության և սնապարծության ամեն տեսակի դրսևորումների դեմ անհանդուրժողականության, բոլոր ազգերի և ժողովուրդների հանդեպ խոր հարգանքի ոգով դաստիարակելու համար:

Մեր՝ Կալինինոյի շրջանի կուսակցական կազմակերպություններն ունեն աշխատավորների ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության բավականաչափ փորձ: Պահպանելով կուտակված փորձի բոլոր լավը՝ նրանք այն զարգացնում և հարստացնում են կյանքից ու մասսաների ստեղծագործությունից ծնունդ առած աշխատանքի կազմակերպման նոր ձևերով ու մեթոդներով, ուժեղացնում աշխատավորության բոլոր խավերի նկատմամբ իրենց գաղափարական-քաղաքական ներգործությունը:

Այդ աշխատանքի բովանդակությունն առանձնապես հարստացավ մեր երկրի և հանրապետության կյանքում կարևոր նշանակություն ունեցող այնպիսի տարելիցների նախապատրաստմամբ ու տոնակատարությամբ, ինչպիսիք Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակն էր, Ռուսաստանի կազմի մեջ Արևելյան Հայաստանի մտնելու 150-ամյակը, ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությունների ընդունումը: Հոբելյանական օրերին ամենուրեք անցկացվում և լայն ընդունելության էին արժանանում «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակը և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակը», «Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը սովետական մարդկանց հոգևոր ուժի աղբյուրն է», «Մեր ուժը ժողովուրդների բարեկամությունն է», «Եղբայրական միասնական ընտանիքում» և այլ թեմաներով բանավոր ամսագրերը: Հետաքրքրական ելույթներ էին ունենում հեղափոխության, պատերազմի և աշխատանքի վետերանները, արտադրության առաջավորներ, ուսուցիչներ, բժիշկներ, կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներ:

Ողջ գաղափարախոսական աշխատանքի և, հետևաբար, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության բարելավման համար նոր ազդակ հանդիսացավ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխա-

տանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Այդ որոշմամբ խնդիր է դրվում. «Սովետական բոլոր մարդկանց համակել սոցիալիստական հայրենիքի համար հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության զգացումով, ազգային արժանապատվության ու ազգային մշակույթի նկատմամբ հարգանքով, նացիոնալիզմի ամեն մի դրսևորման հանդեպ անհանդուրժողականությամբ։ Նպաստել սովետական մեծ ժողովրդի միասնության և համախմբվածության հետագա ամրապնդմանը»։ Այդ խնդրի իրականացման համար պահանջվում է խելացիորեն և արդյունավետ օգտագործել գաղափարական ներգործության բոլոր միջոցները, ստեղծել ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության սկզբունքների լայն պրոպագանդման հաստատուն բազա։

Կալինինոյի շրջանը ինտերնացիոնալ է։ Այստեղ ապրում ու աշխատում են ավելի քան տասը ազգությունների ներկայացուցիչներ։ Բազմազգ կազմը հատկանշական է կոլտնտեսությունների և սովխոզների, հիմնարկությունների և ձեռնարկությունների կոլեկտիվների մեծ մասի համար։

Բնակչության բազմազգ կազմի պայմաններում կուսկազմակերպությունների հատուկ հոգատարության առարկա են դառնում կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, աշխատողների քաղաքական և գործնական հատկանիշների խելամիտ զուգակցումը։ Ինտերնացիոնալ համերաշխ կոլեկտիվներում աշխատողների շրջանում ձևավորվում են կոմունիստական բարոյականության ու համակեցության նորմեր։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունն առաջին հերթին դրսևորվում են մեր մարդկանց ամենօրյա գործունեության մեջ, աշխատանքային նվաճումները բազմապատկելու, պետական պլաններն ու սոցպարտավորությունները անպայմանորեն կատարելու համար նրանց ցուցաբերած հետաքրքրություններում ու ձգտումներում։ Մշտական շփումը, ամենօրյա համատեղ աշխատանքը, գործարար սոցմրցությունը մարդկանց համախմբում են մեկ միասնական ընտանիքում։

Շրջանի կուսակցական կազմակերպություններն առանձնահատուկ նշանակություն են տալիս սոցիալիստական մրցությանը՝ որպես աշխատավորներին սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու իսկական դպրոցի։ Տնտեսությունների, արտադրական կոլեկտիվների բեղմնավոր ու գործարար մրցությունը հնարավորություն է ընձեռում աշխատավորներին՝ հստակորեն պատկերացնելու մեր պետության ու կուսակցության տնտեսական գործունեության մասշտաբները, համակվելու սիրո խորին զգացումով իրենց հայրենիքի, միասնական ընտանիքի նկատմամբ։ Արդեն երկար տարիներ միմյանց հետ մրցում են Մեդովկա և Նորաշեն, Պրիվոլնոյե և Սարչապետ, Կալինինո և Մեծավան և այլ գյուղերի աշխատավորները։ Մեր շրջանը բարեկամական ամուր կապեր է հաստատել Կրասնոդարի երկրամասի Կորենևսկի, Ուկրաինական ՍՍՀ Վիննիցայի մարզի Տրոստյանեցկի, Վրացական ՍՍՀ Դմանիսի և մեր հանրապետության Ստեփանավանի շրջանների հետ։ Այդ բարեկամության հիմքը ավանդույթ դարձած և ժամանակի քննությունը բռնած սոցմրցությունն է։ Այդ մրցությունը վաղուց ի վեր դուրս է եկել աշխատանքային մրցակցության շրջանակներից և վերածվել մրցակից շրջանների աշխատավորների մերձեցման նոր ձևի։ Տարբեր միջոցառումներին (արտադրության առաջավորների հավաքներ, անասնապահի օր, բերքի տոն, նշանավոր տարելիցների տոնակատարություն) մենք հրավիրում ենք նաև այդ շրջանների ներկայացուցիչներին։

Մեզ մոտ ավանդույթ են դարձել շրջանի գյուղերի աշխատավորների հանդիպումները, որոնց մասնակցում են նաև եղբայրական Վրաստանի մեզ հարևան գյուղերի պատվիրակությունները։ Այդ հանդիպումների ժամանակ տեղի է ունենում կուսակցական-քաղաքական, տնտեսական և կուլտուրական աշխատանքի փորձի փոխանակում, հաստատվում գործնական ու բարեկամական կապեր։

Մրցակից շրջանների հետ մերձեցման կարևոր բնագավառ է մշակույթը։ Ամեն անգամ մեր շրջանի աշխատավորների համար կարևոր իրադարձություն է դառնում Կորենևսկի շրջանի գյուղատնտեսության աշխատողների պատվիրակության և ժողովրդական ինքնագործունեության խմբերի ժամանումը։



Նրանց այցն ու ելույթները ջերմությամբ են ընդունվում։ Մասնավորապես տպավորիչ են լինում հանդիպումները յայլաղներում։ Շրջկենտրոնի հրապարակում տեղի ունեցող եզրափակիչ համերգները վերածվում են բարեկամության և եղբայրության մեծ տոնահանդեսի։

Ավանդույթ է դարձել նաև Կալինինոյի, Ստեփանավանի, Դմանիսի և Բոլնիսի շրջանների կոմերիտականների ու երիտասարդների պատվիրակությունների ամենամյա հանդիպումը մեր շրջանի տարածքում, ուր կանգնեցվել է բարեկամությունը խորհրդանշող հուշակոթող, հիմնվել բարեկամության զբոսայգի։

Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության գործում զգալի ավանդ է մուծում «Արևածագ» շրջանային թերթը, որը լույսընծայվում է հայերեն և ռուսերեն։ Տեղական ռադիոհաղորդումները նույնպես տարվում են երկու լեզուներով։ Թերթը պարբերաբար նյութեր է հրապարակում մեր մրցակից շրջանների տնտեսական ու մշակութային ամրապնդվող կապերի վերաբերյալ, ընթերցողներին ծանոթացնում նրանց նվաճումներին, մեր հայրենիքի զանազան վայրերում զինվորական ծառայության մեջ գտնվող հայրենակիցների գործերին։ Վերջին տարիներին ավանդույթ է դարձել էջերի կամ բաժինների փոխանակումը Կալինինոյի, Կորենևսկի, Տրոստյանեցկի, Ստեփանավանի, Դմանիսի շրջանային թերթերի միջև։ Նյութեր են տպագրվում արտադրական կոլեկտիվներում և կուսկազմակերպություններում անցկացվող դաստիարակչական միջոցառումների վերաբերյալ։

Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը շրջանի կուսակցական կազմակերպությունների գաղափարադաստիարակչական գործունեության հիմնական ուղղություններից է։ Այստեղ խելամտորեն ենք օգտագործում գաղափարական ներգործության բոլոր ձևերն ու մեթոդները՝ քաղաքական, տնտեսագիտական ուսուցումը, դասախոսական պրոպագանդան, քաղաքական բանավոր և դիտողական ագիտացիան, թերթն ու ռադիոն։

Բոլոր սկզբնական կուսկազմակերպությունները մշակել են ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության միջոցառումների պլաններ։ Դրանցում տեղ են գտնում այնպիսի կարևոր պրոբլեմներ, ինչպիսիք են ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, սովետական ապրելակերպը, մեր հայրենիքի տնտեսական, սոցիալ-կուլտուրական նվաճումները։ Այդ պրոբլեմների պրոպագանդմանն է ծառայում կուսշրջկոմի դասախոսական խմբի, «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության, պրոպագանդիստների, քաղինֆորմատորների, ագիտատորների գործունեությունը։ Ժողովուրդների եղբայրությանը, սոցիալիստական հայրենիքի նվաճումներին նվիրված դասախոսություններում ու զրույցներում մեծ ուշադրություն է նվիրվում մեր երկրի ժողովուրդների պատմության, նրանց միջև հաստատված դարավոր բարեկամության վառ էջերի լուսաբանմանը։

Ուշադրության արժանի է Կալինինոյի և Դմանիսի կուսշրջկոմների համատեղ միջոցառումների պլանի մշակման փորձը։ Այդ պլանով մասնավորապես նախատեսվում է անցկացնել տեսական և գիտապրակտիկ կոնֆերանսներ, փոխանակել դասախոսներ։ Մեր շրջանի դասախոսները, ըստ հատուկ մշակված թեմատիկայի, հանդես են գալիս Դմանիսի շրջանի աշխատավորների առջև։ Նրանք պատմում են Հայկական ՍՍՀ-ի և Կալինինոյի շրջանի տնտեսական և կուլտուրական զարգացման հաջողությունների, անդրկովկասյան ժողովուրդների դարավոր բարեկամության, հայ ժողովրդի աշխատանքային և հերոսական պատմության նշանավոր դրվագների մասին։ Իր հերթին Կալինինոյի շրջանի աշխատավորությունը լայն ինֆորմացիա է ստանում ՍՍՀՄ միասնական ընտանիքում եղբայրական վրաց ժողովրդի ձեռք բերած աննախադեպ նվաճումների մասին։

Ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով մարդկանց դաստիարակության գործում մենք մեծ տեղ ենք հատկացնում քաղաքական ագիտացիայի և պրոպագանդայի մասսայական ձևերին։ Պլանավորված կերպով անցկացնում ենք հեղափոխության մարտիկների, Հայրենական մեծ պատերազմի հերոսների հիշատակին նվիրված օրեր, միութենական հանրապետու-

թյուններին նվիրված ցուցահանդեսներ ու թեմատիկ երեկոներ, ինտերնացիոնալ բարեկամության երեկույթներ ու ցերեկույթներ։ Աշխատանքի վետերանների և արտադրության առաջավորների մեծարումների անցկացումը դարձել է աշխատավորների, մասնավորապես երիտասարդության, կոմունիստական դաստիարակության հզոր միջոցներից մեկը։

Ուսանելի է Պրիվոլնոյե գյուղի Իլյիչի անվան կոլտնտեսության կուսկազմակերպության փորձը։ Այստեղ ավանդույթ է դարձել թեմատիկ և արտադրության առաջավորների ու վետերանների մեծարման երեկոների անցկացումը։ Միջոցառումների կազմակերպիչները բազմակողմանիորեն բացահայտում են կոլտնտեսային աշխատավորների, մտավորականության աշխատանքային սխրանքներով հարուստ պատմությունը։ Նրանք գյուղում ապրող բոլոր ազգությունների՝ ռուսների, հայերի, ադրբեջանցիների, հույների, քրդերի, ուկրաինացիների և բելոռուսների ներկայացուցիչներ են, որոնք ուս-ուսի տքնաջանորեն աշխատում և նյութական բարիքներ են արարում։

Արտադրության պրոցեսում ու կյանքում Պրիվոլնոյեի բազմազգ ընտանիքի անդամները մշտապես զորավիգ են միմյանց. միասին են ապահովում աշխատանքային հաջողությունները, միասին կիսում ու հաղթահարում դժվարությունները։ Հարսանիք լինի թե սովետական բանակ մեկնող երիտասարդի պատվին կազմակերպված խնջույք, տարբեր ազգության պատկանող հարևանները միասին են նշում, օգնում են միմյանց տուն կառուցելու և այլ գործերում։ Նրանք միաժամանակ հավասարապես հասկանում են միմյանց, հաղորդակցվում ցանկացած լեզվով։ Հանրային արտադրության բազմազան տեղամասերը ղեկավարում են տարբեր ազգության պատկանող կադրեր։ Արտադրության հմուտ կազմակերպչի համբավ ու լավ հեղինակություն են վայելում կոլտնտեսության վարչության նախագահ Վ. Բարոյանը, դաշտավարական բրիգադի բրիգադավար Ս. Գորլյուկովը, խոզաբուծական ֆերմայի վարիչ Մարիա Ֆեոդորովան, գլխավոր անասնաբույժ Շ. Նաբիևը, կաթնապրանքային ֆերմայի բրիգադավար Ա. Ռևազյանը։

Եվ ստեղծված այս ավանդույթները, սերտ բարեկամության ակնառու փաստերը զրույցի ու դասախոսության նյութ են ծառայում ագիտատորների, քաղինֆորմատորների ու զեկուցողների համար։

Բարեկամական ամուր կապերն ու շարունակվող լավ ավանդույթները բարերար ազդեցություն են թողնում տնտեսական գործունեության վրա, խթանում արտադրության առաջընթացը, նպաստում արտադրական հաջողությունների բազմապատկմանը, տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների բարեհաջող լուծմանը։ Եվ օրինաչափ է, որ այսօր Պրիվոլնոյեի կոլտնտեսությունը քայլում է առաջավորների շարքում, կատարել է տասներորդ հնգամյակի անցած չորս տարիների առաջադրանքները։ Նրա մարդիկ պայքարում են հնգամյակը հաջողությամբ փակելու, Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 60-ամյակը արժանավայել գործերով նշանավորելու համար։

Ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության բեղմնավոր աշխատանք է տարվում նաև Մեծավանի և Կաթնառատի սովխոզներում, Նորաշենի, Մեդովկայի և Միխայլովկայի կոլտնտեսություններում։

Ընթացիկ տարվա ապրիլին լրանում է Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակը, իսկ նոյեմբերին՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-րդ տարեդարձը։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշակել են միջոցառումների հարուստ պլան այդ երկու նշանավոր տարելիցներն արժանավայել նշելու համար։ Դեռևս անցյալ տարվանից մեզ մոտ սկսվել են լենինյան ընթերցումները։ Լենինյան ընթերցումների ընթացքում շրջանի աշխատավորությունն ու երիտասարդությունը լայնորեն ծանոթանում են առաջնորդի տեսական ժառանգությանը, խորությամբ ուսումնասիրում ՍՄԿԿ-ի կողմից հաջողությամբ իրականացվող լենինյան ազգային քաղաքականության հարցերը, ավելի շատ են իրազեկ դառնում մեր երկրի ազգերի ու ժողովուրդների պատմությանը, տնտեսական և կուլտուրական ծաղկմանը, սոցիալիստական համագործակցության երկրների նվաճումներին։

Հայրենասիրությունը և ինտերնացիոնալիզմը մարդուն հարկ է ներարկել փոքր հասակից։ Սիրելով հարազատներին, ընտանիքը, տունն ու բնակավայրը



երեխան պետք է համակվի իր հանրապետությունն ու բովանդակ Միությունը սիրելու զգացումով։ Սիրելով իր ժողովրդին՝ նա պետք է խորին հարգանքով վերաբերվի մյուս ազգերին։ Այդ ամենը հետևողական ու տևական աշխատանք է պահանջում։ Ահա ինչու կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն են նվիրում սովորողների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության կազմակերպմանը։ Դպրոցներում անցկացվում են բարեկամության երեկոներ, շրջանի տարբեր դպրոցների աշակերտների հանդիպումներ, միջդպրոցական տոնահանդեսներ։ Մասսայականություն են վայելում շրջանային պիոներտանը և առանձին դպրոցներում գործող ինտերնացիոնալ բարեկամության ակումբները։ Շրջանի դպրոցականները նամակագրական կապեր են հաստատել մեր հայրենիքի և սոցիալիստական երկրների տարբեր քաղաքների դպրոցների սովորողների հետ։

Ինտենացիոնալ և հայրենասիրական դաստիարակության նպատակով օգտագործվում են դասավանդվող, մասնավորապես, հասարակագիտական առարկաների հնարավորությունները։

Մենք սևեռուն ուշադրություն ենք նվիրում ռուսաց լեզվի դասավանդման բարելավմանը, որը սովորողների ինտերնացիոնալ դաստիարակության կարևոր գործոններից է։ «Ռուսաց լեզուն,— ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում,— փաստորեն դարձել է ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման և համագործակցության ընդհանուր լեզու»։ Այդ ամենի շնորհիվ դպրոցների շատ շրջանավարտներ ցուցաբերում են ռուսաց լեզվի խոր ու կայուն իմացություն։ Ոչ ռուսական դպրոցներում հաճախակի կազմակերպվում են ռուս գրականության երեկոներ, լույսընծայվում ռուսաց լեզվով պատի թերթեր, անցկացվում ռուսաց լեզվի օրեր։ Մեր ուշադրության կենտրոնում են գտնվում նաև հայոց լեզվի ուսուցման հարցերը ոչ հայկական դպրոցներում, որտեղ ծավալում ենք համանման աշխատանք։ Բարձր դասարաններում աշակերտները գրում են շարադրություններ սովետական հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության թեմաներով։ Ուշագրավ է այն փաստը, որ աշակերտների շարադրություններում կան շատ ինքնատիպ մտքեր ժողովուրդների բարեկամության վեհության, Հայրենական մեծ պատերազմի տարիներին և աշխատանքային ճակատում իրենց հասակակիցների գործած հերոսական սխրագործությունների վերաբերյալ։

Շրջանում կուտակվել է ռազմահայրենասիրական դաստիարակության բավականաչափ ուսանելի փորձ։ Այդ աշխատանքը կատարվում է ԴՕՍԱԱՖ-ի, «Գիտելիք» ընկերության, կոմերիտական ու պիոներական կազմակերպությունների միջոցով։ Զինվորական ծառայության զորակոչվող պատանիները ռազմատեխնիկական մասնագիտություն են ձեռք բերում ԴՕՍԱԱՖ-ի ուսումնական կետերում։ «Գիտելիք» ընկերության դասախոսների ուժերով դասախոսություններ են կարդացվում ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան գաղափարների, խաղաղության ծրագրի իրագործման և երկրի պաշտպանունակության ամրապնդման նպատակով կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության իրականացրած միջոցառումների մասին։

Կուսշրջկոմի բյուրոն ընթացիկ տարվա հունվարի վերջերին քննարկեց զինակոչիկների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի հարցը և հաստատեց միջոցառումների անցկացման պլան։ Բյուրոյի որոշմամբ զինկոմիսարիատում ստեղծվեց ագիտկետ, որտեղ ևս զինակոչիկների համար կանոնավոր կերպով անցկացվում են զրույցներ ու կարդացվում դասախոսություններ։

«Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել» նշանաբանով դպրոցականներն զբաղվում են իրենց համերկրացիների մարտական սխրանքների տարեգրության ստեղծմամբ, հավերժացնում նրանց հիշատակը։ Այս առումով ուշագրավ է Մեծավանի № 1 միջնակարգ դպրոցի սովորողների կատարած աշխատանքը։ Դպրոցի բակում կառուցվել է հուշաղբյուր այդտեղ սովորած և Հայրենական պատերազմում զոհված մեծավանցիների հիշատակին։ Կալինինո ավանի № 1 դպրոցը մասնակցել է ռազմահայրենասիրական դաստիարակության համամիութենական կոնկուրսին։ Այդ դպրոցի փորձը քննարկվել և հավանության է

արժանացել կուսշրջկոմի բյուրոյում, երաշխավորվել ուսումնասիրելու և արմատավորելու շրջանի մյուս դպրոցներում: Շրջանի շատ կոմերիտականներ ու պիոներներ նամակագրական կապեր ունեն երկրի ռազմական փառքի թանգարանների, հերոս քաղաքների կոմերիտականների ու պիոներների հետ:

Մեծ է գաղափարական կադրերի դերը ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության գործում: Այդ պատճառով մշտական ուշադրություն ենք նվիրում նրանց որակավորման բարձրացմանը: Կուսշրջկոմին առընթեր ստեղծվել է գաղափարական աշխատանքի հանձնաժողով, որը կոորդինացնում և պլանավորում է աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության առնչվող հարցերը: Կազմակերպել ենք մշտական գործող դասընթացներ ագիտատորների, քաղինֆորմատորների ու պրոպագանդիստների համար: Պարապմունքներում կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավարները հանդես են գալիս ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության հրատապ հարցերի, լենինյան ազգային քաղաքականության պրոբլեմների պարզաբանմամբ, ունկնդիրներին իրազեկ պահում շրջանի առջև ծառացած տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման ընթացքին ու արդյունքներին:

Պրոպագանդիստների համար կարդացվում են դասախոսություններ, անցկացվում տեսական ու մեթոդական կոնֆերանսներ, կոնսուլտացիաներ, ինֆորմացիայի օրեր: Վերջին տարիներին էականորեն բարձրացել է դասախոսական կադրերի տեսական-քաղաքական մակարդակը:

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես կատարելագործում են աշխատավորների մարքս-լենինյան ուսուցումը, որը նույնպես մեծ ազդակ է աշխատավորների դաստիարակության գործում:

Հանրագումարի բերելով ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ասպարեզում մեր ծավալած գործունեության արդյունքները՝ պիտի ասել, որ քիչ գործ չենք արել այդ ասպարեզում, բայց հարկավոր է անել ավելի շատ ու լավ: Այս առումով մեզ համար գործողության ուղեցույց է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Այդ որոշման կենսագործման նպատակով կուսշրջկոմը մշակել է միջոցառումների պլան: Մեզ հատկապես անհրաժեշտ է շատ բան անել ըստ բնակության վայրի, աշխուժացնել ակումբների ու գրադարանների գործունեությունը: Մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում (Կզլդաշ, Լեռնահովիտ, Կզլշաֆակ գյուղերի) ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը դեռևս կրում է կամպանիոն բնույթ: Առանձին դեպքերում թույլ է դաստիարակչական աշխատանքի ներգործունությունը, այն ոչ բոլոր դեպքերում է շաղկապվում աշխատանքային կարգապահության ամրապնդման, գործի հանդեպ մարդկանց պատասխանատվության զգացումով համակելու հետ:

Իր ամենօրյա գործունեության ընթացքում կուսշրջկոմը կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների, շրջանի ողջ աշխատավորության ուշադրությունը հրավիրում է ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության գործում տեղ գտած թերությունների վերացման, աշխատանքի ոճի ու մեթոդների համակողմանի կատարելագործման, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում արդյունավետության և որակի բարձրացման վրա: Չէ՛ որ այսօր շրջանի բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների հայրենասիրության մեծ ուժն առաջին հերթին արտացոլվում է հասարակության բարօրության համար նրանց կատարած աշխատանքում:

Մենք ձգտում ենք, որպեսզի շրջանի կուսկազմակերպությունները կատարելագործեն ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության ձևերն ու եղանակները ՍՄԿԿ XXV համագումարի, «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների լույսի ներքո:

---



# ԽՆԱՄՔՈՎ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Հ. Գ. ՄԱՂԱՔՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ երկրի մասին գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, ՀՍՍՀ գիտության և տեխնիկայի վաստակավոր գործիչ, պրոֆեսոր

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-Ն ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆ տեսակետից բավական լավ ուսումնասիրված երիտասարդ լեռնային երկիր է և ընդերքում հայտնաբերված մի շարք կարևոր մետաղային ու ոչ մետաղային օգտակար հանածոների պաշարներով Սովետական Միությունում գրավում է առաջատար տեղերից մեկը: Հիրավի, այնպիսի մետաղների պաշարներով ու հեռանկարներով, ինչպիսիք են պղինձը, մոլիբդենը, երկաթը և մի շարք հազվագյուտ ու ցրված տարրեր, մեր հանրապետության տեսակարար կշիռը բավական մեծ է: Հրաբխային տուֆերի, պեմզայի, պեռլիտի, բազալտի, ինչպես նաև բենտոնիտի, դիատոմիտի, մարմարի, դոլոմիտի, քարաղի, հրակայուն ապարների պաշարներով ևս երկրում առաջին տեղերից մեկը պատկանում է Հայաստանին:

Մետաղային օգտակար հանածոների ճնշող մեծամասնությունը, ինչպես նաև ոչ-մետաղների զգալի մասը հանրապետության տարածքում սերտորեն կապված են հալոցքների՝ մագմայի հետ, որը սառել է խորքում կամ արտավիժել է հրաբխային ժայթքումների ընթացքում: Տարիքով երիտասարդ մագմատիկ պրոցեսների հետ կապված են բազմաթիվ հանքային աղբյուրներ, որոնք մեծ արժեք ունեն (Արզնի, Ջերմուկ, Հանքավան, Դիլիջան, Տաթև և այլն), ինչպես նաև օգտագործման հեռանկարներ ունեցող ընդերքի ջերմությունը:

Հայկական լեռնաշխարհի դեռ հնագույն բնակիչները շինարարության մեջ, ինչպես նաև բազմազան գործիքներ պատրաստելու համար լայնորեն օգտվում էին ոչ-մետաղային օգտակար հանածոներից, իսկ մետաղներից օգտագործում էին պղինձ, երկաթ, մի փոքր ավելի ուշ նաև կապար, ցինկ, ոսկի և այլն: Այդ փաստը հաստատվում է հնէաբանական պեղումների տվյալներով, լեռնային աշխատանքների ու հալոցարանների մնացորդներով, լքված կամ գործող մի շարք հանքավայրերում լցակույտերի ու խարամների առկայությամբ:

Այժմ անդրադառնանք հանրապետության լեռնահանքային արդյունաբերության վիճակին, նրա զարգացման հեռանկարներին և այն միջոցառումներին, որոնք, մեր կարծիքով, անհրաժեշտ են ընդերքի հարստությունների կոմպլեքս օգտագործման ու պահպանման համար:

Պղնձի հանքանյութերը Հայկական լեռնաշխարհում մշակվել են վաղուց, իսկ պղինձը և դրա հիմքի վրա ձուլվող բրոնզն ու արույրը այստեղ հանդիսանում էին ավանդական մետաղներ: Պղնձահանքային արդյունաբերությունն այժմ էլ հանրապետությունում գրավում է պատվավոր տեղ, իսկ պղնձի ձուլման ծավալով Հայաստանը զիջում է միայն Ուրալին ու Ղազախստանին: Պղնձի գլխավոր հանքավայրերը կենտրոնացված են Հյուսիսային Հայաստանում՝ հիմնականում Թումանյանի շրջանում (Ալավերդու հանքախումբը) և Հարավային Հայաստանում՝ Զանգեզուրում, հիմնականում Ղափանի, մասամբ Մեղրիի ու Սիսիանի շրջաններում (Ղափան, Քաջարան, Ագարակ և այլն): Առաջացման պայմաններով (ծագումով) ու հանքանյութերի բնույթով պղնձի հանքավայրերը դասվում են երկու տարբեր տիպերի.

1. Հրաքարային, միամետաղ պիրիտ-խալկոպիրիտային պղնձի հանքանյութերի, ոսկու և արծաթի խառնուրդի, իսկ հազվագյուտ-ցրված տարրերից՝ սելենի ու տելուրի պարունակությամբ (այդ տիպին են դասվում Ալավերդու հանքավայրերի խումբը և Ղափանը). պղնձի պարունակությունը հանքանյութերում կազմում է 0,3—0,5 մինչև մի քանի տոկոս:

2. Պղինձ-մոլիբդենային, երակիկա-ցանավոր, երկմետաղ կազմության, որտեղ գլխավորներն իրար հետ սերտորեն զուգակցվող պղինձ ու մոլիբդեն մետաղներն են. խառնուրդներից բնորոշ են ոսկին, արծաթը, սելենը, տելուրը և ռենիումը (վերջինը կապված է մոլիբդենի հետ). այդ տիպին են դասվում Քաջարանը, Ագարակը, Դաստակերտը՝ Զանգեզուրում, Հանքավանը և այլ հանքավայրեր՝ Փամբակի լեռնաշղթայում: Մետաղների պարունակություններն այս տիպի հանքանյութերում բարձր չեն՝ պղնձինը սովորաբար 0,3—0,5 տոկոս, մոլիբդենինը՝ 0,01—0,1 տոկոս, սակայն, քանի որ այդ հանքանյութերի պաշարները մեծ են, դրանց դերը պղնձի արդյունաբերության մեջ նույնիսկ ավելի մեծ է, քան հրաքարային հանքանյութերինը:

Հիմնական խնդիրն է՝ հրաքարային ու պղինձ-մոլիբդենային հանքանյութերի համալիր օգտագործումը, դրանցից ո՛չ միայն, այսպես կոչված, գլխավոր մետաղների՝ պղնձի կամ պղնձի ու մոլիբդենի, այլև արժեքավոր խառնուրդների՝ ոսկու, արծաթի, սելենի, տելուրի, ռենիումի կորզումը:

Կարևոր հարց է նաև պղնձի և այլ մետաղների պարունակության նոր, տնտեսապես ընդունելի կոնդիցիաների մշակումը համեմատաբար ոչ հարուստ հանքանյութերի օգտագործման նպատակով, որոնք մնալով ընդերքում կամ լցակույտերում, անվերադարձ կորչում են:

Պրակտիկան ցույց է տալիս, որ խոշոր պաշարների ու բաց եղանակով (բացհանքի) շահագործման դեպքում, պղնձի նվազագույն պարունակությունները հրաքարային կամ պղինձ-մոլիբդենային ցանավոր հանքանյութերի համար կարող են կազմել 0,3 և նույնիսկ 0,2 տոկոս: Այդ նոր կոնդիցիաների ներդրումը ո՛չ միայն մոտավորապես կկրկնապատկի պղնձի ընդհանուր պաշարներն ընդերքում, այսինքն՝ կրկնակի կերկարացնի հանքավայրի շահագործումը, այլև, որ շատ կարևոր է, թույլ կտա ավելի լիակատար յուրացնել ընդերքի պաշարները և նվազագույնի հասցնել անվերադարձ կորուստները:

Մոլիբդենային (ավելի ճիշտ՝ պղինձ-մոլիբդենային) հանքանյութերը Հայկական ՍՍՀ տարածքում հետախուզվեցին Հայրենական պատերազմի տարիներին, երբ հատուկ պողպատների և համաձուլվածքների արտադրությունը մոլիբդենով ապահովելու սուր անհրաժեշտություն առաջացավ:

Այսօր մեր հանրապետությունը մոլիբդենի պաշարներով ու մոլիբդենային հարստանյութերի արտադրությամբ Սովետական Միությունում գրավում է առաջատար տեղ: Պղինձ-մոլիբդենային գլխավոր հանքավայրերը գտնվում են Զանգեզուրում (Քաջարան, Ագարակ և այլն), ընդ որում նույնատիպ հանքավայրերի գոտին ձգվում է դեպի հյուսիս-արևմուտք՝ Վայք (Արփա գետի ավազան) ու Փամբակի լեռնաշղթա՝ նրա Ծաղկունյաց լեռնաճյուղով, որտեղ նույնպես հայտնի են ավելի փոքր մասշտաբի պղինձ-մոլիբդենային հանքավայրեր: Մոտակա տարիների կարևոր խնդիրն է գլխավոր հանքային դաշտերի՝ Քաջարան, Ագարակ և այլ պղինձ-մոլիբդենային հանքանյութերի պաշարների հետագա ավելացումը և միաժամանակ քիչ ուսումնասիրված հանքադաշտերի (Դաստակերտ, Հանքավան, Թեղուտ, Ծավ և այլն) հեռանկարների պարզումը: Դաստակերտի հանքավայրի շահագործման դառը փորձը, հանքավայր, որտեղ օգտագործվել են միայն հարստագույն հանքանյութերը ու լքել համեմատաբար աղքատները, չի կարող տագնապ չառաջացնել. պետանի վիթխարի կարևորության հարց է շահագործման սիստեմների ճիշտ ընտրությունը այն հաշվով, որ ոչ միայն հարուստ, այլև դրանց հետ մեկտեղ այսպես կոչված շարքային հանքանյութերն օգտագործվեն մինչև վերջ ու ռացիոնալ ձևով:

Հայկական ՍՍՀ տարածքում երկաթի հիսունից ավելի հայտնի հանքավայրերից ու երևակումներից ամենից հեռանկարայինը Հրազդանի, Աբովյանի (Կապուտանի) ու Սվարանցի (Արամազդի) հանքավայրերն են:

Հրազդանի հանքավայրը ներկայացված է գրանիտոիդային զանգվածի



կոնտակտում տեղայնացված մագնետիտային հանքանյութերով. երկաթի միջին պարունակությունը շուրջ 40 տոկոս է, վնասակար խառնուրդները քիչ են, առկա է հազվագյուտ հողերի (ցերիում և այլն) արժեքավոր խառնուրդը, հետևապես հանքանյութը բնականից լեգիրված է: Հետախուզված պաշարները կազմում են 70 մլն տոննա, մոտավորապես նույնքան էլ՝ հեռանկարայինները:

Աբովյանի հանքավայրի հանքանյութերը մագնետիտային են՝ ապատիտի խառնուրդով և պարունակում են 15—20 մինչև 50—60 տոկոս երկաթ ու 1—2 տոկոս ֆոսֆոր, որը կապված է ապատիտի հետ: Մագնիսային զատման միջոցով ստացվում են մագնետիտային ու ապատիտային հարստանյութեր, որոնցից առաջինը երկաթ ու պողպատ ձուլելու, իսկ երկրորդը՝ սուպերֆոսֆատ արտադրելու հումք են: Հանքավայրի հետախուզված պաշարները հաստատված են 250 մլն տոննա և նույնքան էլ գնահատվում են հեռանկարային պաշարները:

Սվարանցի (Արամազդի) հանքավայրը գտնվում է Սվարանց գյուղի մոտ Արամազդ լեռան լանջերում: Այն կազմված է հիմքային և ուլտրահիմքային ապարներից՝ գաբրո ու պիրոքսենիդներից: Հանքանյութերը ներկայացված են տիտանամագնետիտային օլիվինիտների հզոր դայկաձև մարմիններով, որոնք պարունակում են 20—25 տոկոս երկաթ և այլ արժեքավոր խառնուրդներ: Հանքադաշտի հեռանկարային պաշարները հասնում են շուրջ 1 մլրդ տոննայի, որից հետախուզված պաշարները կազմում են 420 մլն տոննա: Այստեղ երկաթի հանքանյութերի նվազագույն պարունակությունը Ուրալի օրինակով (Կաչկանար լեռ) մեր կողմից ընդունվում է 14—15 տոկոս:

Այսպիսով, չնայած երկաթի հանքայնացման տեսակետից հանրապետության տարածքի հեռանկարների որոշ երկրաբանների բացասական գնահատումներին, երկրաբանների ու երկրաֆիզիկոսների նպատակասլաց ջանքերով հաջողվեց ապացուցել առնվազն երեք՝ Հրազդանի, Աբովյանի, Սվարանցի հանքավայրերի հեռանկարները 1,5 մլրդ տոննա ընդհանուր պաշարներով, որից հետախուզված պաշարները կազմում են 740 մլն տոննա:

Այդ հանքավայրերը կարող են հուսալի հիմք ծառայել հանրապետությունում սև մետաղների արտադրություն կազմակերպելու համար: Նախատեսվում է Հրազդանի բնական լեգիրված հանքանյութերի բազայի վրա ստեղծել որակյալ պողպատների ու հատուկ համաձուլվածքների գործարան, իսկ Աբովյանի ապատիտ-մագնետիտային հանքանյութերի հիման վրա կազմակերպել պողպատի ձուլում և սուպերֆոսֆատի արտադրություն:

Ինչ վերաբերում է Սվարանցի խոշոր հանքավայրի համեմատաբար աղքատ տիտանամագնետիտային հանքանյութերին, որոնք պարունակում են վանադիումի արժեքավոր խառնուրդ, ապա դրանց մշակման համար նախատեսվում է տեղում կառուցել հարստացուցիչ գործարան:

Դեռ քանի տարի առաջ մեր հանրապետությունում ոսկու հեռանկարների գնահատականները շատ համեստ էին, սակայն այդ գնահատականներն աստիճանաբար բարձրացան, երբ հանրապետության փոքր տարածքում հայտնաբերվեցին ոսկի պարունակող հանքանյութերի մի շարք հանքավայրեր ու երևակումներ:

Հանրապետության հանքավայրերի ճնշող մասը պատկանում է ամենուրեք լայն տարածված ոսկի-սուլֆիդային (ոսկի-բազմամետաղային) տեսակին, ներկայացված ոսկի պարունակող պղինձ-կապար-ցինկային հանքանյութերով, որոնք պետք է շահագործվեն ամբողջությամբ, ոսկու և բազմամետաղների կորզմամբ. այս տեսակից են Շահումյանի, Արմանիսի, Ազատեկի, Թեյ-Լիճքվազի և այլ հանքավայրեր: Հանրապետությունում շատ ավելի հազվադեպ են ոսկի-տելուրիդային տիպի հանքավայրերը համալիրային ոսկի-արծաթ-տելուր-բիսմուտային հանքանյութերով, որոնք տեղայնացված են Զոդում և Մեղրաձորում:

Զոդի հանքավայրն արդեն շահագործվում է, իսկ մյուս հանքավայրերը հետախուզված և հաշված են պաշարները՝ կապված ոսկի-բազմամետաղային կամ ոսկի-տելուրիդային հանքանյութերի հետ: Այժմ ամենուրեք վերանայվում են ոսկու կոնդիցիաները: Նվազագույն ընդունելի պարունակությունները (կոնդիցիաները) այժմ համարվում են 1—2 գ/տ ու կարող են էլ ավելի իջեցվել

համալիրային հանքանյութերում, որոնք, բացի ոսկուց, կորզելի քանակություններով պարունակում են նաև պղինձ, կապար, ցինկ, ծարիր, տելուր, բիսմուտ և այլ արժեքավոր բաղադրամասեր։

Այսպիսով, ՀՍՍՀ-ում լայն տարածված մի շարք մետաղներ միութենական նշանակություն ունեցող կուտակումներ են։ Այդ մետաղների հանքանյութերի ղգալի պաշարների հիմքի վրա աշխատում է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը, որտեղ ձուլում են պղինձ ու ստանում են պղնձարջասպ, Ջանգեզուրի և Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատները, որոնք արտադրում են պղնձի ու մոլիբդենային հարստանյութեր (պղինձ-մոլիբդենային հանքանյութերից), Արարատի ոսկու կորզման ֆաբրիկան (ոսկու հանքանյութերից)։

Հանրապետությունում երկաթի հանքանյութերն առայժմ չեն օգտագործվում, թեև մշակված են դրանցից մագնետիտային ու ապատիտային հարստանյութերի և էլեկտրաձուլման ու փոշու մետալուրգիայի միջոցով բարձրորակ մետաղ ստանալու եղանակներ։

Բացի նշվածներից, հանրապետությունում հայտնաբերված ու մասամբ հետախուզված են կապար-ցինկի, քրոմիտի, մանգանի, ծարիրի ու սնդիկի հանքանյութերի հանքավայրեր, որոնց հեռանկարները համեմատաբար մեծ չեն։

Կապարը և ցինկը տալիս են բավականին խոշոր կուտակումներ հանքանյութերի երկու տեսակներում՝ հրաքարային (օրինակ՝ Շահումյանի, Ախթալայի, հավանաբար նաև Արմանիսի հանքավայրերը) և երակային բազմամետաղային (օրինակ՝ Ղազմայի, Ազատեկի և այլ հանքավայրերը). այդ հանքավայրերի հանքանյութերի համար բնորոշ է ոսկու և արծաթի, երբեմն ծարիրի ու մի խումբ ցրված տարրերի (կադմիում, ինդիում, գալլիում, գերմանիում, թալիում, տելուր, սելեն և այլն) խառնուրդը։ Այն բարձրացնում է դրանց արժեքը և պարտավորեցնում է մեզ օգտագործել հանքանյութերը, կորզելով դրանցից բաղադրամասերի ողջ համալիրը։

Քրոմիտային հանքանյութերը հոծ ու ցանավոր ձևով կապված են Սևանա լճի հյուսիս-արևելյան ափի ուլտրահիմքային ապարների հետ և տեղադրված են դունիտների ու պերիդոտիտների զանգվածներում։ Այդ հանքավայրերի մասշտաբը մեծ չէ, բայց նշանակալից է այն, որ հանքանյութերի որակը բարձր է (մագնոքրոմիտ), իսկ հանքայնացման ինտենսիվությունը խորքում աճում է։

Մանգանի հանքանյութերի ամենից ավելի հեռանկարային հանքավայրերը գտնվում են Իջևանի շրջանում (Սևքար, Սարիգյուղ և այլն), Ջանգեզուրում (Սվարանց) և Սևանա լճի ավազանում (Սարինար)։ Բնորոշ է հանքանյութերի բարձր որակը (պիրոլյուզիտ, մանգանիտ, բրաունիտ) և մանգանի, երկաթի, սիլիկահողի, ագատի, խալցեդոնի, տեղ-տեղ նաև բենտոնիտի կուտակումներ ընդգրկող հանածոների համալիրը։

Ծարիրի հանքանյութերը կապված են մասամբ ոսկի-բազմամետաղային (Ազատեկ), մասամբ էլ ցածր ջերմաստիճանային ոսկի-մկնդեղային (Ամասիա, Զոդ) հանքանյութերի հետ, որտեղ դրանք կարող են հետաքրքրություն ներկայացնել այլ մետաղների համատեղ կորզման դեպքում։

Մետաղային օգտակար հանածոների կողքին հանրապետության համար մեծ նշանակություն ունեն ոչ-մետաղային օգտակար հանածոները։ Լավ հայտնի են ու վաղուց օգտագործվում են տարբեր գույնի հրաբխային տուֆերը՝ որպես հիանալի շինանյութ. լայն տարածված են ու օգտագործվում են անդեզիտա-բազալտները և ոչ միայն իբրև շինանյութ, այլև որպես հումք ապակե ու սինթետիկ մանրաթելերի արտադրության համար։

Մեծ արժեք են ներկայացնում պեմզայի ու պեռլիտի խոշոր հանքավայրերը, որոնք հումք են ծառայում թեթև բետոնների լցանյութերի ու նավթի և բուսական ճարպերի մաքրման նպատակով օգտագործվող զտիչների արտադրության համար։

Բացի նշված երիտասարդ հրաբխականության անմիջական նյութերից՝ տուֆեր, անդեզիտա-բազալտներ, պեմզա ու պեռլիտ, որոնց պաշարները հսկայական են, եթե ոչ գործնականորեն անսպառ, կան հանքավայրեր, որոնք անուղղակի ձևով նույնպես կապված են հրաբխականության հետ. դրանք են



հրաբխային տուֆերի վերամշակման հաշվին առաջացած բենտոնիտների խոշոր կուտակումները (Իջևան) և դիատոմիտների հանքավայրերը (Սիսիան)։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում մեր զարդաքարերն ու բնագույն քարերը։ Դրանցից են՝ տարբեր գույնի, հատկապես արծաթափայլ օբսիդիանը, ամենատարբեր գույնի հասպիսները, որոնք որակով հաճախ չեն զիջում ուրալյան տեսակներին, տեխնիկական նպատակներով օգտագործվող խալցեդոնը և ագատը, վերջապես փիրուզը, որի հանքավայրը հայտնաբերվել և շահագործման է հանձնվել վերջերս։

Ոչ-մետաղային օգտակար հանածոների մասին լրիվ պատկերացում ստանալու համար հարկ է նշել բազմագույն բարձրորակ մարմարների խոշոր հանքավայրերը (Ապարան, Հանքավան, Խոր-Վիրապ և այլն), դոլոմիտի հանքավայրերը (Իջևան, Ալավերդի), որոնք, բացի օնիքսանման մարմարից, ցավոք, համարյա չեն օգտագործվում։ Հարկ է նշել նաև հրակայուն հումքի՝ Սևանա լճի մերձափնյա գոտու ուլտրահիմքային ապարների (Շորժա) ու ֆլինտ-կլեյի տիպի քարանման կավերի (Դսեղ), քարաղի (Երևան) հսկայական պաշարները։

Բայց եթե մետաղային և ոչ-մետաղային օգտակար հանածոների մի շարք կարևոր տեսակների պաշարների հայտնաբերման և հետախուզման առումով վիճակը պետք է բարվոք համարել, ապա նույնը չի կարելի ասել էներգետիկ ռեսուրսների մասին. քարածխի պաշարները մեզ մոտ չնչին են, նավթի ու գազի արդյունաբերական քանակություններ առայժմ չեն հայտնաբերվել, ջրաէներգետիկ ռեսուրսները սահմանափակ են, ավելի ճիշտ, այդ տեսակետից դրանց հնարավորություններն արդեն հաշվի են առնված։

Մնում է մի իրագործելի հնարավորություն՝ օգտագործել երիտասարդ ինտրուզիվ մագմատիզմի ու հրաբխականության շրջանների լրիվ չսառած հալոցքների՝ մագմայի օջախների ստորերկրյա ջերմությունը։ Այդ խնդրով սկսել են զբաղվել հանրապետության առաջատար երկրաբանական կազմակերպություններում՝ երկրաբանական վարչությունում և գիտությունների ակադեմիայի երկրաբանական ինստիտուտում։

Ստորերկրյա ջերմության մնացորդային օջախների հայտնաբերման տեսակետից ամենահեռանկարայինը Փամբակ—Ջանգեզուրի գոտին է։ Այդ տիպի հեռանկարային օջախների երկրաբանական և երկրաֆիզիկական մանրազնին ուսումնասիրությունը մոտակա տարիների խնդիր է, բայց արդեն որպես ամենահետաքրքիր ու ստորերկրյա ջերմության հնարավոր աղբյուր կարելի է նշել Արագած լեռան զանգվածը, Հատիսը և Արայի լեռը, Սյունիքի հրաբխային բարձրավանդակը, (Իշխանասար, Ծռաբլուր և այլն), Արփա և Որոտան գետերի ակունքները։

Ամենաընդհանուր ձևով՝ չսառած հրային լեռնաապարների ջերմության օգտագործումը ծրագրվում է, այսպես կոչված, էներգետիկ կաթսաների ստեղծման եղանակով. փորվում են մինչև երկու-երեք կմ խորության երկու հաղորդակից հորատանցքեր և դրանցից մեկի մեջ լցվում է ջուրը, որը խորքում լեռնային ապարների ջերմությունով տաքանում է մինչև 100—120° և երկրորդ հորատանցքով դուրս է բերվում օգտագործման համար։

Մենք արդեն նշեցինք, որ նավթագազաբերության նպատակով կատարված աշխատանքների համեմատաբար փոքր ծավալն առայժմ դրական արդյունքներ չի տվել. հայտնաբերվել է միայն արդյունաբերական նշանակություն չունեցող նավթի ու գազի երևակումներ, իսկ այնուհետև աշխատանքները դադարեցվել են։ Այժմ, սակայն, հանրապետության տարածքում նավթագազաբերության հեռանկարները պարզելու նպատակով աշխատանքները վերսկսվում են ու պետք է կատարվեն երկու փուլերով՝ ա) նավթագազաբերության տեսակետից ամենից ավելի հուսալի տեղամասերի ու կառուցվածքների երկրաբանա-երկրաֆիզիկական հետազոտություններ, բ) այդ ամենահեռանկարային կառուցվածքների հետախուզումը հորատանքերով։

Մինչև հիմա, ինչպես ողջ Սովետական Միության, այնպես էլ Հայկական ՍՍՀ հիմնական օգտակար հանածոների յուրաքանչյուր տարվա պաշարների աճը (հայտնի հանքային դաշտերի թևերի ու խորքային հորիզոնների հետախուզման, ինչպես և նոր հանքավայրերի հայտնաբերման հաշվին) գերազան-

ցում է ընդերքից արդյունահանվող պաշարների սպառմանը. ուստի մեզ համար չի ծագել և դեռ չի դրված ընդերքի հումքի սպառման հարցը։

Այնինչ լեռնային արդյունաբերության տեսակետից մի շարք զարգացած ու համեմատաբար փոքր տարածք և ընդերքում հումքի սահմանափակ պաշարներ ունեցող երկրների, ինչպես, օրինակ՝ Ճապոնիայի, Մեծ Բրիտանիայի, ԳՖՀ-ի համար հանքային հումքի սեփական ռեսուրսների սպառման պրոբլեմը բավականին սուր է դրված, ուստի այդ երկրները հումքի իրենց պահանջները զգալի չափով, կամ նույնիսկ հիմնականում ստիպված են ապահովել ներմուծման հաշվին։

Սակայն դա չի նշանակում, թե ընդերքի պահպանության հարցը մեզ չպետք է անհանգստացնի։ Երբեք չպետք է մոռանալ, որ հանքային հումքի պաշարներն ընդերքում սահմանափակ են ու անվերականգնելի, բնության ստեղծած բարիքները պետք է օգտագործվեն լիովին, առանց կորուստների և բոլոր արժեքավոր բաղադրամասերի՝ գլխավոր մետաղների ու խառնուրդների կորզմամբ։ Չի կարելի հաշտվել հանքանյութերի ընտրովի շահագործման հետ. ընդերքից պետք է արդյունահանվեն նաև համեմատաբար ավելի ցածր պարունակության, սակայն տնտեսապես շահավետ հանքանյութերը։

Այժմ շատ երկրներում արդյունահանման համար տնտեսապես շահավետ են համարվում 0,2—0,3 տոկոսից ոչ պակաս պարունակությամբ պղնձի հանքանյութերը. երկաթի համար ընդունելի են 14—15 տոկոսից ոչ պակաս պարունակությունները, մոլիբդենի համար ստորին սահմանը կազմում է 0,03—0,05 տոկոսը, իսկ ոսկու համար՝ 1—2 գ/տ հանքանյութում. այդ թվերն ընդունելի են խոշոր հանքավայրերի համար, դրանց բաց եղանակով շահագործման ու բոլոր օգտակար բաղադրամասերի կորզման դեպքում։

Մեր հանրապետության համար մյուս կարևոր խնդիրը տեղում հանքային հումքի զգալի մասի մշակման կազմակերպումն է և հարստանյութերի ու հումքի փոխադրման խիստ կրճատումը։ Այսպես, մոլիբդենային հարստանյութերի զգալի մասը կարող է ու պետք է մշակվի մեզ մոտ՝ մետաղային մոլիբդեն ու դրան զուգընթաց ռենիում և այլ արժեքավոր բաղադրամասեր ստանալու նպատակով։ Երկրաբանական ինստիտուտի Ղափանի մետալուրգիական լաբորատորիան, Մոսկվայի Բայկովի անվան մետալուրգիական ինստիտուտի հետ համատեղ, մշակել է ջրածնով կամ մեթանով մոլիբդենի հարստանյութերի վերականգնման նոր եղանակ. արդեն ստացված է հեղինակային վկայագիր ու նախագծվում է փորձարարական սարքավորումը։

Կարելի է բերել նաև հանրապետության երկաթի հանքանյութերի օրինակը, որոնք առայժմ չեն օգտագործվում. դրանց մի մասը, իհարկե, կարելի է փոխադրել և ձուլել Ռուսթավիում, սակայն այդ հանքանյութերի, հատկապես Հրազդանի բարձրորակ հումքի բազայի վրա անհրաժեշտ է հանրապետությունում կազմակերպել հատուկ համաձուլվածքների և երկաթի ու պողպատի որոշ տեսակների արտադրություն, որոնց խիստ պահանջը զգացվում է մեր հանրապետության էլեկտրամեքենաշինական, էլեկտրատեխնիկական ու սարքաշինական ձեռնարկություններում։

Ոսկի պարունակող հանքանյութերը վերամշակվում են Արարատի ֆաբրիկայում, սակայն այստեղ պետք է հասնել ո՛չ միայն ոսկու կորզման բարձր տոկոսի, այլև ստանալ արծաթ, բիսմուտ, տելուր և այլ արժեքավոր բաղադրամասեր։

Կարևոր է տեղում կազմակերպել նաև ոչ-մետաղային օգտակար հանածոների հիմնական տեսակների՝ բենտոնիտի, դիատոմիտի, պեռլիտի վերամշակումը՝ հումքի փոխարեն արտահանելով պատրաստի արտադրանք։

Վերջապես, տեղում հարկ է կազմակերպել բնագույն ու կիսաթանկարժեք քարերի՝ օբսիդիանի, խալցեդոնի, ագատի, հասպիսի, օնիքսանման մարմարի, փիրուզի մշակումը։

Հանրապետության պլանային ու տնտեսական մարմինները, համապատասխան մինիստրությունները պետք է ստանձնեն այդ արտադրությունների կազմակերպումը և ամեն կերպ աջակցեն ընդերքի հարստությունների արդյունավետ օգտագործմանը։

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ

**Մ. Խ. ՉՈԲԱՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ, հատկապես արդյունաբերության և գյուղատնտեսության, ինչպես նաև սպասարկման ոլորտի զարգացման բարձր մակարդակը անմիջականորեն պայմանավորում է ժողովրդական բարեկեցության աճը։ Այդ համակարգում առանձնահատուկ է մեր էկոնոմիկայի ագրարային հատվածի՝ գյուղատնտեսության դերը, որի հետ է կապված ժողովրդական սպառման ֆոնդի երեք քառորդը։ Հիմնականում դրանք անմիջական սպառման մթերքներն են կամ գյուղատնտեսական հումքից արդյունաբերության մեջ պատրաստված ժողովրդական լայն սպառման ապրանքները։ Միաժամանակ, գյուղատնտեսությունը սոցիալիստական կուտակումների, համախառն հասարակական արդյունքի ընդլայնված վերարտադրության խոշոր աղբյուր է. այստեղ ստեղծվում է երկրի ազգային եկամտի մեկ քառորդը, կենտրոնացված է արտադրական հիմնական ֆոնդերի ավելի քան մեկ հինգերորդ մասը և ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների շուրջ մեկ հինգերորդը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում բնակչության կենսամակարդակի բարձրացումը դառնում է կուսակցության պրակտիկ քաղաքականության առանցքը։ Ըստ որում ժողովրդական տնտեսության քանակական ու որակական նվաճումները մեծ հնարավորություններ են ընձեռում բնակչության կենսամակարդակի աճի համար։ Երկրի տնտեսական ու սոցիալական հետագա առաջընթացը, ժողովրդի բարեկեցության աճը իրականացվում են գյուղատնտեսության բարձր զարգացած նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում կուսակցության արդի ագրարային քաղաքականությունը գիտականորեն արտացոլում է սովետական հասարակության նոր պայմաններն ու պահանջները։ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը նշեց, որ մեր երկրի գյուղատնտեսությունը մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում խոշոր առաջընթաց քայլեր արեց տնտեսական և սոցիալական զարգացման ասպարեզում։ Ամրապնդվել է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, ուժեղացվում է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման կողմնորոշումը, ճյուղի զարգացմանը ավելի մեծ չափերով են հատկացվում կապիտալ ներդրումներ։ Այս ամենի շնորհիվ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում գյուղատնտեսության հանրային սեկտորում հիմնական արտադրաֆոնդերն ավելացան երեք անգամ, կոլտնտեսությունների և սովխոզների էներգետիկ կարողությունները՝ 2,5 անգամ, իսկ գյուղատնտեսության մեկ աշխատողի էներգազինվածությունը՝ 2,8 անգամ։

ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո որակական ու քանակական զգալի տեղաշարժեր են կատարվել նաև Հայկական ՍՍՀ գյու-

ղատնտեսության մեջ։ Այժմ հանրապետության գյուղատնտեսության հիմնական արտադրաֆոնդերի արժեքը 2,6 անգամ գերազանցում է 1965 թվականի մակարդակը, իսկ կոլտնտեսությունների ու պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների էներգետիկ կարողություններն ավելացել են գրեթե երկու անգամ*։ Մեծ աշխատանք է կատարվել գյուղատնտեսական արտադրության մեքենայացման, հողերի քիմիացման և մելիորացման նպատակով։

Գյուղատնտեսության վերելքն ապահովող տնտեսական միջոցառումների, ինչպես նաև սոցիալական հարցերի լուծման ասպարեզում կարևոր նշանակություն ունեցավ գյուղատնտեսական մթերքների արտադրության և գնումների պլանավորման, գնագոյացման և վարկավորման, աշխատանքի վարձատրության, կենսաթոշակային ապահովության և սոցիալական ապահովագրության կատարելագործումը։ Այս ամենը նպաստեցին գյուղատնտեսական ձեռնարկությունների էկոնոմիկայի որոշակի ամրապնդմանը, դրանց եկամուտների աճին, գյուղի սոցիալական զարգացմանը։

Գյուղատնտեսության վերելքի գործում զգալի հաջողություններ ձեռք բերվեցին տասներորդ հնգամյակի չորս տարում։ Բավական է նշել, որ 1976—1979 թվականներին երկրի գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը հասավ 124,6 մլրդ ռուբլու (1973 թվականի համադրելի գներով), որը 10,9 մլրդ ռուբլով ավելի է 1971—1975 թվականների նույն ցուցանիշից։ Չորս տարում հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը կազմեց 209 մլն տոննա, որը գրեթե 27 մլն տոննայով ավելի է, քան իններորդ հնգամյակի միջին տարեկանը։ Նշանակալիորեն ավելացել են երկրագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու պետական գնումները։ Այդ գործում եղբայրական հանրապետությունների հետ մեկտեղ զգալի է նաև Սովետական Հայաստանի գյուղի աշխատավորների ավանդը։ Տասներորդ հնգամյակի չորս տարում հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը, իններորդ հնգամյակի միջինի համեմատությամբ, ավելացել է 23,9 տոկոսով՝ պլանով նախատեսված 21,1 տոկոսի փոխարեն։ 1976—1979 թվականներին պետությանը վաճառվել է 272,8 հազար տոննա հացահատիկ, 635 հազար տոննա շաքարի ճակնդեղ, ցուցանիշներ, որոնք գերազանցում են ընթացիկ ամբողջ հնգամյակի համար նախատեսված բնագծերը։ Ավելացել են խաղողի, բանջարեղենի, կարտոֆիլի, պտղի մթերումները։ Աճել է նաև անասնապահության մթերատվությունը։

Իրականացնելով աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու կուրսը, կուսակցությունը երկրի տնտեսական և գիտատեխնիկական պոտենցիալը է՛լ ավելի է նպատակամղում գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացմանը։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման նպատակով տարեցտարի, հնգամյակ առ հնգամյակ աճում է գյուղատնտեսությանը հատկացվող կապիտալ ներդրումների ծավալը։ Այսպես, սովետական իշխանության բոլոր տարիներին գյուղատնտեսության զարգացման համար կապիտալ ներդրումների ամբողջ ծավալը կազմում է 456 միլիարդ ռուբլի, որից 266 միլիարդը կամ շուրջ 60 տոկոսը բաժին է ընկնում 1971—1979 թվականներին, այդ թվում 136 միլիարդը՝ ընթացիկ հնգամյակի չորս տարվան։ Այդ միջոցներն օգտագործվում են հատկապես գյուղատնտեսական նոր տեխնիկայի ձեռքբերման, անասնապահական ֆերմաների, մսի և կաթի արտադրության մեքենայացված համալիրների, թռչնաբուծական ֆաբրիկաների կառուցման, ինչպես նաև գյուղում բնակարանային, կուլտուր-կենցաղային և այլ շինարարության համար։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում գյուղատնտեսության մեջ պետության և կոլտնտեսությունների կապիտալ ներդրումների մեծացմանը նշանակալիորեն նպաստել է գյուղատնտեսության մի շարք հիմնական տնտեսական ցուցանիշների բարելավումը։ Մասնավորապես ավելացել է գյուղատնտեսական ձեռնարկությունների զուտ եկամուտը, բարձ-

* Այս և հետագա հաշվարկները բերված են ըստ «Народное хозяйство СССР в 1978 г.» և «Народное хозяйство Армянской ССР в 1978 г.»։



րացել դրանց արտադրության շահութաբերությունը։ Դա տեղի է ունեցել ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ ռեգիոնալ մասշտաբով։ Այսպես, Հայկական ՍՍՀ կոլտնտեսություններում զուտ եկամուտը, 100 հեկտար գյուղատնտեսական հողատարածության հաշվով, 1965 թվականի 2,7 հազար ռուբլուց 1978 թվականին հասավ 6,4 հազար ռուբլու, այսինքն՝ աճեց 2,4 անգամ, իսկ մեկ կոլտնտեսականի հաշվով՝ 170 ռուբլուց հասավ 308 ռուբլու կամ մեծացավ 1,8 անգամ։

Ներկայումս, երբ ավելի հրատապ է դառնում գյուղատնտեսության արդյունավետության բարձրացումը, հարկավոր է միջոցները, տնտեսական ու կազմակերպական ողջ աշխատանքը նպատակամղել կոլտնտեսությունների, սովխոզների, միջտնտեսային և այլ ձեռնարկությունների որակական ցուցանիշների բարելավմանը, կապիտալ ներդրումների և հիմնական ֆոնդերի հատույցի բարձրացմանը, ներարտադրական ռեզերվների համակողմանի օգտագործմանը։ Ընդ որում գյուղատնտեսության արդյունավետության հետագա բարձրացումը պետք է տեղի ունենա արտադրության ինդուստրացման, համակենտրոնացման և խոր մասնագիտացման հիման վրա։ 1979 թվականի սկզբին մեր երկրի գյուղատնտեսության մեջ արդեն գործում էին ավելի քան 8,6 հազար միջտնտեսային և ագրոարդյունաբերական ձեռնարկություններ ու միավորումներ, այդ թվում Հայկական ՍՍՀ-ում՝ 52։

Կոմունիստական կուսակցության ագրարային քաղաքականությունն ուղղված է գյուղատնտեսությունն արտադրության ժամանակակից հիմքի վրա փոխադրելու, այն հետևողականորեն ինտենսիվացնելու, գյուղատնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու նպատակին։ Այդ խնդիրների լուծման հիմնական ուղիներն են արտադրության կոմպլեքսային մեքենայացումը, քիմիացումը և ոռոգումը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ գյուղատնտեսության ինտենսիվացումը ենթադրում է տեխնիկական փոփոխություններ հողագործության մեջ, դրա ինտենսիվացում, դաշտամշակության բարձրագույն սիստեմների, արհեստական պարարտանյութերի լայն կիրառում, գործիքների և մեքենաների բարելավում։ Ընդ որում գյուղատնտեսության ինտենսիվացումը նա դիտում էր ոչ թե որպես միջոցների և աշխատանքի մեծացում հողատարածության մեկ միավորի վրա, այլ, առաջին հերթին, որպես հողագործության բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը բարձրացնելու միջոց, տնտեսությունների և աշխատավորների եկամուտը մեծացնելու, պարենամթերքի նկատմամբ բնակչության հարաճուն պահանջմունքները բավարարելու միջոց։

ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը հատուկ ուշադրություն նվիրեց բնակչության պարենամթերքի մատակարարումը բարելավելու պրոբլեմներին։ Նա նշեց, որ բարձրորակ սննդամթերքի անխափան մատակարարման ապահովումը, բավարար քանակությամբ և լայն տեսականիով արտադրելը ամենակարևոր խնդիրներից են, որոնք բխում են աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու կուսակցության կուրսից։ Անհրաժեշտ համարվեց միջոցների ու տեխնիկայի ռացիոնալ օգտագործման միջոցով հասնել այն բանին, որ գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը է՛լ ավելի շոշափելիորեն անդրադառնա բնակչությանը պարենամթերք մատակարարելու գործի բարելավման վրա։

Վերջին մեկուկես տասնամյակում, չնայած նկատելիորեն ավելացել է մսի, կաթի, ձվի և այլ մթերքների արտադրությունը, ժողովրդի բարեկեցության աճի շնորհիվ ավելի է բարձրացել անասնապահական մթերքների նկատմամբ պահանջարկը։ Այսպես, 1966—1978 թվականներին մեր երկրում մսի արտադրությունն ավելացել է 53 տոկոսով, կաթինը՝ 30 տոկոսով, ձվինը՝ 2,2 անգամ և այլն։ Այդ նույն ժամանակաշրջանում բնակչության աճը կազմել է 11 տոկոս, իսկ նրա ռեալ եկամուտները մեկ շնչի հաշվով ավելացել են 83 տոկոսով։ Միևնույն ժամանակ, բնակչության մեկ շնչի հաշվով այդ թվականներին մսի սպառումն ավելացել է 16 կիլոգրամով կամ 39 տոկոսով, կաթինը և կաթնամթերքինը՝ 70 կիլոգրամով կամ 28 տոկոսով, ձվինը՝ 105 հատով կամ 85 տոկոսով։ Այսպիսով, դրական տեղաշարժերն ավելի քան նկատելի են։ Սակայն պետք է նշել, որ վերջին տարիներին դանդաղ է աճում, օրինակ, մսի արտադրությունը։ Այսպես,

1975-ին մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) բոլոր կատեգորիայի տնտեսություններում կազմել է 15 միլիոն տոննա, իսկ 1978 թվականին՝ 15,3 միլիոն տոննա։

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար այժմ շեշտը դրվում է անասնապահության զարգացման ինտենսիվ մեթոդների, այն ժամանակակից բարձրարդյունավետ ճյուղ դարձնելու վրա։ Այդ նպատակով կատարվում է զգալի աշխատանք։ Մեր երկրում կառուցվում են հազարավոր նոր անասնապահական ֆերմաներ և համալիրներ։ Ավելացել է մթերատու անասունների գլխաքանակը. բոլոր կատեգորիայի տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1966 թվականի 93,4 միլիոնից 1979 թվականին հասավ 114,4 միլիոնի, խոզերինը՝ համապատասխանաբար՝ 59,6 միլիոնից՝ 74,7 միլիոնի և այլն։

Անասնապահության վերելքի ծրագրի իրականացման գործում վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1978 թվականին ընդունեցին մի շարք որոշումներ՝ երկրում կերարտադրության կոմպլեքսային զարգացման վերաբերյալ։ Խոսքը մասնավորապես այն մասին է, որ կերարտադրությունը տեղափոխվի ինդուստրիալ հիմքի վրա։ Դրան ավելի մասնագիտացված ճյուղի բնույթ տալու նպատակով խնդիր է դրված ստեղծել կերի արտադրության միջտնտեսային միավորումներ, զարգացնել ագրոարդյունաբերական ինտեգրացիան։ Անասնապահության կերի բազան ամրապնդելու համար 1980 թվականին համակցված կերի մշակումը նախատեսված է հասցնել 80 միլիոն տոննայի՝ 1975 թվականի 45 միլիոնի փոխարեն։

Անասնապահության զարգացման բնագավառում վճռորոշ նշանակություն ունի անասնապահական մթերքների արտադրության գործում արդյունաբերական տեխնոլոգիայի ներդրումը ինչպես նոր համալիրներում, այնպես էլ գործող ֆերմաներում՝ դրանց վերակառուցման միջոցով։

Անասնապահությունը գյուղատնտեսության ամենաաշխատատար ճյուղն է։ Այստեղ աշխատանքային ողջ ծախսումների մոտ երեք քառորդ մասը, ներառյալ կերի կուտակման ծախսերը, բաժին է ընկնում մթերքների արտադրությանը։ Մինչդեռ այս բնագավառում հողագործության համեմատ աշխատանքների մեքենայացումն առայժմ ցածր է։ Օրինակ, եթե հողագործության մեջ 1978 թվականին կարտոֆիլի ցանքը և հացահատիկի բերքահավաքը մեքենայացված էր լիովին, շաքարի ճակնդեղինը՝ 89 տոկոսով, խոտի դիզումը՝ 77 տոկոսով, ապա անասնապահական ֆերմաներում խոշոր եղջերավոր անասունների կերի բաշխումը մեքենայացված էր միայն 36 տոկոսով, ջրելը՝ 85, կիթը՝ 87, գոմաղբի հեռացումը՝ 65 տոկոսով և այլն։ Նկատենք, որ նշված ցուցանիշները մեր հանրապետությունում համեմատաբար ավելի ցածր են։ Մեքենայացված խոշոր ֆերմաների և համալիրների փորձը ցույց է տալիս, որ անասնապահական մթերքների արտադրության արդյունաբերական միջոցները հնարավորություն են ընձեռում կերածախսումները կրճատելու մինչև մեկ քառորդով, մի քանի անգամ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ Այլ կերպ ասած, այդ ճյուղում աշխատապրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն անասնապահության վերելքի, աշխատանքի ծախսումների կրճատման հիմնական օղակներից է։

Գյուղատնտեսության ինտենսիվացման հզոր միջոց է հանքային պարարտանյութերի լայն օգտագործումը։ Մեր երկրում գյուղատնտեսությանը հանքային պարարտանյութերի մատակարարումն անընդհատ աճում է։ Այսպես, 1978 թ. կոլեկտիվ ու պետական տնտեսություններին հանքային պարարտանյութերի (պայմանական միավորի հաշվարկմամբ) մատակարարումը հասավ 79 մլն տոննայի՝ 1965 թվականի 26,9 մլն և 1970 թվականի 45,4 մլն տոննայի փոխարեն։ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումներին համապատասխան, տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է գյուղատնտեսությանը մատակարարել 135—140 մլն տոննա հանքային պարարտանյութ և 7 մլն տոննա կերախառնուրդներ։



Մասնագետների հաշվարկներով հանքային պարարտանյութերի և քիմիա-
կան այլ միջոցների կիրառման շնորհիվ հողագործությունը կտա ոչ պակաս,
քան երկու անգամ ավելի բերք։ Հայտնի է, որ Սովետական Միությունը հան-
քային պարարտանյութերի արտադրության ծավալով աշխարհում գրավում է
առաջին տեղը։ Չնայած դրան, մեր երկրում պարարտանյութերի օգտագործումը
մեկ հեկտար վարելահողի վրա դեռևս ավելի ցածր է, քան տնտեսապես զար-
գացած մի շարք այլ երկրներում։ Այսպես, 1978 թվականին մեկ հեկտար վա-
րելահողի վրա դրանց օգտագործումը ՍՍՀՄ-ում կազմում էր 82,5 կգ, ԱՄՆ-ում՝
85 կգ, Չեխոսլովակիայում՝ 266 կգ, Ֆրանսիայում 280 կգ, ԳԴՀ-ում՝ 272 կգ։

Հանքային պարարտանյութերի արտադրության և դրանց օգտագործման
հետագա ընդլայնումը հնարավորություն կընձեռի զգալիորեն բարձրացնելու
հողի բերրիությունը և մշակվող կուլտուրաների բերքատվությունը։ Այդ գոր-
ծում կարևորագույն նշանակություն ունի նաև հողերի ոռոգումն ու ջրարբիա-
ցումը։ Ըստ հաշվարկումների, ոռոգելի և չորացրած հողերի բերքատվությունը
համապատասխան քանակությամբ հանքային ու օրգանական պարարտա-
նյութերի ճիշտ օգտագործման և ագրոտեխնիկական այլ միջոցառումների
կիրառման պայմաններում բարձրանում է երկու-երեք անգամ։ Այժմ մելիո-
րացված հողերում արտադրվում է երկրի կոլտնտեսությունների և սովխոզների
եկրագործական համախառն արտադրանքի 26 տոկոսը։

Մեր երկրում մելիորացման հսկայական աշխատանքներ են կատարվում։
Դրա շնորհիվ 1978 թվականին ոռոգելի և չորացված հողատարածությունները
հասան 29 միլիոն հեկտարի, որից 25 միլիոնը գյուղատնտեսական հողատես-
քեր են։ ՍՄԿԿ XXV համագումարի և կուսակցության Կենտկոմի 1978 թվականի
հուլիսյան պլենումի որոշումները նախատեսում են ջրատնտեսական աշխա-
տանքի հետագա ընդլայնում։ Բավական է նշել, որ միայն ընթացիկ հնգամյա-
կում պետական կապիտալ ներդրումների հաշվին շահագործման կհանձնվեն
8,7 մլն հեկտար ոռոգելի և ցամաքեցված հողեր (տե՛ս ՍՄԿԿ XXV համագումա-
րի նյութերը, էջ 300)։

Ոռոգման հսկայական աշխատանքներ են կատարվում նաև Հայկական
ՍՍՀ-ում։ Վ. Ի. Լենինը դեռ 1921 թվականին Կովկասի կոմունիստներին ուղղած
նամակում գրել է. «Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և
սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ։ Ոռոգումն ամե-
նից ավելի է պետք և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան...»
(Երկեր, հ. 32, էջ 404)։ Իրականացնելով մեծ առաջնորդի այդ ցուցումը, հան-
րապետության գյուղի աշխատավորները կուսակցության ղեկավարությամբ
արմատական բեկում մտցրեցին այդ գործում։ Արդյունքը եղավ այն, որ Սո-
վետական Հայաստանում ոռոգելի հողատարածությունները 1919 թվականի
60,4 հազար հեկտարից 1978-ին հասան 282,4 հազար հեկտարի կամ ավելա-
ցան 4,7 անգամ։ 1978 թվականին ոռոգելի հողատարածությունները կազմում
էին հանրապետության վարելահողերի շուրջ երկու երրորդը։ Հայկական ՍՍՀ-ում
ոռոգման հետագա զարգացումը նշանակում է մի նոր առաջընթաց քայլ գյու-
ղատնտեսության, հատկապես խաղողագործության, պտղաբուծության, բան-
ջարաբուծության վերելքի բնագավառում։ Այդ կապակցությամբ մեր հանրա-
պետության համար կենսական նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ
Մինիստրների խորհրդի 1977 թվականին ընդունած «Հայկական ՍՍՀ-ում ոռո-
գելի հողատարածության հետագա զարգացման և արդյունավետության բարձ-
րացման միջոցառումների մասին» որոշումը։ Այդ որոշմամբ նախատեսվում է
առաջիկա տարիներին կառուցել 16 ջրամբար, որ հնարավորություն կընձեռի
բարձրացնելու գյուղատնտեսական, հատկապես երկրագործական արտադրու-
թյան արդյունավետությունը, ապահովելու, մասնավորապես, խաղողագործու-
թյան, պտղաբուծության, բանջարաբուծության բերքատվության էական աճ,
ինչպես նաև լուծելու այլ պրոբլեմներ։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, հողագործության
բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացումը նյու-
թական նպաստավոր պայմաններ են ստեղծում ավելացնելու բնակչության

եկամուտները, ավելի լրիվ բավարարելու սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքները։ Այսպես, 1966—1978 թվականներին արդյունաբերության մեջ զբաղված բանվորների և ծառայողների աշխատավարձն աճեց 91 տոկոսով, իսկ գյուղատնտեսության մեջ՝ համարյա կրկնապատկվեց։ 1978 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, կոլտնտեսականները հանրային տնտեսությունից ստացան 2,2 անգամ ավելի եկամուտ։ Ընդ որում ավելի արագ տեմպերով աճեցին նվազ ապահովված ընտանիքների եկամուտները։ Եթե 1965 թվականին բնակչության միայն 4 տոկոսը, ընտանիքի մեկ անդամի հաշվով, ուներ ամսական 100 ռուբլուց բարձր եկամուտ, ապա 1978 թվականին այն հասավ 45 տոկոսի։ Իսկ ընթացիկ տարվա վերջին արդեն մեր երկրի բնակչության մոտ կեսը, ընտանիքի մեկ անդամի հաշվով, կունենա այդքան եկամուտ։

Արտադրության ընդլայնումը, պարենային և ոչ-պարենային ապրանքների որակն ու տեսականին, ինչպես նաև բնակչության եկամուտների աճը մեծապես պայմանավորում են ժողովրդական սպառման մակարդակն ու կառուցվածքը։ Հարկավոր է նշել, որ վերջին մեկուկես տասնամյակում ո՛չ միայն բարձրացել է ժողովրդական սպառման մակարդակը, այլև զգալիորեն փոխվել է դրա կառուցվածքը, բարելավվել է սովետական մարդկանց սննդի օրաբաժինը։ Ըստ որում ներկայումս ավելի ու ավելի հստակորեն է ուրվագծվում գիտականորեն հիմնավորված նորմաներին բնակչության սպառման մակարդակի անընդհատ մոտեցման տենդենցը։ Մեր երկրում, բնակչության մեկ շնչի հաշվով, պարենամթերքով միջին ապահովվածությունը գերազանցում է օրական երեք հազար կալորիա նորման, այսինքն՝ արդեն լուծվել է ըստ կալորիականության սննդամթերքի սպառման պրոբլեմը։ Սակայն անհրաժեշտ քանակի կալորիա կարելի է ստանալ նաև լոկ կարտոֆիլով, հացով, շաքարով սնվելու դեպքում, մինչդեռ մարդու նորմալ կենսագործունեության համար անհրաժեշտ է բավարարել նրա օրգանիզմի բոլոր պահանջները։ Վերջին հետազոտությունների տվյալների համաձայն, արդյունաբերական բանվորների ընտանիքներում սննդարար նյութերի (սպիտակուցներ, ճարպեր, ածխաջրատներ) և կալորիաների փաստական սպառումն էականորեն մոտեցել է գիտական նորմաներին։ Ընդ որում սպիտակուցների և ճարպերի սպառման մեջ անընդհատ աճում է կենդանական ծագում ունեցող սննդարար նյութերի բաժինը։ Սակայն առանձին ընտանիքներում այն դեռևս բարձր չէ, մի բան, որ կախված է միջին և միջինից բարձր եկամուտ ունեցող ընտանիքներում նորմայից ավելի կենդանական յուղի սպառման հետ և նորմայից պակաս այնպիսի մթերքների սպառման հետ, որոնք հարուստ են կենդանական սպիտակուցներով (կաթ, թթվաշոռ) և զգալիորեն էժան են կարագից։ Այստեղ, իհարկե, նույնպես զգացվում են ճաշակը, ավանդույթները և, ըստ երևույթին, ռացիոնալ սնման հիմունքների անբավարար իրազեկությունը։

Ներկայումս կարևորագույն նշանակություն է ստանում ժողովրդական սպառման գիտական կազմակերպումը՝ գիտականորեն հիմնավորված սպառումը, «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ, համակողմանի զարգացումն ապահովելու համար» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 293)։ Սննդի, հագուստի, կոշիկի, սպիտակեղենի ռացիոնալ նորմաները, բնակելի տարածությամբ, կոմունալ հարմարություններով ապահովված լինելը՝ սպառումը ռացիոնալ կազմակերպելու գիտական հիմքն են։ Ժողովրդական սպառման գիտական կազմակերպման հիմնական սկզբունքն է՝ ռացիոնալ կերպով համատեղել սպառման քանակական և որակական կողմերը, քանի որ, օրինակ, սննդամթերքների սպառման քանակական փոփոխությունները չեն կարող արտացոլել նրա որակական փոփոխությունները։

Խոսելով սովետական մարդկանց սննդի օրաբաժնի մասին, անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներին դրանում անշեղորեն մեծանում է ավելի արժեքավոր սննդամթերքի՝ կաթի, ձվի, մսի, ձկան, շաքարի բաժինը, որոնց սպառումը մոտենում է գիտականորեն հիմնավորված նորմաներին, միաժամանակ նվազում է հացի և կարտոֆիլի բաժինը։ Այսպես, եթե 1965 թվականին մսի սպա-



ռումը, բնակչության մեկ շնչի հաշվով, համապատասխան գիտական նորմայի նկատմամբ կազմում էր 50 տոկոս, ապա 1978 թվականին հասավ 70 տոկոսի, կաթինը՝ համապատասխանաբար 58 տոկոսից՝ 74-ի, ձվինը՝ 43-ից՝ 79-ի, ձկանը՝ 72-ից՝ 94-ի, շաքարինը՝ 94 տոկոսից՝ 116 տոկոսի։ Նույն ժամանակաշրջանում չնայած կարտոֆիլի և հացի սպառումը նվազել է, այնուամենայնիվ, 1978 թվականին այն նորմայից համապատասխանաբար ավելի էր 23 և 17 տոկոսային կետով։ Նկատելիորեն ավելացել է մրգի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների սպառումը, որոնք վիտամինների հիմնական աղբյուրն են։

Սովետական մարդու սննդի օրաբաժինը իր կալորիականությամբ, ըստ բժշկագիտության տվյալների, փոքր-ինչ գերազանցում է ֆիզիոլոգիական պահանջները և ամենաբարձրերից մեկն է ամբողջ աշխարհում։ Այսպես, մեր երկրում բնակչության մեկ շնչին, միջին հաշվով, տարեկան հասնում է 70 կիլոգրամով ավելի կաթ, քան ԱՄՆ-ում, ձուկ՝ երկու-երեք անգամ ավելի, քան ԱՄՆ-ում և եվրոպական շատ երկրներում, ավելի շատ բանջարեղեն, քան Անգլիայում և ԳՖՀ-ում (տե՛ս «Плановое хозяйство», № 5, 1978, стр. 21)։

Ժողովրդական բարեկեցության անշեղ աճի պայմաններում, երբ որակական փոփոխություններ են կատարվում սպառման կառուցվածքում, նոր, ավելի բարձր պահանջներ են դրվում գյուղատնտեսության առջև։ Դա պայմանավորված է նաև նրանով, որ մեծանում է պահանջարկը ոչ-պարենային ապրանքների նկատմամբ, որոնց համար հումք է, մասնավորապես, անասնապահության արտադրանքը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան և նոյեմբերյան պլենումներում նշվեց, որ կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունը դեռևս մնում է երկրի պարենային ռեսուրսների համալրման կարևոր աղբյուր։ Չնայած այն բանին, որ բնակչության անձնական օժանդակ տնտեսությունում արտադրվող մթերքների տեսակարար կշիռն ընդհանուր արտադրության մեջ աստիճանաբար պակասում է, այնուամենայնիվ դրանք մեծապես նպաստում են սովետական մարդկանց պահանջմունքների բավարարմանը։ 1978 թվականին բնակչության անձնական օժանդակ տնտեսությանը բաժին էր ընկնում երկրում արտադրված ողջ մսի 29,4 տոկոսը, կաթի՝ 28,9 տոկոսը, ձվի՝ 34,6 տոկոսը, բրդի՝ 19,2 տոկոսը։ Միաժամանակ ուշադրություն է նվիրվում գործարաններում ու ֆաբրիկաներում օժանդակ տնտեսությունների, այսպես կոչված «գյուղատնտեսական արտադրամասերի» ստեղծմանը։ Առանձին ձեռնարկություններում ստեղծվում են խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, թռչունների բուծման ֆերմաներ, իսկ մյուսներում՝ ջերմատներ և այլն։ Եվ պետք է ասել, որ դրանք ինչ-որ չափով նպաստում են տվյալ կոլեկտիվներին մսով, կաթով, բանջարեղենով ապահովելուն։ Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումում, դեռևս թույլ են օգտագործվում ձեռնարկությունների, ինչպես նաև գյուղական բնակչության անհատական տնտեսությունների հնարավորությունները։ Դրանք մոբիլիզացնելու, եղած ռեզերվները լրիվ օգտագործելու համար խնդիր դրվեց պրակտիկ օգնություն ցույց տալ այդ տնտեսություններին, խրախուսել կոլտնտեսականներին ու սովխոզների աշխատողներին՝ տանը անասուն ու թռչուն պահելու համար։ Այժմ հարկավոր է է՛լ ավելի արդյունավետ օգտագործել բոլոր հնարավորությունները՝ բարելավելու բնակչությանը պարենամթերքի, հատկապես մսի մատակարարումը։

Այսպիսով, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, հողագործության և անասնապահության հիմնական աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակի բարձրացումը, գյուղատնտեսական արտադրության մեջ քիմիական գիտության նվաճումների արմատավորումը, հողերի ոռոգման ու չորացման աշխատանքների ծավալումը ամուր բազա են ստեղծում գյուղատնտեսության զարգացման տեմպերի արագացման համար։ Այդ ամենը հնարավորություն կընձեռի հասնելու սննդամթերքի, հագուստի, կո-

չէկի սպառման գիտականորեն հիմնավորված համապատասխան նորմաների մակարդակին, ինչպես նաև բավարարելու գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության մյուս պահանջները: Ընդ որում հարկ կլինի հացահատիկի և մսի արտադրությունն ավելացնել, համեմատաբար, ավելի բարձր տեմպերով, իսկ դա նշանակում է, որ կփոփոխվի նաև գյուղատնտեսական արտադրության կառուցվածքը, կմեծանա անասնապահական արտադրանքի և համապատասխանորեն կնվազի հողագործական արտադրանքի տեսակարար կշիռը:

Կուսակցությունը մշակել է մեր երկրում գյուղատնտեսության հետագա վերելքի երկարաժամկետ ծրագիր: Ըստ այդ ծրագրի, 1981—1985 թվականներին նախատեսվում է մասնավորապես հացահատիկի միջին տարեկան համախառն բերքը հասցնել 238—243 մլն տոննայի, իսկ 1990 թվականին, մեկ մարդու հաշվով, արտադրել մեկ տոննա հացահատիկ: Միաժամանակ նախատեսվում է մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) հաջորդ՝ տասնմեկերորդ հնգամյակի վերջին հասցնել 19,5 մլն տոննայի կամ, մեկ բնակչի հաշվով, մոտ 71 կիլոգրամի՝ 1978 թվականի 59 կիլոգրամի փոխարեն:

Մեծապես կավելանա նաև կաթի, ձվի, բանջարեղենի, մրգի, շաքարի ճակընդեղի, բրդի, բամբակի, կարտոֆիլի և մյուս մթերքների արտադրությունը: Դա հնարավորություն կընձեռի բնակչության մեկ շնչի հաշվով ապահովելու առավել արժեքավոր սննդամթերքների սպառման աճ և արդեն տասնմեկերորդ հնգամյակի վերջին զգալիորեն մոտենալու գիտականորեն հիմնավորված նորմաներին:

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի գլխավոր խնդրի՝ սովետական ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացման համար երկրում ստեղծվում է նյութական ամուր հիմք: Գյուղի աշխատավորների, սովետական բոլոր մարդկանց սոցիալ-քաղաքական ակտիվության հետ միասին դա այն երաշխիքն է, որի շնորհիվ հաջողությամբ կենսագործվում են արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության առաջադրած խնդիրները:

---

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ա. Ա. ԶՈՒՐԱԲՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

Կ*ՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ* արդի փուլը բնորոշվում է հասարակական արտադրության արդյունավետության անշեղ բարձրացմամբ: «Շեշտը արտադրության արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 64): Այդ խնդրի լուծումը ութսունական թվականներին բացառիկ հրամայական է դառնում: Ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման նշանակությունը, որպես ստրատեգիական խնդիր, ո՛չ միայն չի նվազում, այլև էապես մեծանում է: Դա բացատրվում է մի շարք օբյեկտիվ հանգամանքներով: Նախ, նկատի է առնվում, որ ութսունական թվականներին և հետագայում երկրում կրճատվելու են լրացուցիչ աշխատուժ ներգրավելու հնարավորությունները: Այդ մասին է վկայում այն փաստը, որ այժմ հասարակական արտադրության մեջ է ներգրավված գրեթե ողջ աշխատունակ բնակչությունը: Այդ հանգամանքը պարտավորեցնում է առավել մեծ ուշադրություն նվիրել տնտեսական աճի ինտենսիվ գործոններին: Կուսակցությունը պահանջում է, որ մենք պետք է հույսը դնենք ոչ թե լրացուցիչ աշխատուժի ներգրավման, այլ միմիայն աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա: Ձեռքի աշխատանքի բաժնի խիստ կրճատումը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը դառնում են տնտեսական աճի անհրաժեշտ պայմանը:

Ինչպես հայտնի է, մեր երկիրն իր բնական հարստություններով աշխարհում ամենահարուստ երկրներից մեկն է: Սակայն այդ ռեսուրսները ծայր աստիճան անհամաչափ, «անհարմար» են տեղաբաշխված: Բնական ռեսուրսներն ավելի շատ են այնտեղ, ուր ավելի քիչ են մարդիկ: Ստացվում է այնպես, որ բնական ռեսուրսների, բնակչության ու արտադրության տեղաբաշխումը մեծ մասամբ չի համընկնում: Մինչդեռ էներգիայի ու հումքի պահանջներն անընդհատ աճում են, իսկ դրանց արտադրությունն աստիճանաբար թանկանում է, քանի որ մենք ավելի ու ավելի մեծ մասշտաբներով ենք օգտագործում հումքի ու վառելիքի հանքավայրերը՝ նվազ բնակեցված և արդյունաբերական կենտրոններից հեռավոր շրջաններում: Ուստի խնդիրը ռեսուրսների է՛լ ավելի ռացիոնալ օգտագործումն է, արտադրանքի նյութատարության կրճատումը, առավել էժան ու արդյունավետ նյութերի կիրառումը, ինչպես նաև դրանց խնայողաբար ծախսումը:

Սոցիալիստական հասարակությունում բնության պահպանությունն ու նրա ռեսուրսների օգտագործումը կրում են պլանաչափ բնույթ, որոշվում ամբողջ հասարակության շահերով՝ արտադրության սոցիալիստական եղանակի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին համապատասխան: Ընդ որում, հաշվի է առնվում ձեռնարկվող գործողությունների ինչպես մոտակա, այնպես էլ հեռավոր հետևանքները:

Բնական ռեսուրսների վերարտադրության և բնության պահպանության մարզում սոցիալիստական պետության գործունեության մասշտաբների ընդ-

լայնման համեմատ կազմավորվել են բնական պայմանների վերականգնումն ու բարելավումն ապահովող մասնագիտացված ճյուղեր։ Այդ կապակցությամբ կարևոր է ժամանակին և պլանաչափ զարգացնել դրանք։ Այդպիսով, էկոլոգիական ծրագիրն օրգանապես ներգրվում է հասարակական արտադրության պլանաչափորեն իրականացվող պրոցեսի մեջ։ Ուստի շրջակա միջավայրի պահպանության միջոցառումների մշակումն ու իրականացումը, բնական ռեսուրսների վերարտադրությունն ու ռացիոնալ օգտագործումը կարևոր խնդիր է։

Ապագայի ձեռնարկությունը հումքի կոմպլեքսային վերամշակման, անթափոն ձեռնարկություն է։ Մի շարք արտադրություններում արդեն մշակված է այնպիսի տեխնոլոգիա, որն ուտիլացնում է բոլոր թափուկները, և դրանք չեն աղտոտում շրջակա միջավայրը։ Երկրում նոր գործարկվող բոլոր խոշոր ձեռնարկությունները հագեցված են գազամաքրիչ և փոշեմաքրիչ բարձրարդյունավետ սարքավորումներով, շարունակվում է արտադրության և կոմունալ տնտեսության ջերմամատակարարման հետագա կենտրոնացումը։ Կենսաոլորտի պահպանության նպատակով հսկայական միջոցներ են ծախսվում մաքրող բարդ կառուցվածքների շինարարության վրա։ Շատ ձեռնարկություններում այդպիսի շինությունների արժեքն այժմ հասնում է արտադրության հիմնական ֆոնդերի արժեքի $1/3$-ին, իսկ մի շարք դեպքերում՝ մինչև 40—50 տոկոսի։ Շրջակա միջավայրի պահպանության համար ընթացիկ հնգամյակում ծախսվելու է 11 մլրդ ռուբլի։ Այդ գումարը հետագայում կավելանա։ Սակայն տնտեսական պոտենցիալի և աշխատավորների բարեկեցության աճի արագ տեմպերի պայմաններում շրջակա միջավայրի պահպանության համար միջոցներ կարող են ստացվել միայն արտադրության արդյունավետության բարձրացման հաշվին։

Երկրի տնտեսական և սոցիալական զարգացումը պահանջում է տրանսպորտի, կապի, նյութատեխնիկական մատակարարման և ինֆրակառուցվածքային մյուս ոլորտների արագ զարգացում։ Անցյալում այդ ոլորտների մեծ մասին, մասնավորապես ճանապարհային շինարարությանը, պահեստային տնտեսությանը մենք չէինք կարողանում պատշաճ ուշադրություն հատկացնել։ Այժմ արդեն լուրջ միջոցառումներ են իրականացվում այդ նպատակով։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը ոչ միայն ներքին, այլև միջազգային նշանակություն ունի։ ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ողջ սիստեմի հաջողությունները հասարակական արտադրության բոլոր ասպարեզներում և, առաջին հերթին, տնտեսության զարգացման ոլորտում, ակնառու կերպով ցուցադրում են սոցիալիզմի առավելությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումը վերստին շեշտեց արտադրության արդյունավետության և որակի բարձրացման կարևորությունը։

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր պայմանն են աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործումն ու աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացումը։ Այնպիսի պայմաններում, երբ ստեղծվել է գիտաարտադրական վիթխարի պոտենցիալ, հասարակական արտադրության մեջ են ներգրավվել աշխատանքային ու նյութական մեծ ռեսուրսներ, առանձնահատուկ նշանակություն է ստանում դրանց օգտագործման ըստ ամենայնի բարելավումը, աշխատանքի արտադրողականության աճը։

Հասարակական արտադրության մասշտաբների մեծացման հետ մեկտեղ աճում է աշխատանքի արտադրողականության նշանակությունը։ Այսպես, եթե 1940 թ. աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոսի ավելացման դեպքում արդյունաբերական արտադրանքը աճում է 300 մլն ռուբլով, 1950-ին՝ 500 մլն, ապա 1978-ին՝ արդեն 6 մլրդ ռուբլով։ Կարևոր նշանակություն ունեն այն ռեզերվները, որոնք կապված են աշխատաժամանակի առավել լրիվ ու ռացիոնալ օգտագործման հետ։ Երկրի մասշտաբով աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի նշանակության մասին են բազմանշանակ խոսում հետևյալ տվյալները. ներկայումս աշխատաժամանակի մեկ րոպեում արտադրվում է ավելի քան 2 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, ձուլվում է մոտ 300 տոննա պողպատ, արդյունահանվում է ավելի քան 1000



տոննա նավթ, 1522 տոննա քարածուխ, 650 հազար խմ գազ, 171 տոննա հանքային պարարտանյութ և այլն։ Աշխատաժամանակի միայն մեկ րոպեի կորուստը համազոր է 20 հազար բանվորի աշխատանքային օրվա արդյունքի կորուստյան։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գործալքումների և պարապուրդների պատճառով աշխատաժամանակի կորուստները երկրում կազմում են տարեկան տասնյակ միլիոնավոր մարդ-օր։ Միայն արդյունաբերության մեջ այդ պատճառով 1977—1979 թվականներին երկրում տարեկան պակաս էր ստացվել ավելի քան 3 մլրդ ռուբլու գումարի արտադրանք։ Հանրապետությունում համապատասխանաբար՝ հազարավոր մարդ-օր և 45—50 մլն ռուբլու արտադրանք։ 1979 թ. միայն առաջին կիսամյակում հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում աշխատաժամանակի կորուստները կազմել են ավելի քան 67 հազար մարդ-օր, այդ թվում պարապուրդները՝ մոտ 4,5 հազար մարդ-օր, աշխատանքի լքումները՝ 17,6 հազար, ադմինիստրացիաների թույլտվությամբ աշխատանքից բացակայումները՝ 28,6 հազար, ներհերթափոխային պարապուրդները՝ 14 հազար մարդ-օր։ Միայն այդ ճյուղում աշխատաժամանակի կորուստների պատճառով պակաս է արտադրվել շուրջ 6 մլն ռուբլու համախառն արտադրանք։ Վիճակը շատ ավելի վատ է շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում, որտեղ կիսամյակում, միջին հաշվով, յուրաքանչյուր բանվոր ունեցել է աշխատանքային 4,5 օրվա կորուստ։ Կորուստները մեծ են նաև մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության, մթերումների և այլ մինիստրությունների ձեռնարկություններում։

Աշխատաժամանակի տնտեսման բոլոր ռեզերվները կարելի է բաժանել երկու հիմնական խմբի՝ աշխատատարության իջեցում, որը բնութագրում է արտադրանքի միավորի վրա կատարվող աշխատաժամանակի ծախսումների կըրճատման հնարավորությունը և աշխատաժամանակի ֆոնդի ռացիոնալ օգտագործում։

Աշխատաժամանակի տնտեսման համար անհրաժեշտ է պայքարել ո՛չ միայն յուրաքանչյուր աշխատողի աշխատատեղում, այլև կոնստրուկտորական կազմակերպություններում, որովհետև արտադրանքի տեխնոլոգիական մակարդակը զգալիորեն ազդում է դրա աշխատատարության վրա։ Մետաղամշակության և մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով, հատուկ հաստոցներ ստեղծելու ժամանակ ագրեգատավորման սկզբունքի կիրառումը հնարավորություն է ընձեռել իջեցնելու աշխատատարությունը, որի հետևանքով ագրեգատային հաստոցների արժեքը, համանման միաբլոկայինի համեմատությամբ, նվազել է 3—4 անգամ։

Մշակման ժամանակի խնայողության համար կարևոր է նյութի տեսակը։ Այսպես, մետաղի փոխարեն պլաստմասսայից դետալների պատրաստումը Օմսկի «էլեկտրոտոչպրիբոր» գործարանում 1973 թ. տվել է 163 հազար ռուբլու տնտեսական արդյունք և ազատել 48 մարդ։

Աշխատաժամանակի տնտեսման գործում վճռորոշ է օգտագործվող տեխնիկան ու տեխնոլոգիան։ Հատկապես մեծ արդյունք է տալիս մշակության հին տեխնոլոգիան նոր, ավելի արտադրողականով փոխարինելը։

Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում նոր չոր էլեկտրազտիչների տեղակայումը հնարավորություն ընձեռեց հումքի այրման վառարանների արտադրած գազի փոշոտվածությունն իջեցնելու 80—100 անգամ, փակելու մետաղի կորուստների ճանապարհներից մեկը և տարեկան տնտեսելու շուրջ 600 տոննա պղինձ։ Հնգամյակի 3 տարում կոլեկտիվը տնտեսել է 17 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 2.800 տոննա պայմանական վառելիք։ Այժմ մշակվել և ներդրվում է հումքի կոմպլեքսային օգտագործման մի արդյունավետ մեթոդ, որը մեծացնում է հումքից մետաղի, գազերից՝ ծծմբի կորզման գործակիցը։ Կոնվերտորային գազից կկորզվեն գունավոր և հազվագյուտ մետաղները։ Այդ սխեմայի ներդրումը ձեռնարկությանը կտա 500—600 հազար ռուբլու տնտեսական արդյունք, կբացառվի թունավոր նյութերի թափանցումը շրջակա միջավայր։

Երևանի ալյումինի գործարանը տեխնոլոգիական պրոցեսների կատարե-

լագործման միջոցով ո՛չ միայն հասել է հումքի անմնացորդ, առանց թափոնների արտադրության, այլև հնգամյակի անցած 3 տարում տնտեսել է մոտ 24 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա: Խնայողության հաշվին արտադրանքի ինքնարժեքի իջեցման միջոցով տնտեսվել են մոտ մեկ մլն ռուբլու միջոցներ:

Զանգեզուրի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատը նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման միջոցով նույն ժամանակահատվածում լրացուցիչ թողարկել է միլիոնավոր ռուբլիների արտադրանք, արտապլանային շահույթը կազմել է մեկ մլն ռուբլի, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 13,2 տոկոսով, տնտեսվել է 23 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 4235 տոննա մազութ, 309 հազար ռուբլու տարբեր նյութեր:

Արտադրանքի աշխատատարության վրա մեծ ազդեցություն են թողնում աշխատանքի միջոցները՝ հաստոցները, գործիքները, հարմարանքները: Այսպես, թվային ծրագրման կառավարմամբ հաստոցների կիրառումը մեկ հաստոցի հաշվով ժողովրդական տնտեսությանը տալիս է մոտ 15 հազար ռուբլու տընտեսական օգուտ: Ավելի որակյալ կտրիչների կիրառումը իջեցնում է աշխատատարությունը 70—80 տոկոսով: Մասնագիտական հարմարանքների փոխարինումը ունիվերսալներով տարեկան տնտեսում է մոտ մեկ մլրդ ռուբլի:

Աշխատատարության իջեցման հաշվին աշխատաժամանակի տնտեսումը շատ բանով պայմանավորված է աշխատողի հանրակրթական մակարդակով, նրա որակավորումով, արտադրական փորձով: Մոսկովյան ձեռնարկություններում անցկացված սոցիոլոգիական մի շարք հետազոտությունները ցույց են տվել, որ միջնակարգ և մասնագիտական կրթությամբ բանվորները, 6—7-րդ դասարանների կրթություն ունեցող նույնպիսի բանվորների համեմատությամբ, 2 անգամ ավելի արագ են յուրացնում նոր տեխնիկան:

Աշխատաժամանակի ֆոնդի լավագույն օգտագործմամբ ևս կարելի է կատարել տնտեսում: Այստեղ կա երկու խոշոր ռեզերվ՝ օրվա, հերթափոխային և ներհերթափոխային պարապուրդների կրճատում, որոնք առանձին ձեռնարկություններում կազմում են աշխատաժամանակի 15—20 տոկոսը: Ուստի աշխատանքային ռեսուրսների օգտագործման բարելավման կարևոր գործոններից մեկը աշխատաժամանակի կորուստների կրճատումն է:

Աշխատանքային ծախսումների նվազեցումը, տեխնոլոգիայի և գործի կազմակերպման բարելավման հետ մեկտեղ, պահանջում է ապահովել աշխատանքների կոմպլեքսային մեքենայացում և տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացում: Գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի ֆոնդազինվածության ու էլեկտրազինվածության աճի հիման վրա աշխատանքի արտադրողականությունը տասներորդ հնգամյակում նախատեսված է բարձրացնել 27 տոկոսով, իններորդ հնգամյակի 23 տոկոսի փոխարեն: Դրա շնորհիվ ընթացիկ հնգամյակում կտնտեսվի 26 մլն մարդու կենդանի աշխատանքը՝ իններորդ հնգամյակի 20 միլիոնի փոխարեն:

Հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման մյուս պայմանը՝ արտադրաֆոնդերի օգտագործման բարելավումն է: Դա պայմանավորված է հիմնական արտադրաֆոնդերի ծավալի աճի բարձր տեմպերով և արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում դրանց բարոյական մաշվածքի արագացումով: Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման բարելավումը հնարավորություն է ընձեռում մեծացնելու արտադրության ծավալը՝ առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների և առանց կենդանի աշխատանքի լրացուցիչ ծախսումների: Միաժամանակ դա նշանակում է, որ հասարակությունը կարող է այդ միջոցներն օգտագործել արտադրության հետագա կատարելագործման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար: Հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետությունն արտահայտվում է ֆոնդահատույցի ցուցանիշով: Ժամանակակից պայմաններում միայն մեկ տոկոսով ֆոնդահատույցի բարձրացումը թույլ կտա ստանալ ավելի քան 6 մլրդ ռուբլու գումարի լրացուցիչ եկամուտ:

Ֆոնդահատույցի բարձրացման գլխավոր ուղին հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման ինտենսիվացումն է, որի համար ռեզերվներ կան յուրաքանչյուր ձեռնարկությունում:



Արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում սարքավորումների երկարակեցության պրոբլեմը: Ժամանակակից գերամուր նյութերը, նորագույն տեխնոլոգիան հնարավորություն են ընձեռում մի քանի անգամ մեծացնելու մեքենաների ու սարքավորումների ծառայության ժամկետը: Միևնույն ժամանակ գիտության ու տեխնիկայի բուռն զարգացման ազդեցության տակ կրճատվում են հիմնական արտադրաֆոնդերի բարոյական մաշվածքի ժամկետները: Հակասություն է առաջանում սարքավորումների ծառայության ժամկետը զգալիորեն մեծացնելու և այդ սարքավորման բարոյական մաշվածքն արագացնելու հնարավորության միջև: Այդ հակասությունը կարելի է լուծել երկու ճանապարհով: Նախ, անհրաժեշտ է հաշվարկել յուրաքանչյուր տեսակի սարքավորման ծառայության օպտիմալ ժամկետը, ելնելով տեխնիկայի զարգացման այդ ուղղության պրոգնոզներից, այսինքն՝ երկարակեցությունը գիտականորեն պետք է հիմնավորվի: Այդ ժամկետի գերազանցումը կարող է հանգեցնել բարոյական մաշվածքից առաջացած կորուստների և ժողովրդական տնտեսության մասշտաբով տնտեսական արդյունավետության իջեցման: Այնուհետև, հարկավոր է առավել արագ մաշվող մեքենամասերը, դժվար փոխարինելի հանգույցները, գործիքները և այլն պատրաստել գերհուսալի նյութերից: Միայն այդ դեպքում մեքենաների երկարակեցությունը կհանգեցնի ֆոնդահատույցի բարձրացմանը:

Հիմնական արտադրաֆոնդերը երկրի ազգային հարստության գլխավոր բաղկացուցիչ մասն են: Դրանց արտադրողաբար օգտագործումը հասարակական արտադրության արդյունավետության և ժողովրդի բարեկեցության բարձրացման վճռական նախադրյալներից մեկն է: Ընթացիկ հնգամյակում նախատեսվում են կոմպլեքս միջոցառումներ հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման բարելավման նպատակով:

Հասարակական արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման համար էական է նաև թողարկվող արտադրանքի նյութատարության հետագա իջեցումը, հումքի ու նյութերի ծախսման կրճատումը: Հայտնի է, որ մետաղը արդյունաբերության նյութական արժեքների մեջ գրավում է առաջին տեղը:

Մեր երկրում տարեկան արտադրվում է 150 մլն տ պողպատ: Դա համաշխարհային արտադրանքի գրեթե մեկ հինգերորդ մասն է: Սակայն, ցավոք, մեծ են մետաղի կորուստները: Մինչդեռ մեկ մլն տոննա պողպատի ստացման համար հզորությունների մեծացումը պահանջում է մինչև մեկ մլրդ ռուբլի: Մեքենաշինության ու մետաղամշակության մեջ սև մետաղների գլանվածքի թափուկների միայն մեկ տոկոսով նվազեցումը հնարավորություն կընձեռի տարեկան լրացուցիչ թողարկելու 160 հազար մարդատար ավտոմոբիլ «ՎԱԶ—2103» կամ 135 հազար տրակտոր:

Արտադրության մի շարք ճյուղերում արտադրանքի միավորի վրա ծախսվում են զգալիորեն ավելի շատ նյութեր, քան պահանջում է տեխնիկայի զարգացման արդի մակարդակը: Այսպես, մեքենաշինության տեսակարար մետաղատարությունը 25 տոկոսով բարձր է, քան մյուս ճյուղերում, իսկ սպառվող մետաղի 30 տոկոսը դառնում է տաշեղ:

Հումքի ծախսումների գիտականորեն հիմնավորված նորմաների ներդրումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կթույլատրի երկրում տարեկան տնտեսել հազարավոր տոննա թանկարժեք հումք ու նյութեր: Նյութական ծախսումների միայն մեկ տոկոս իջեցումը թույլ է տալիս մեր երկրին լրացուցիչ արտադրել 4 մլրդ ռուբլու արտադրանք:

Ժամանակակից պայմաններում է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում բնական նյութերի փոխարինումը արհեստականներով: Դա բացատրվում է նախ նրանով, որ բնական հումքի արտադրության աճի տեմպերը մի շարք դեպքերում ետ են մնում վերամշակող արդյունաբերության աճի տեմպերից: Այնուհետև, արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում մեծ դեր ունեն նյութերի առանձին հատկությունները, իսկ արհեստական նյութեր կարելի է ստեղծել նախօրոք առաջադրված հատկություններով: Մյուս հանգամանքն այն է, որ արհեստական նյութերը բնականներից ավելի էժան են: Տըն-

# ՀԱՆՃԱՐԻ ԻՐԱԿԱՆ ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ

## (ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանը կյանքի ու ստեղծագործության փառավոր ուղի է անցել: Իր հարուստ ու ինքնատիպ ներկապնակով նա մարմնավորեց հայրենի բնաշխարհը և իր տաղանդի ուժով մարդկությանը ներկայացրեց հարազատ բնօրրանի արևավառ գույները: Նրա ստեղծագործությունն ընթացավ ժամանակի հետ և մնաց երիտասարդ ու շարունակում է ապրել և այսօր:

Կենսատենչությունն ու հայրենասիրությունը Սարյանի անհատականության բնորոշ հատկանիշներն են, որոնք ուղեկցել են նրան իր ողջ կյանքում: Նրա ստեղծագործության մեջ զարմանալիորեն զուգակցված էին իրական մարդն ու գեղանկարիչը: Բնածին խոհականությամբ օժտված նկարիչը սակավախոս էր, բնավորությամբ՝ անդորրատենչ: Անսանձ տարերքն առինքնում էր նրան միայն այն ժամանակ, երբ ձեռքն էր առնում վրձինը:

Վարպետը հմայում էր շրջապատին իր պարզ մարդկային վերաբերմունքով, նուրբ հումորով, անբասիր ու համեստ նկարագրով: Հաճախ, խոսելով կյանքի ու բնության մասին, տարիների փորձով իմաստնացած վարպետն ասել է. «Կյանքը մի կղզի է, մարդիկ դուրս են գալիս ծովից, անցնում կղզու վրայով և նորից մտնում են ծովը: Ճանաչելով բնությունը՝ մենք փառաբանում ենք կյանքի հրաշք գեղեցկությունը»: Նրա ռեալիստական աշխարհընկալումը ձևավորվել է վաղ մանկությունից: «Մարդու միջոցով,— կարդում ենք նրա օրագրում,— բնությունը տեսնում է իրեն, սքանչանում իրենով: Մարդը բնություն է, բնությունը՝ մարդ: Մահ գոյություն չունի»: Սարյանն իրեն միշտ զգացել է բնության մի մասնիկը:

Սարյանն ապրեց իր փառքը: Մարդկանց զարմացնում էր փառքի հանդեպ նրա վերաբերմունքը, տարօրինակ պարզությունը: Նրա համար երջանկությունը չէր սահմանափակվում անձնական ձգտումների բավարարմամբ: Փառքի սարյանական ընկալումը կյանքի «հրաշք գեղեցկությունը» տեսնելն ու վերըստեղծելն էր:

Սարյանի համար այդ «հրաշք գեղեցկության» կենտրոնը հայրենիքն էր, որի հետ նա սերտանում էր, ինչպես ծառը՝ հողին: Վարպետը մեծ քաղաքացի էր: Արվեստի վեհ իդիալներին ծառայելու նրա ձգտումը ներդաշնակված էր հայրենիքի հանդեպ տածած անհուն սիրուն: «Ուսումնառության տարիներից հետո համոզվեցի, որ նկարիչը պետք է լինի հասարակության առաջադեմ անդամը՝ բարոյական իր վսեմ հատկանիշներով. Էժան փառքը պետք է խորթ լինի նրան, նա պետք է նվիրվի ժողովրդին ծառայելու մեծ իդեալին և դառնա նրա սիրտն ու հոգին»: Այդ դավանանքին Սարյանը հավատարիմ եղավ իր ողջ կյանքում:

Սարյանի արվեստը լայն մասսայականություն է վայելում, նրա կտավները բազմիցս ցուցադրվել են երկրի տարբեր քաղաքներում, արտասահմանում: Նրա նկարների վերատպությունները մեծ տպաքանակով տարածվել են արվեստագետների շրջանում: Նկարչի վաստակը բարձր են գնահատել կուսակցությունն ու կառավարությունը: Մարտիրոս Սարյանն արժանացել է սովետական պետության ամենաբարձր կոչումներին— Սովետական Միության ժողովրդական նկարիչ, Սոցիալիստական աշխատանքի հերոս, Լենինյան մրցանակի դափնեկիր, ընտրվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ: Սարյանը Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի և ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ էր:

Ժամանակակիցների համար ողջախոհ, իմաստուն ու կատարյալ մարդու տիպար էր նա: Սարյանի լուսավոր հանճարը սերունդներին թողեց իր ներաշխարհը լիովին դրսևորող արվեստ:

Տասնյոթ տարեկան հասակում Մարտիրոս Սարյանն ընդունվել է նկարչության, քանդակագործության և ճարտարապետության Մոսկ-





վայի ուսումնարանը և շատ շուտ աչքի ընկել բացառիկ ընդունակություններով: Դեռ ուսանողական շրջանի կտավներում դրսևորվեց նրա պրոֆեսիոնալ հասունությունը: Երախտապարտ աշակերտը խոր սեր էր տածում իր մեծ ուսուցիչների՝ Վ. Սերովի ու Կ. Կորովինի նկատմամբ, ոգեշնչվում ռուսական արվեստի ու գրականության խոր հումանիզմով:

1901 թվականին, ուսումնարանը դեռ չավարտած, քսանմեկամյա Սարյանը, որոշ գումար ստանալով ավագ եղբորից, որոշեց ճամփորդել և ամենից առաջ տեսնել իր նախնիների երկիրը: Տպավորություններն այնքան խոր եղան, որ Հայաստան դառնալով նա տեսավ ու հիացավ Արագածի ու Մանթաշի երազ հովիտներով, տեսավ Շիրակն ու Լոռին, Անին ու Ջվարթնոցը, Հաղպատն ու Սանահինը, Երևանն ու Սևանը:

Ի՞նչն էր երիտասարդ Սարյանին կանչում հայրենիք: Իսկական արվեստագետի ուղին հաշատ բանով կանխագծվում է մանկության հիշատակներով: Սարյանը ծնվել է Դոնի ափին, Նոր-Նախիջևանում, իսկ մանկությունն անցկացրել հոր ագարակում: Անիից Ղրիմ, Ղրիմից Դոնի ափերը գաղթած Սարյանների տոհմը շարունակվում էր Սարգիս Սարյանի բազմանդամ ընտանիքով, որն այդտեղ ապրում էր գրեթե նահապետական պարզ, հնավանդ կենցաղով:

Հայրենիքում Սարյանը իրական տեսավ այն ամենը, ինչ երազում էր մանուկ հասակում: Լեռնային կախարդական բնաշխարհը, ճարտարապետական հինավուրց հուշարձանները, արևի կիզիչ լույսի զարմանահրաշ խաղերն անջնջելի տպավորվեցին նրա հոգում: Քաղաքի կյանքին չմերված, խորաթափանց աչքերով իրականությանը նայող, բնության գեղեցկություններով հափշտակվող երիտասարդ նկարչի և հայրենի երկրի հանդիպումից սկըսեց ձևավորվել Սարյանի ստեղծագործական եսը, և բնական մղումով ծնվեցին նրա առաջին ինքնուրույն գործերը՝ Հեքիաթներն ու Երազները:

Սարյանի Երազներում բնությունն այնքան անընդգրկելի է, գերող, որ նկարիչն այն ընկալում է մանկան պես, իբրև երազ-իրականություն: Այստեղ կարելի է տեսնել միակնանի կերպարանք (Գիսաստղ): Նկարչի վկայությամբ դա հենց ինքն է, որ հայտնվում է նկարներում, իբրև տիեզերքի անսահման գե-

ղեցկությունն ընբռնող բանաստեղծ: Ծովափին. սֆինքս նկարում հին եգիպտական սֆինքսը կնոջ կերպարանքով է, որի մարմինը ձուլված է հողին: Նրա կերպարը մարմնավորում է մայր-բնության գաղափարը:

Հիմնականում ջրաներկով կերտված Հեքիաթների առաջին շրջանի (1903—1904) գործերը բանաստեղծական երկխոսություններ են բնության հետ: Գծերի երգող ռիթմն ու գեղանկարչական ձևերի հեքիաթայնությունն առանձնահատուկ հմայքով են պարուրում այդ փոքրածավալ գործերը:

1905—1908 թվականներին արդեն տեմպերայով կատարված Հեքիաթներում նկատելի է նոր բան: Արևի հմայքը, Նռենու մոտ, Հովազներ, Ցոգ. օր. ջրհորի մոտ, Ծովափին. սֆինքս նկարների մեջ, շնորհիվ հակադիր գույների ներդաշնակումների, վառ արտահայտչականություն է ստացել պատկերների գունալուսային ֆոնը: Ասես ներսից ճառագող տաք լույսը, որ հայրենի բնությունից նկարչի ստացած ամենախոր տպավորությունն էր, դիտվում է իբրև այդ գործերի առավել ակներև հատկանիշը: Ժամանակին այն թվացել է անիրական ու թեական: Բայց դրանով իսկ կանխորոշվեց տոթակեզ երկրի երգիչ Սարյանի ինքնությունը: Նրա Հեքիաթն ունի իր ամուր, իրական հողը: Արարատի ստորոտին, Աղբյուրի մոտ, Ախուրյանի ձորում, Ծառերի տակ... իրականության յուրովի իմաստավորված պատկերացումներ են, և դիտողը մտովի տեղափոխվում է կոնկրետ՝ նկարչին հարազատ արևելյան միջավայր:

Բնական ու նվիրական ապրումների արտահայտություն է սարյանական Երազը: Ամենաէականը նկարչի համար կապն էր հայրենի երկրի հետ, երկիր, որի փրկությունն ու երջանիկ ապագան իր ու հարազատ ժողովրդի համար եղել են պայծառ, լուսավոր երազ: Սարյանը համակված էր նաև մայր ժողովրդի կյանքն արտացոլող ռուսական մշակույթի հայրենասիրական ոգով: Ռուսաստանի ապագայի նկատմամբ լավատեսությամբ տոգորված արվեստ, որի արմատները շատ խորն են ու հասել են մինչև Սերով ու Վրուբել:

Սարյանի Երազը մի այլ ազդակ ևս ուներ: Դա այդ տարիների նրա մտերմությունն էր իր մեծ հայրենակիցների՝ բանաստեղծներ Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի, Վ. Տերյանի, ճարտարապետներ Թ. Թորամանյանի, Ալ. Թամանյանի, հայտնի հեղափոխական ու գրականագետ Ալ. Մյասնիկյանի հետ: Վերջինիս հետ Մոսկվայում նկարիչն ապրել է մի հարկի տակ, իսկ 1909-ին իբրև կերպար ընտրելով նրան՝ ստեղծել է Երկրագործը կտավը, որը, ցավոք, չի պահպանվել:

Երիտասարդ Սարյանի Հեքիաթներում դըրսևորվեցին ո՛չ միայն բնատենչությունը, իրականության ժողովրդական, բանաստեղծական ընկալումները, այլև վառ սերը հայրենիքի նկատմամբ:

1907—1909 թվականներին Ս. Ս. Շչուկինի և Ա. Ի. Մորոզովի արդի նկարչության հարուստ հավաքածուներում Սարյանը ծանոթացավ ֆրանսիական ժամանակակից նկարիչներին: «Ֆրանսիացիների հետ ծանոթանալն է՛լ ավելի թևավորեց ինձ և համոզեց, որ իմ ընտրած ճանապարհը ճիշտ է»,— գրել է Սարյանը: Ցարունակելով ջուր խմել սեփական աղբյուրից՝ Սարյանն իրոք հասկացավ ֆրանսիացիներին:

Հեքիաթների հիմքում ընկած՝ աշխարհը որպես հավերժական ու շարժուն մի ամբողջություն ընկալելն ու իրական տպավորություններից վերաիմաստավորված կերպար ստեղծելու գեղագիտական ըմբռնումը Սարյանին մղեց խիստ ուրույն ու համարձակ քայլի: 1909 թվականին ստեղծվեցին Դեպի աղբյուր, Բորենիներ, Տոթ. վազող շունը, Պուրակ Սամբեկում և այլ գործեր: Առաջին ինքնադիմանկարում (երկու տարբերակով) Սարյանն է՝ հայրենի լեռների գրկում, դիտողին ուղղված խոր, արտահայտիչ հայացքով: Այս գործերն ունեն կառուցվածքային երկչափ լուծում: Մեկ հարթության վրա գունային հոխ երանգների և դրանց տոնային ճշգրիտ հարաբերությունների միջոցով նկարիչն ստեղծել է ներքին լույսով ողողված տարածական ծավալներ: Սարյանական գույնը լուսաշաղախ է: Տասնական թվականներին նա գրել է. գույնը հրաշալի կարող է հնչել միայն արևի լույսով: Ուրեմն, գույնի հնչողության ուժգնացումը պայմանավորված է լույսի ուժեղացմամբ. որքան պայծառ լինի լույսը, այնքան գեղեցիկ «կերգի» գույնը:

Եվ ահա արդեն ձևավորված գեղանկարչական լեզվով և, ինչպես ինքն է գրում, համակված «նոր տպավորություններ ընկալելու» ցանկությամբ, Սարյանը գրեթե ամեն տարի ճամփորդում է. 1910-ին Կոստանդնուպոլիս, 1911-ին՝ Եգիպտոս, 1912-ին՝ Հյուսիս-արևմտյան Հայաստան, 1913-ին՝ Պարսկաստան, 1914-ին՝ Հայաստանի հարավ՝ Գողթան աշխարհ: Վերահաս պատերազմը թույլ չտվեց իրականացնել Հնդկաստանն ու Ճապոնիան տեսնելու նկարչի բաղձանքը: Ծնվեցին Սարյանի հռչակավոր գործերը՝ Փողոց. կեսօր, Կոստանդնուպոլսի շները, Նատյուրմորտ. խաղող, Փյունիկյան արմավենի, Հայուհին, Աբուլ սարը և անցնող ուղտեր, Բանաստեղծ Ծատուրյանի դիմանկարը, Փոքր քաղաքի ծաղիկները և այլն:

Այս գործերը վկայում են, որ թեմատիկայի առումով հարստացել է Սարյանի ստեղծագործությունը, ընդլայնվել տեսադաշտը: Սակայն ձևաբանական խնդիրների լուծման և, հատկապես, նրա արվեստի գաղափարայնության առումով մի քանի ամիս տևած այդ շրջագայությունները, անշուշտ, չէին կարող տալ ավելին, քան այն, ինչ հիմնականում ձեռք էր բերվել դեռ նախորդ տարիներին: Այսպիսով, համոզիչ չէ այն արվեստաբանների կարծիքը, թե Սարյանը Սարյան դարձավ միայն Արևելքի երկրներ ճամփորդելուց հետո:

Սարյանին, իբրև նկարչի, ամենուր հետաքրքրողը կյանքի խրոնիկան չէր, այլ հարազատ ժողովրդի պատմական երկու զանգվածային բեկորները՝ Արևմտյան Հայաստանը և Արևելյան Հայաստանը: Ու նա գնում է դեպի բնությունը, մարդը, ուր ռամիկը հողն էր հերկում: Նա նկարեց ծառ ու ծաղիկ, լեռներ ու ձորեր, ուղտեր ու շներ, կժերով աղբյուր շտապող գեղջկուհիներ, արևելյան տիպեր, որոնց վաղեմի գիտակն ու մտերիմն էր նա:

Իբրև նորություն Սարյանի կտավներում երևացին եգիպտական դիմակներ ու արևելյան մշակույթի առարկաներ: Ցատ վաղ է հուզել Սարյանին հին Եգիպտոսի արվեստն իր հոխ բազմազանությամբ: Նեղոսի հինավուրց ժողովրդի արվեստի մասին նա հիացական հոդված է գրել դեռ 1907-ին: Երկու տարի անց, նրա գործերից մեկում կնոջ կերպարանքով հայտնվում է սֆինքսը: Պարսկուհին նկարում (1910) արևելյան կնոջ դիմագծերի գեղեցկությունը նկարիչն ամփոփել է դիմակի ձևով: Դիմակների խստապարզ ձևերն արձագանքում են Սարյանի որոնումներին: Արվեստի այդ նմուշները, ասես, դարերի խորքից նայում են մեզ, ընկալվում որպես անբացատրելիի, հավերժականի կենդանի խորհրդանիշ:

Անապատի հեռավոր անկյունում, երկնքի անհուն կապույտի մեջ, լայնաթև իր տերևներն է ազատորեն պարզել փյունիկյան արմավենին: Արևի կիզիչ լույսն է իշխում ամենուր՝ մարդկանց, կենդանիների, տնակների վրա: Լույսի ու գույնի զմայլելի զուգերգը կյանքի, ուրախության ու կարոտի երջանիկ ու անմոռաց զգացումներ է պարգևում դիտողին: Սարյանական կտավների գունային համակարգը բնավ չի կրկնվում: Գիշերային բնանկարում չորս հիմնական գույների նրբին հարաբերակցումներով արտահայտված է արևելյան լուսնկա գիշերների բանաստեղծական լռությունը: Առավոտ. կանաչ լեռներ բնանկարը, ասես, բնության կուսականությանը նվիրված ձոն լինի:

Կիսատոններից զերծ մաքուր գույնը Սարյանի տասնական թվականների գործերում ստացավ բացարձակ արժույթ: «Գույնն ամեն ինչ է, իսկական հրաշք, գույնը թող արտահայտի մեր կյանքի բովանդակությունը»,— բազմիցս նշել է արվեստագետը: Իր հայտնագործած և ինքնատիպ գեղանկարչական լեզվով Սարյանը հավիտենություն պատգամող լեգենդներ հյուսեց: Նրա կտավներից սփռվող լույսը կյանքի երջանկության ներբողն է, մարդկության ապագայի նկատմամբ խոր, աներեր հավատը. այդ լույսով Սարյանը գտավ իր արվեստի հրապույրի ուժը:

Սարյանը կարողացավ տեսնել, վերլուծել ու յուրացնել այն նոր ու առողջ միտումները, որ հատուկ էին ռուսական ու ֆրանսիական նըկարչությանը: Ստեղծագործական ճանապարհին, սակայն, նա միշտ հետևեց ներքին ձայնին, հավատարիմ մնաց հարավցու իր բուռն խառնվածքին: Նրա արվեստը սնող գլխավոր ակունքը մայր երկիրն էր, հարազատ ժողովրդի կուլտուրան:

Սարյանի տասնական թվականների ստեղծագործության մեջ միջնադարյան հայկական արվեստի էական հատկանիշներից յուրովի կիրառված են կոմպոզիցիոն երկտարածական լուծումն ու բաց, հնչեղ գույների հակադիր հարաբերակցումները: Նրա կտավների հստակ ու զուսպ կառուցվածքը կարելի է համեմատել ճարտարապետական կոթողների պարզ ու լուսավոր ծավալների հավասարակշռության հետ, արվեստ, որն այնպես բարձր էր գնահատում երիտասարդ Սարյանը: (Ուշագրավ է այն պարագան, որ դեռ 1906 թվականից Սարյանը հանդես է գալիս հայ ճարտարապետությանը նվիրված հոդվածներով («Նոր կյանք» շաբաթաթերթ № 13—15, Նոր-Նախիջևան): Իսկ 1912-ին Թիֆլիսում և Մոսկվայում հայ մտավորականների հավաքներ է կազմակերպում, հրատապ հարց դարձնելով հին հուշարձանները փրկելու, դրանց հանդեպ կատարվող «վանդալիզմը» կանխելու նպատակով):

Սարյանական կտավներն ամենից առաջ աչքի են ընկնում իրենց կոլորիտի բազմազանությամբ, որի յուրակերպ նախօրինակներին կարելի է հանդիպել ժողովրդական բանահյուսության՝ բնությանը նվիրված երգերի պոետական ընկալումների հարուստ երևակայությամբ ստեղծված արհեստավորական արվեստի բազում նմուշներում: Նկարչի կոմպոզիցիաները, ինչպիսի սյուժե էլ դրանք ներկայացնեն, լինի արևելյան փողոց, ծաղկեփունջ, նույնիսկ մըրգեր ու անապատի տեսարան, միշտ ձգվում են վարից վեր: Պատկերվող առարկաները, տները, լեռները հաճախ հատում են կտավի վերին

եզրը, երկնքին թողնելով կտավի տարածքի վրա գունային ձևերի ու գծերի ազատ, աշխույժ ռիթմին ներդաշնակ տարածություն: Սարյանը տեսանելին միշտ վեհացնում է: Բնությունն այսպես է «կարդացել» նա Հայաստանում:

Սարյանի ստեղծագործության բովանդակությունը բխում է ժողովրդի՝ դարերում կոփված ամենաբնորոշ հատկանիշից՝ անսասան կենսասիրությունից: Իբրև նկարչի նրա հայտնությունը պայմանավորված է դարասկզբի հայ մշակույթի ծաղկմամբ: XIX դարի կեսին և XX դարի սկզբում ազգային զարթոնքի գիտակցում ապրող և մշակույթի սեփական ավանդներ ունեցող ժողովրդի համար այդ վերելքը պատմական անխուսափելի երևույթ էր, երևույթ, որին խթանեցին ժամանակի սոցիալ-քաղաքական շարժումներն ու մանավորապես 1905 թվականի ռուսական հեղափոխությունը:

Այդ իսկ շրջանում հավաքագրվեց և ժողովրդին վերադարձվեց մեր դյուցազնավեպը: Բուռն զարգացան պոեզիան ու թատրոնը: Թ. Թորամանյանը գիտականորեն հիմնավորեց հայկական ճարտարապետության ինքնատիպ դեմքը, Կոմիտասը՝ ազգային երաժշտությունը: Սարյանը, իբրև ներկայացուցիչն արվեստագետների այս համաստեղության, հաստատեց գեղանկարչության ազգային մտածելակերպը:

Եվրոպական դպրոցներում ուսած հայ նկարիչներից առաջինն էր նա, որին վիճակվեց հայտնաբերել նկարչության ազգային ոճի վերակերտման ուղիները: Դա նշանակալի առաքելություն էր, որ մի քանի տարի անց բերելու էր նրան նկարչական վերածնված մի դպրոցի առաջնորդը դառնալու բարձր պատիվը:

Բայց չմոռանանք, որ մինչև Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը, Հայաստանը դարեր ի վեր պետականություն չուներ: Հայ մտավորականները քաղաքական ծանր, պայմանների պատճառով ապրում էին մայր երկրից դուրս: Երիտասարդ Սարյանն էլ որտե՞ղ կարող էր հանդես գալ ու ճանաչում գտնել, եթե ոչ իրեն հարազատ ռուսական արվեստի մթնոլորտում: Հայրենիքից քաղած նրա թարմ ու ինքնատիպ պատկերներն ամեն տարի Մոսկվա բերելու, ցուցադրելու պարագան դիտվում է նաև իբրև երախտագիտության ամենագեղեցիկ արտահայտություն: Թերևս Ռուսաստանի մոտիկությունն Արևելքին ամենից ճիշտ պատասխանն է այն հարցի, թե ինչու ռուսական արվեստի առաջադեմ ներկայացուցիչները, որոնք ըստ արժանվույն գնահատել էին Վան-Գոգին, Գոգենին ու Մատիսին, զգացին նաև Սարյանի արվեստի ողջ արժույթը: Նրա գործերը ձեռք բերեց Տրետյակովյան պատկերասրահը: Եվ զարմանալի չէ, որ նրանք հայ նկարչին համարեցին և իրենցը. աղփիսին է իսկական արվեստի համամարդկային ուժը:



1906 թվականի իր մի հոդվածում, որ թարգմանել և հրապարակել է Ալ. Մյասնիկյանը, նկարիչը գրել է. «...նույնիսկ ճնշված ու հալածված և իբրև քաղաքացի ապրելու իրավունքից զուրկ ժողովրդի հոգու խորքերում առկայծում է կրակը, որ կարող է ազատության ժամանակ բոցավառվել և լուսավորել ամեն ինչ»:

Մարտիրոս Սարյանը երեսունչորս տարեկան էր, երբ պայթեց համաշխարհային առաջին պատերազմը, որին հետևեց հայ ժողովրդի ծանրագույն ողբերգությունը՝ ցեղասպանությունը: Անհագնացավ իսպառ բնաջնջվելու վտանգը: Համաժողովրդական ճակատամարտը Սարդարապատում կասեցրեց արյունախում ոսոխի առաջխաղացումը: Երկրի վիճակը ծանր էր: Այս իրադրության մեջ տրամագծորեն փոխվեց պատմության ընթացքը: Սովետական նորաստեղծ իշխանությունն օգնության ձեռք մեկնեց հայ ժողովրդին: 1920 թվականին Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր: Ժողովուրդը ո՛չ միայն փրկվեց կործանումից, այլև ստացավ դարերով երազած իր պետականությունը:

1915—20 թթ. Սարյանի ստեղծագործական կյանքը (այդ շրջանում նա շատ քիչ է նկարել) զուգորդվեց հայրենանվեր գործունեությամբ: Այլ կերպ չէր էլ կարող լինել: Ամեն իսկական արվեստագետ մարմնավորում է իր ժողովրդի լավագույն հատկությունները, ապրում նրա հոգսերով. 1915-ին Սարյանն Էջմիածին է գալիս՝ օգնելու հայ գաղթականներին: Այս մասին նա շատ հուզիչ էջեր է թողել Գրառումներ իմ կյանքից գրքում: 1916-ին Թիֆլիսում ակտիվ մասնակցում է առաջին Հայ նկարիչների միության ստեղծմանը, նույն թվականին ձևավորում է Վ. Բրյուսովի հայկական պոեզիայի անթոլոգիան, 1919-ին Ռոստովում հիմնում է հայկական թանգարան: Հարազատ ժողովրդի մի մասը, դեռ արցունքը չսրբած, արկանում էր նոր կյանքի հիմքերը. սկսվել էր հայրենաշինության նվիրական գործը: Սարյանը եկավ և ընդմիշտ ձուլվեց հարազատ ժողովրդին: Հայրենիքի այգաբացը դարձավ նկարչի արվեստի արշալույսը:

Առաջին տարիներին Սարյանն ակտիվ մասնակցեց մշակութային մի շարք օջախների՝ պատմության ու կերպարվեստի թանգարանի, գեղարվեստական ուսումնարանի, հնությունների պահպանության կոմիտեի հիմնադրմանը: Հասարակական գործունեությանը զուգընթաց նա ստեղծում է տասնյակ փոքրաչափ բնանկարներ ու գրաֆիկական գործեր: Քիչ հայտնի այս գործերով Սարյանը բացում է Նոր Հայաստանի դիտարկման իր պատուհանը:

1923-ից ծնվում են նկարչի հանրահռչակ կտավները, որոնք մեկ տարի հետո մեծ հաջողությամբ ցուցադրվում են Վենետիկի XIV միջազգային պատկերահանդեսում. Լեռներ, Հայաստան, Կեսօրյա անդորր, Իմ բակը, Ե. Չարենցի դիմանկարը, Արագած, Երևան և այլն: Նույն տարիներին նա ստեղծեց Հայկական Սոցիալիստական Խորհրդային Հանրապետության գերբն ու առաջին պետական թատրոնի վարագույրը:

Ժամանակի ոգով են թելադրված այս գործերի սինթետիկ, մոնումենտալ բնույթն ու էպիկական շունչը: Օդի, լույսի և գույների կախարդիչ ներդաշնակության ու հավիտենական անդորրի մեջ մարմնացած է նորոգ հայրենիքի հավաքական կերպարը: Կյանքը, գեղեցիկը սիրող նկարչի իղձերն իրականացել են, նրա ստեղծագործությունը համակվել է նորոգ հայրենիքի վերակառուցման բուռն պաթոսով: Բազում պատերազմներ տեսած Եվրոպան համաշխարհային առաջին պատերազմից հետո անսպասելի ցնցում ապրեց, որը նկարչության մեջ գտավ անմիջական արձագանք, ստացավ հիվանդագին արտահայտություններ: Նույն ժամանակին պատկանող Մարտիրոս Սարյանը տեսավ և՛ պատերազմի սարսափը, և՛ մայր ժողովրդի աննախադեպ ողբերգությունը, սակայն կյանքի հանդեպ նրա հավատը չսասանվեց: Նրա գործերը, որոնցով նշանավորվեցին սովետական գեղանկարչության առաջին քայլերը, մարդասիրական գաղափարների փայլուն ներդրում եղան համաշխարհային արվեստում: Քսանական թվականների իր գործերով Սարյանը հաստատեց մեր ինքնատիպ ազգային նկարչական դպրոցի գոյավորումը:

Իր նոր գործերում նկարիչը պահպանեց հակադիր գույների ներդաշնակմամբ լուսային հզոր ու տաք մթնոլորտ ստեղծելու իր սկզբունքը: Գաղափարագեղագիտական նոր խնդիրներ լուծելու հետ մեկտեղ տեմպերային նկարչությունից նա անցավ յուղաներկին, ընդատակ ունենալով շեշտել իրականության նյութական-առարկայական հատկանիշները: Այս առթիվ, ինչպես և իր նոր շրջանի ստեղծագործության մասին նկարիչն ասել է. «Իմ ձրգտումն է դաժան արհավիրքներով անցած, բազմիցս պղծված, բայց արյամբ ու հավատքով սրբագործված այս փոքր հողակտորը կրքով սրբագործված այս փոքր հողակտորը կըտավի վրա ցույց տալ իր շոշափելի գոյությամբ: Արագածի փեշը կազմող այս հողակտորը ես դիտում եմ իբրև հույսի աղբյուր, մեր հին ժողովրդի փայփայած իդեալների հենարան, իբրև նրան եռանդ ու կորով հաղորդող մայր: Ուզում եմ ցույց տալ աշխարհին, որ մեր այս լեռնոտ երկիրը փաստացի կա, իր կրծքի վրա պահում է, ճիշտ է մի բուռ, բայց աշխատասեր ու տաղանդավոր ժողովուրդ, իր ներոսական պատմությունը խորհրդանշող հոգևոր բազմադարյա արժույթներով»:

Հայրենիքը՝ Սովետական Հայաստանը, դառնում է Սարյանի գլխավոր ու անփոփոխ թեման: Այնպես նա ձուլված էր իր երկրին, որ 1926 թվականի աշնանից մեկուկես տարի ապրելով Փարիզում, պանդուխտ բանաստեղծի նման շարունակում է երգել հայրենի բնաշխարհի գեղեցկությունը: 1928-ի հունվարին, «Ժիրար» պատկերասրահում ցուցադրված նրա գործերի մեծ մասը վերադարձի ճանապարհին այրվեց՝ նավի վրա բռնկած հրդեհից: Նկարիչը կարողացավ հաղթահարել անձնական այս ծանր վիշտը:

Սարյանի արվեստը հետագա տասնամյակներին համընթաց քայլեց ժամանակի, իր երկրի կյանքի հետ: Գույնի մեծ բանաստեղծն ստեղծում է հայրենի երկիրն ու մարդուն գովերգող մի վիթխարի պատկերասրահ, թատերական հիանալի ձևավորումներ, դեկորատիվ պանոներ, գրաֆիկական գործեր, նկարազարդված գրքեր ու հեքիաթներ:

Հայրենական պատերազմի տարիներին, կյանքի յոթերորդ տասնամյակն ապրող նկարչին երբեք չլքեց հաղթանակի հավատը: Բազմաթիվ դիմանկարների ու բնանկարների կողքին նա ստեղծեց Երեք հասակ ինքնադիմանկարը: Կտավի աջ կողմում նկարիչը ներկայացրել է իրեն երիտասարդ, հեռուն հառած հայացքով: Ձախ մասում՝ միջին տարիքում, ստեղծածի վստահ գիտակցությամբ: Կենտրոնում՝ ծերունազարդ, խորախորհուրդ աչքերը դիտողին հառած: Երեքի հետևում բացվող բնությունը նկարչի գահն է, ասես: Արարատի գագաթով ավարտվող այս լուսաշող սարալանջը, որի կենտրոնում պատկերված է Սարյանի երևանյան տունը, նրա ողջ կյանքի իմաստն է խորհրդանշում: Դա հայրենիքն է:

Սարյանը ծաղիկներ է նկարել միշտ՝ կյանքի թե՛ տխուր, թե՛ ուրախ պահերին: Բնության զարթոնքն ավետող դաշտային ծաղիկները մշտական տեղ ունեն նրա ստեղծագործության մեջ: Ծաղիկ նկարել Սարյանի համար նշանակել է ինքնաստուգման ու ինքնահաստատման պահեր ապրել: Թերևս դա է պատճառը, որ Սարյանի Ծաղիկները առավել, քան մյուս գործերը, ընկալվում են իբրև բնության հետ զրույցի անմիջական արտահայտություն, իբրև նրա փայփայած նվիրական իդեալի՝ բարու հաղթանակի մարմնացում:

1945-ի մայիսին 9-ին, մեծ հաղթանակի առթիվ ժողովուրդը շնորհավորելու է գալիս Վար-

պետին: Արվեստանոցը լցվում է ծաղիկներով: Հիշելով դեռ բանակում գտնվող իր որդուն, Սարյանը մտահղանում և ստեղծում է իր ամենանշանակալի Ծաղիկները՝ ձոնելով «Հայրենական պատերազմին մասնակցած հայ մարտիկներին»: Ինչպես միշտ, այստեղ ևս ակնբախ է նկարչին համակած՝ անմահությամբ մահվանը հաղթելու անսահման հավատը:

Ուշիմ դիտողը Սարյանի պատկերներում կհայտաբերի նրա արվեստի թերևս ամենակարևոր արժանիքը: Նկարչի կտավները դիտողին համակում են կենսասիրությամբ ու լավատեսությամբ: Դրանք զերծ են անձնական նեղ ապրումներից ու տրամադրություններից: Սարյանի միաձուլումը սոցիալիստական հայրենիքի կենսահորդ քնաշխարհին այնքան սերտ է, այնքան ներդաշնակ, որ նա վեր է բարձրանում ինքն իրենից, արտահայտում անանձնական զգացումներ՝ նման երկրագործի արարման:

Նայեցե՛ք նրա դիմանկարներին՝ Ե. Չարենց, Ալ. Թամանյան, Թ. Թորամանյան, Կ. Իգումնով, Ռ. Սիմոնով, Ա. Ախմատովա, Մ. Լոզինսկի, Գ. Ուլանովա, Ս. Մալխասյան, Հր. Աճառյան... Սարյանի պատկերած մարդկանց կարելի է տեսնել իրենց խառնվածքի բնորոշ կողմերով, կենտրոնացած, խորասույզ: Մենք հաղորդակից ենք դառնում նրա դիմանկարչական արվեստի ինքնօրինակ ուժին և, որ կարևորն է, ընկալում մարդուն իբրև բնության ամբողջական ու անբաժանելի մասնիկ: Նայեցե՛ք նրա բնանկարներին, նատյուրմորտներին...

Ահա և Սարյանի ամենավերջին կտավները՝ Երկիրը, անավարտ Հեքիաթն ու տասնյակ հրաշալի գծանկարներ: Սարյանի ինքնատիպ, արևային գունաշխարհն արտահայտում է մարդկային կյանքի բովանդակ էությունը:

Սարյանն ապրեց երջանիկ ստեղծագործական կյանքով: Անցյալի ոչ մի հայ գեղանկարիչ այսքա՛ն իրական չտեսավ իր անմահությունը— համաժողովրդական երախտապարտ սերն ու ճանաչումը:

Ծ. Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ



# ԹԱՏՐՈՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ

Խ. Ա. ԱՎԱԳՅԱՆ
Արվեստագիտության թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ կոմունիստական գիտակցության ձևավորման ասպարեզում մեր կուսակցության ծրագրային նպատակներից մեկն էլ երկրում հոգևոր կուլտուրայի իսկական հարստության ստեղծումն է, մասնավորապես, գրականության և արվեստի հետագա զարգացման միջոցով: Այդ խնդրին հատուկ կարևորություն է տրված ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ, որտեղ կուսակցական կազմակերպությունների, կուլտուրայի մարմինների ուշադրությունն է հրավիրվում հատկապես «այնպիսի նոր նշանակալից ստեղծագործությունների կերտման վրա, որոնք տաղանդավոր կերպով պատկերեն սովետական ժողովրդի հերոսական մեծագործությունները, սոցիալիստական հասարակության զարգացման պրոբլեմները, ջախջախիչ հարվածներ հասցնեն մեր գաղափարական հակառակորդներին»:

Կուսակցության այս պահանջն ամբողջովին վերաբերում է նաև թատերական արվեստի բնագավառին, մի արվեստ, որը մարդկանց մտքերի ու զգացմունքների վրա անմիջական ու խոր ներգործությամբ, ինչպես միշտ, այսօր ևս կարևոր դեր ու կշիռ ունի աշխատավորների գաղափարաքաղաքական ու հոգեբարոյական դաստիարակության, նրանց քաղաքացիական ու մարդկային նկարագրի, ներաշխարհի ու հոգեբանության, գեղագիտական ճաշակի ձևավորման գործում:

Սովետահայ թատրոնի հարուստ ավանդույթները, դրա մեծատաղանդ վարպետների անուններն ու վաստակը լայնորեն հայտնի են: Բայց այսօր դրանց մասին չէ, որ ուզում ենք խոսել: ՀԿԿ Կենտկոմի 1979 թ. հունիսյան պլենումում իր զեկուցման մեջ ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը հակիրճ և ստույգ բնորոշեց մեր թատրոնի ներկա վիճակն ու խնդիրները. «Վերջին ժամանակներս հանրապետության թատրոններում հայրենական և համաշխարհային դասական երկերի, սովետական հեղինակների պիեսների հիման վրա ստեղծվել են մի շարք նոր հետաքրքրական ներկայացումներ: Ինչպես ցույց է տալիս փորձը, հանդիսատեսների շրջանում առանձնապես ջերմ արձագանք են գտնում ժամանակակից կյանքի մեծ ու հրատապ պրոբլեմները շոշափող ներկայացումները: Բայց, ցավոք, մեր թատրոններում այդպիսի բեմադրություններ առայժմ քիչ են: Փոխանակ լրջորեն զբաղվելու ժամանակակից բարձր գաղափարական խաղացանկ ձևավորելու հարցերով, որոշ թատրոններ տարվում են ոչ պահանջկոտ ճաշակի համար նկատի առնված զվարճացուցիչ պիեսներով»:

Ժամանակակից գաղափարագեղարվեստական պատշաճ խաղացանկ ձևավորելուն, ի թիվս այլ պատճառների, խանգարում են նաև թատերական աշխարհում տարածված որոշ թյուր պատկերացումներ: Ոմանք հակված են հակադրելու մեր թատրոնի երեկն ու այսօրը՝ պնդելով, թե «առաջ ամեն ինչ լավ էր, իսկ այսօր՝ վատ», «մեր մեծերին փոխարինողներ չկան» և այլն, և այլն:

Այո՛, մեր բեմերում այսօր արդեն չենք տեսնում ու լսում Վահրամ Փափազյանին, Արուս Ոսկանյանին, Հրաչյա Ներսիսյանին, Հասմիկին, Վաղարշ Վաղարշյանին, Ավետ Ավետիսյանին, Օլգա Գուլազյանին, Թադևոս Սարյանին, Գուրգեն Ջանիբեկյանին և այլոց, արդեն թատրոնի պատմության գիրկն են անցել Լևոն Քալանթարի, Արմեն Գուլակյանի, Վարդան Աճեմյանի, Արշակ Բուրջալյանի շատ ու շատ բեմադրություններ: Բայց սովետահայ թատրոնը կա, ապրում է և բնականոն զարգանում: Մեծերին փոխարինելու են եկել նրանց աշակերտները, որոնց ստեղծագործական ջանքերը բարի պտուղներ են տալիս և ըստ արժանվույն գնահատվում:

Սա կարևոր է շեշտել մանավանդ հիմա, երբ մեր թատրոնի առջև ծառացել են իրենց բարդությամբ ու նշանակալիությամբ թերևս աննախադեպ խնդիրներ, որոնց լուծման համար անհրաժեշտ են ո՛չ միայն պրոֆեսիոնալ մեծ վարպետություն, այլև ակտիվ քաղաքացիություն և աներեր հավատ սեփական ուժերի ու հնարավորությունների նկատմամբ:

Բեմի նշանավոր վարպետների հիշատակը պահելու լավագույն եղանակը, անշուշտ, նրանց գործի, ավանդույթների ստեղծագործական յուրացումն ու զարգացումը կարող է լինել: Ընդ որում, նկատի պիտի առնել ոչ թե կամ ոչ այնքան նրանց նախընտրած հնարները, խաղակերպը կամ բեմական ձեռագիրը, յուրահատկությունները, որքան արվեստում ժողովրդի կյանքով, ուրախություններով ու հոգսերով ապրելու նրանց կամքն ու մղումը, անմնացորդ նվիրումն իրենց գործին, արվեստին: Եվ այդ դեպքում արդեն բեմի մեծերի փառքն ու համբավը ոչ թե կկաշկանդեն, այլ իրապես կոգևորեն, առաջ կմղեն մեր թատրոնի այսօրվա գործիչներին, կտրամադրեն նրանց ոչ թե կրկնելու, նմանակելու կամ «վերականգնելու» արդեն եղածը, այլ հետամուտ լինելու կյանքի ու արվեստի առաջադրած նոր խնդիրների իրագործմանը՝ դրանց մեջ տեսնելով թատրոնի զարգացման ճշմարիտ հեռանկարը:

Եթե փորձենք ընդհանուր գծերով բնորոշել մեր թատերական արվեստի զարգացման արդի փուլը, ապա նախ անհրաժեշտ կլինի նշել, որ այսօր թատրոնին ներկայացվող պահանջներն իրենց պատմական, սոցիալական և գեղարվեստական մասշտաբներով ու կարևորությամբ, թերևս, շատ ավելի մեծ են, բարդ ու բազմաբնույթ: Դրանք նաև թատերական արվեստի զարգացման վճռական պայմաններն են ու խթանները, որ հստակ ձևակերպված են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում և կուսակցական մի շարք այլ փաստաթղթերում: Գրականության ու արվեստի բոլոր ճյուղերի հետ թատրոնը ևս իր գլխավոր խնդիրը պետք է համարի յուրահատուկ միջոցներով արտացոլել մեր կյանքի մեծ ճշմարտությունը, իրականության բազմապիսի երևույթները, հրատապ հարցերը, պայքարել մեր մարդկանց կոմունիստական հատկանիշների՝ սովետական հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի, հումանիզմի, քաղաքացիական և աշխատանքային ակտիվության, սկզբունքայնության, հոգեբարոյական անաղարտության, ազնվության, լավատեսության ոգով, ինչպես և մեր սկզբունքներին խորթ երևույթների, մեր գաղափարախոսական հակառակորդների մեքենայությունների, զրպարտչական պրոպագանդայի հանդեպ անհանդուրժողականությամբ համակելու համար:

Դրա շնորհիվ իսկ թատրոնն այսօր կարող է առավել արդյունավետությամբ կատարել ժողովրդի գեղագիտական դաստիարակության, կուլտուրական պահանջմունքների բավարարման իր առաքելությունը, դառնալ հոգեկան անհրաժեշտություն:

Այս ամենն ամբողջանում է ամենից առաջ թատերական բեմահարթակում հայտնվող դրական հերոսի կերպարում: Հերոս, որ ունի որոշակի կոմունիստական իդեալ, իր մեջ խտացնում է մեր կյանքի էական գծերը և, միաժամանակ, մեզ ներկայանում իբրև մեր կողքին, մեր մեջ ապրող իրական անձնավորություն՝ իր լույս ու ստվերով, մարդկային արժանիքներով ու թուլություններով, հաճախ՝ բարդ ներաշխարհով ու ներքին պայքարով:

Իրավամբ մերժելով երբեմնի «իդեալական հերոսի» սխեման, ոմանք, սակայն, խոսում են «իդեալ ունեցող» հերոսի մասին, հարկ չհամարելով պարզաբանել, թե ինչպիսի իդեալի մասին է խոսքը: Եվ սա պատահական չէ, այլ յուրա-



տեսակ արձագանքը այն մտայնության, որն այսօրվա բարդ աշխարհում կա-
մենում է ընդգծել որևէ իդեալ ունենալու անհրաժեշտությունն ինքնին: Բայց
այդ նույն բարդ աշխարհը, հակասություններով լի մեր ժամանակը ավելի ու
ավելի հրամայաբար պահանջում և անհրաժեշտ են դարձնում որոշակի կեն-
սադիրքորոշումը, որոշակի իդեալը, գաղափարախոսական պայքարում սեփա-
կան տեղի ճշգրտումը: Այս առումով տեղին չէ «իդեալ ունեցող հերոս» բնորո-
շումը, առավել ևս, երբ խոսքը մեր գրականության ու արվեստի դրական հե-
րոսի մասին է, որի քաղաքացիական ու մարդկային հասունության, լիարժեք
անհատականության հիմնական չափանիշը հենց կոմունիստական իդեալ ունե-
նալն է:
Ինչ խոսք, անհատականությունն ինքնին արդեն արժանիք է, մանավանդ՝
արվեստում: Միայն թե չպետք է մոռանալ, որ ճշմարիտ անհատականությունը
արվեստում: Միայն թե չպետք է մոռանալ, որ ճշմարիտ անհատականությունը
սոցիալ-պատմական և դասակարգային որոշակի հարաբերությունների արտա-
հայտությունն է, դրանց կոնկրետ դրսևորումը տվյալ անձի, կերպարի մեջ: Ու
երբ անտեսվում է այդ պարագան, արվեստագետն անկարող է լինում իմաստա-
վորել, հետևաբար և հավաստի դարձնել իր հերոսի վարքագիծը: Անհատակա-
նությունն այս դեպքում կորցնում է ամենաթանկ յուրահատկությունը՝ անկրկ-
նելիությունը, քանի որ սոսկ այլոց, ուրիշ կերպարների նման չլինելու փաստը
դեռ գեղարվեստական արժանիք չէ, այլ ավելի շուտ սոսկ արտառոց մտա-
հնարանք:
Հաճախ խոսվում է նաև, այսպես կոչված, ինքնարտահայտման մասին,
որը ոմանք հակված են դիտելու լոկ իբրև արվեստագետի նեղ անձնական ըն-
կալումների, նրա ես-ի ինքնակամ ու ինքնանպատակ արտահայտություն:
Մինչդեռ թատրոնում ռեժիսորի, դերասանի ճշմարիտ ինքնարտահայտումը հե-
տաքրքրական և իմաստալի է դառնում միայն այն դեպքում, երբ ներդաշնակում
է ողջ անսամբլի ստեղծագործական մղումներին ու արտահայտում կենսական-
գեղարվեստական որոշակի, համընդհանուր գաղափարը: Այո՛, մի բան է ար-
վեստագետի վառ անհատականության, աշխարհի, մարդու նրա սեփական ըն-
կալման յուրօրինակությունը և բոլորովին այլ՝ «ես այսպես եմ տեսնում» իմաս-
տազուրկ կամակորությունը, որի արմատը, ի վերջո, նույնն է՝ հասարակական
որոշակի իդեալի և դրանով պայմանավորված ճշմարիտ անհատականության
բացակայությունը:
Բարձր գնահատելով արվեստագետի տաղանդը, համարելով այն ազգային
հարստություն, որը հարկ է խրախուսել, կուսակցությունը միաժամանակ նշում
է գրականության և արվեստի միտումների սթափ վերլուծության անհրաժեշ-
տությունը: Պահպանել ու խրախուսել տաղանդը, նշանակում է ամենից առաջ
հոգալ նրա զարգացման ճշմարիտ ուղղության, արվեստագետի կոմունիստա-
կան աշխարհայացքի և ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման, նրա ստեղ-
ծագործական ակտիվությունը խթանելու մասին. իսկ այդ կարելի է անել նրա
աշխատանքը գնահատելիս բարյացակամությունն ու ուշադրությունը սկզբուն-
քայնության և պահանջկոտության հետ զուգակցելու միջոցով միայն: Շարու-
նակ աճել ու լիովին բացահայտվել կարող է այն տաղանդը, որ միտում է ար-
վեստի ճշմարիտ միջոցներով զարգացած սոցիալիզմի հրատապ հարցերի, մեր
իրականության հիմնական պրոբլեմների գեղարվեստական հետազոտության,
կոմունիզմ կառուցող նոր մարդու կերպարի, նրա բնավորության, հույզերի
համակողմանի ու ճշմարիտ վերարտադրության:
Դրական լիարյուն հերոսի՝ այսօր ակտիվորեն գործող և վաղվա հոգսերով
ապրող մարդու դրամատուրգիական-բեմական որոնումներին վերջին տարի-
ներս ձեռնամուխ են եղել մի շարք արձակագիրներ, հրապարակախոսներ ու
բանաստեղծներ: Սովետահայ թատերագիրներ Գ. Տեր-Գրիգորյանի, Ալ. Արաքս-
մանյանի, Զ. Դարյանի, Ժ. Հարությունյանի, Ա. Պապայանի, Մ. Շաթիրյանի,
Ա. Շահինյանի, Գր. Ջալիկյանի, Արտ. Բաբայանի անունների կողքին թատ-
րոնների, նաև հեռուստատեսային ու ռադիոթատրոնների երկացանկում հայտ-
նըվել են Ս. Կապուտիկյանի, Պ. Զեյթունցյանի, Վ. Պետրոսյանի, Ս. Հարու-
թյունյանի, Արտ. Քալանթարյանի, Հ. Վարդանյանի, Զ. Բալայանի, Գ. Սար-
գըսյանի, Զ. Խալափյանի անունները: Ուրախալի իրողություն է այս. մեր

ման օջախի 22 անդրանիկ շրջանավարտները 1934 թ. հունվարին մեկնեցին աշխատանքի: Նրանց հետագա կարճատև աշխատանքը կուսակցության Կենտկոմին ու դպրոցի պրոֆեսորադասախոսական կազմին համոզեց, որ, չնայած որոշակի հաջողություններին, դեռևս լուրջ անելիքներ կան ուսումնական ծրագրերը արտադրական պրակտիկային մերձեցնելու, լեզուների դասավանդումը բարելավելու, ինչպես նաև ուսումնաարտադրական մի շարք այլ հարցեր լուծելու ասպարեզում: Կուսակցության Կենտկոմը կարողացավ կարճ ժամանակում վերակառուցել դպրոցի գործունեությունը և բարձրացնել ուսանողության հետ տարվող աշխատանքի մակարդակը: Այդ գործում լուրջ ավանդ ունեն հմուտ մանկավարժ-դասախոսներ Խորեն Երիցյանը, Լևոն Սեմյոնովը, Գևորգ Գրձելյանը, Գուրգեն Վանանդեցին, Սիմակը, Նշան Ալավերդյանը, Ռուբեն Գաբրիելյանը և այլք, որոնց հետ միասին տարբեր տարիներ դպրոցում դասախոսել և կադրերի պատրաստման նպատակով լուրջ աշխատանք են կատարել Տաճատ Ալեքսանյանը, Աբգար Հովհաննիսյանը, Ադո Ադոյանը, Գեղամ Աղաջանյանը, Համո Բունիաթյանը, Հայկազ Մարջանյանը, Հայկազ Ասլանյանը, Վահան Ռշտունին, Արարատ Մարուխյանը, Հենրի Գաբրիելյանը և շատ ուրիշներ: Նրանց ստեղծած դասագրքերով կրթվեց ու դաստիարակվեց ուսանողների մի քանի սերունդ:

Դպրոցում դասավանդվող առարկաները բազմաթիվ ու բազմազան էին: Սկզբում դրանք խմբավորվում էին ըստ սեկցիաների կամ առարկայական հանձնաժողովների: Շուրջ 25 առարկա, որ վարում էին 40-ից ավելի դասախոսներ, միավորվում էր մի շարք հանձնաժողովներում: Դասախոսական աշխատանքներին օգնում էին ավելի քան 10 ասիստենտ-լաբորանտներ: Այսպես սկսվեց առաջին ուսումնական տարին: Ժամանակի ընթացքում փոփոխվել են առարկաների քանակը, դասախոսների թիվը, առարկայական հանձնաժողովները վերածվել են ամբիոնների, ըստ առարկաների խմբերի ստեղծվել են լաբորատորիաներ ու կաբինետներ:

Դասավանդման մեթոդը եղել է լեկցիոն: Այնուհետև ուսանողները հնարավորություն են ստացել ինքնապատրաստման ժամերին ինքնուրույն ուսումնասիրել լսարանում անցած նյութը, մշակել գրականությունը: Դպրոցի համար կարևոր նշանակություն ունեցավ բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատությունների աշխատանքի որակի բարելավման ու նրանց պատրաստած կադրերի գիտական որակավորման բարձրացման վերաբերյալ ՍՍՀՄ Կենտգործկոմի 1932 թ. սեպտեմբերի 20-ի որոշումը: «Ուսուցման մեթոդները,— նշվում էր այդ որոշման մեջ,— պետք է ապահովեն ուսանողի անհատական և ինքնուրույն աշխատանքը, ինչպես նաև բարձրացնեն պրոֆեսորադասախոսական կազմի դերը»: Դատապարտելով ուսուցման բրիգադային-լաբորատոր մեթոդը՝ Կենտգործկոմը գտնում էր, որ այն սքողում է դասատուի ղեկավար դերը և խրախուսում ունկնդիրների շրջանում տարածված դիմազրկության երևույթները: Այդ մեթոդի կիրառման դեպքում անհամեմատ դժվար է հսկել յուրաքանչյուր ուսանողի, որի հետևանքով վատ սովորողներն ու առաջադիմողները ընդհանուր դիմազուրկ բրիգադներում լուծվում են, դժվարանում է նրանց տարբերելը: Ծանրության կենտրոնն ուսման մեջ պետք է փոխադրվի ուսանողի ինքնուրույն աշխատանքի վրա: Նա էլ ոչ թե բրիգադի միջոցով (որտեղ առանձին սովորողների հաջողությունները հավասարվում են), այլ անձամբ պետք է պատասխանատու լինի դասախոսի առջև (տե՛ս «Պրավդա», № 261):

1933 թ. հունվարին ստեղծվում են դպրոցի առաջին յոթ ամբիոնները, որոնցում և կենտրոնացվում են ուսումնաարտադրական և գիտահետազոտական աշխատանքների կազմակերպումն ու ղեկավարումը: Փետրվարին նրանց թիվն ավելանում է ևս երեքով: Հետագայում ստեղծվում են նոր ամբիոններ: Քաղաքատնտեսության, կուսակցության պատմության և լենինիզմի, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, բնագիտության, ՍՍՀՄ ժողպատմության, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման, երկրագործության, կոլտնտեսային շինարարության, արտադրության և աշխատանքի կազմակերպման, այգեգործության ու բանջարաբուծության, գյուղատնտեսության մեքենայացման և մյուս ամբիոնները վերակազմավորվել, միացել ու անջատվել են, փոխելով իրենց անվանումները: Ամբիոնների վերակազմավորումը, անվանափոխումն ու դրանց վարիչների և դասախոսների փոփոխությունները արվել են դպրոցին առաջադրվող պահանջներին համապատասխան: Նրանց ղեկավարների կազմում առաջադրված էին մարդիկ, որոնք ունակ էին իրենց ուսերին կրելու ղեկավար կադրերի պատրաստման դարբնոցի հեղինակավոր պրոֆեսորադասախոսական կոլեկտիվի ուսումնամանկավարժական ու գիտահետազոտական աշխատանքների ծանրությունը:

Իրենց գործունեության առաջին շրջանում ուսամբիոնները լուծում էին գերազանցապես ուսումնամեթոդական հարցեր: Հետագայում աշխուժություն ապրեց նաև դպրոցի գիտական միտքը, երբ միաժամանակ բարելավվեցին



դպրոցի ուսումնաարտադրական բազան և հնարավորությունները: Ամբիոններն աստիճանաբար ուժեղացնում էին իրենց կապը գյուղատնտեսական արտադրության հետ և խորացնում էին իրենց գիտահետազոտական գործունեությունը: Անասնապահության ամբիոնը, օրինակ, ուսումնասիրում էր լավագույն կոլտնտեսությունների ու սովխոզների փորձը և ըստ այդմ վերանայում գիտահետազոտական աշխատանքների թեմատիկան և ուսումնական ծրագրերը: Ուսանողությունն ավելի շատ հնարավորություն է ստանում ինքնուրույն ուսումնասիրել նյութը և իր մտահղացումները կիրառել գործնական աշխատանքում: Դպրոցի և արտադրության աշխատողների միջոցով, դասախոսների և ուսանողների ակտիվ միջամտությամբ մի քանի կոլտնտեսություններում ու սովխոզներում վերանայվել են կաթնատվության աճի, կերի, աշխատանքի կազմակերպման և ուրիշ մինչ այդ գոյություն ունեցող մի շարք նորմաներ: Համատեղ աշխատանքի նպատակն է եղել՝ օգտագործել ուսանողների (դասախոսների գլխավորությամբ) ուժերը կաթնատվության և մատղաշների աճի ցուցանիշները բարձրացնելու գործում[1]:

Դպրոցում ծավալված գիտահետազոտական աշխատանքների արդյունքներն ամփոփվել են նրա գիտական խորհրդի կողմից հրատարակվող գիտական ժողովածուներում և այլ պարբերականներում:

Ուսանողների արտադրական պրակտիկան, որպես կանոն, անցկացվել է դպրոցին կցված սովխոզներում և նրա մերձքաղաքային տնտեսությունում, ինչպես նաև մի շարք խոշոր կոլտնտեսություններում, սովխոզներում: Կազմակերպվել են նաև էքսկուրսիաներ՝ հանրապետության սահմաններից դուրս: Ուսանողությունը պրակտիկան անցկացնում էր բրիգադներով, որոնք 30—45 օրով մեկնում էին կուսշրջկոմներ, աշխատում որպես կուսշրջկոմի կամ շրջգործկոմի հրահանգիչներ, շրջանային պրոպագանդիստներ, կոլտնտեսությունների բրիգադավարներ, նախագահի տեղակալներ և այլն:

Պրակտիկան կազմակերպվում էր ԲԿԳԴ ծրագրով, որն իր մեջ ներառում էր կուսակցական կազմակերպական-քաղդաստիարակչական, սովետական աշխատանքի և կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության ու աշխատանքի կազմակերպման հարցերը, որոնք խիստ բազմազան էին: Ղամարլուի (Արտաշատի) շրջանի Այգեստան գյուղ մեկնած ուսանողական բրիգադի անդամներից մեկը, օրինակ, կատարել է կոլտնտեսության նախագահի տեղակալի, իսկ երեքը՝ բրիգադավարների պարտականություն: ՀամԿ(բ)Կ XVIII համագումարի որոշումները մասսայականացնելուց բացի, բրիգադի անդամները կատարել են ուսումնական ծրագրով նախատեսված պրոցեսները՝ այգեէտ, այգեփոր, վար, ջրում, սրսկում: Նրանք ղեկավարել են իրենց կազմակերպած քաղխմբակի պարապմունքները, լույս ընծայել իլյիչովկա, օգնել ակումբի աշխատանքներին և այլն[1]:

Ուռուտ գյուղ մեկնած ուսանողները, պրակտիկայից վերադառնալուց հետո, դպրոցի ղեկավարությանը ներկայացրել են մանրամասն զեկուցագիր, որտեղ, իրենց կատարած աշխատանքից բացի, նշվում են նաև կոլտնտեսությունում տեղ գտած թերությունները: Ուսանողները դժգոհում են, որ այնտեղ չկա անասունների և ոչխարների խմբավորում, վատ է նրանց խնամքը, շռայլվում են աշխօրերը, մեքենաները թափված են բաց երկնքի տակ և այլն: Ստանալով ամբիոնների կոնկրետ խորհուրդները՝ ուսանողները միջամտում են գործին և ուժերի ներածին չափով օգնում թերությունների վերացմանը[2]: Համանման օժանդակություն են ցույց տվել Վորոնցովկա, Սարատովկա, Փոքր Շահրիար, Մեծ Շահրիար, Ղուրդուղուլի, Աշտարակ, Ախտա, Կուրթան և հանրապետության այլ գյուղերի ու շրջանների կոլտնտեսություններ ու սովխոզներ պրակտիկայի մեկնած ուսանողները:

Դպրոցը մշտապես գտնվում էր կուսակցական ղեկավար մարմինների ուշադրության կենտրոնում: Դպրոցի պատմությունը ցույց է տալիս, որ այնտեղ հաջողությամբ զուգակցվել են լսարանային և արտալսարանային աշխատանքները, մասնագիտական ուսուցումը տարվել է ուսանողների համակողմանի զարգացման հարցերի լուծման հետ միասին: Այդ տեսակետից բնորոշ է ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի 1934 թ. դեկտեմբերի 19-ի որոշումը ուսանողների նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին: Այնտեղ սուր կերպով դրվում է հանրակացարանում ապրող ուսանողների կուլտուրական ժամանցի և ինքնագործունեության բարելավման անհրաժեշտությունը: Ուսանողներն ընդգրկված էին գեղարվեստական ինքնագործունեության մի շարք խմբակներում: Աչքի էին ընկնում գրական, սպորտային, հրաձգային, տրակտորիստների պատրաստման և այլ խմբակներ: Չբավարարվելով ռեկտորատին, կուսակցական ու հասարակական կազմակերպություններին

1 Տե՛ս ՄԼԻ ՀՄՍ, ֆ. 226, ց. 1, գ. 35, թթ. 4—5:

1 Տե՛ս ՄԼԻ ՀՄՍ, ֆ. 226, ց. 20, գ. 1, թ. 4:

2 Տե՛ս նույն տեղը, թ. 5:

տրված հանձնարարություններով՝ Կենտկոմը Երքաղսովետի գործկոմի, հանրապետության հողագործության և առևտրի ժողկոմների ուշադրությունը նույնպես հրավիրում է այդ գործում եղած թերությունները կարճ ժամկետում վերացնելու վրա:

Բարձրագույն կոմունիստական գյուղատնտեսական դպրոցները փակելու մասին Համ-Կ(բ)Կ Կենտկոմի որոշմանը համապատասխան՝ իր գործունեությունն է դադարեցնում նաև Հայաստանի ԲԿԳԴ-ն:

Դպրոցի վերջին շրջանավարտները (103 մարդ) 1937 թ. հոկտեմբերի սկզբներին մեկնեցին կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատանքի: Լուծվեց նաև պրոֆեսորադասախոսական կազմին այլ բուհերում օգտագործելու հարցը: Իր գոյության վեց տարիների ընթացքում (1932—1937) դպրոցը տվել է 729 շրջանավարտ, որոնցից շատերն զգալի ներդրում ունեցան հանրապետության ժողովրդական տնտեսության վերելքի ապահովման գործում: ԲԿԳԴ-ին կից կարճատև դասընթացներ անցան հանրապետության հազարավոր կուսակցական-սովետական ակտիվիստներ: Դպրոցի շրջանավարտների ու դասընթացներ անցած ակտիվիստների մեջ կային նաև մեծ թվով ռուսներ, ադրբեջանցիներ և հանրապետությունում բնակություն հաստատած ազգային փոքրամասնությունների շատ ներկայացուցիչներ: Վաստակած հանգստի անցնելու իրավունքն այսօր էլ դպրոցի սաների զգալի մասին չի կտրել ժողովրդական տընտեսության տարբեր ճյուղերում աշխատելուց:

Բարձրագույն կոմունիստական գյուղատնտեսական դպրոցի պատմությունը Հայաստանի կոմունիստական կուսակցության փառապանծ պատմության անխզելի մասն է կազմում: Այդ ուսումնական հաստատության, նրա կազմակերպիչների դասախոսների և ուսանողության լավագույն ավանդույթներով հետագայում հիմնըվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից կուսակցական դպրոցը, որը երկար տարիների (1946—1959 թթ.) իր գործունեությամբ խոշոր դեր կատարեց հանրապետության կուսակցական կադրերի աճեցման ասպարեզում:

Հասարակական կյանքի զարգացմանը զուգընթաց՝ կադրերի ուսուցման ձևերի փոփոխումն ու կատարելագործումը հաստատում են ուսուցման պրոցեսի ստեղծագործական բընույթը, սոցիալիստական շինարարության առաջադրած խնդիրների և կուսակցական-կազմակերպական աշխատանքի, ուսման ու դաստիարակության գործի մշտապես համաձայնեցման անհրաժեշտությունը: Դեռևս ՌԿ(բ)Կ X համագումարը կուսակցական շինարարության հարցերի մասին իր որոշման մեջ նշել է. «...հեղափոխական մարքսիզմի կուսակցությունը ժխտում է կուսակցական կազմակերպության այնպիսի ձևի, ինչպես և նրա աշխատանքի այնպիսի մեթոդների որոնումները, որոնք բացարձակապես ճիշտ և պիտանի լինեն հեղափոխական պրոցեսի բոլոր աստիճանների համար: Ընդհակառակը, կազմակերպության ձևը և աշխատանքի մեթոդները ամբողջովին որոշվում են տվյալ կոնկրետ պատմական իրադրության առանձնահատկություններով և այն խնդիրներով, որոնք անմիջականորեն բխում են այդ իրադրությունից»[1]:

Լենինյան այս դրույթն իր ստեղծագործական զարգացումը գտավ ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում: Համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Իհարկե, թե՛ ինքը՝ կուսակցությունը և թե նրա գործունեության բնույթը ինչ-որ քարացած բաներ չեն: Կուսակցության աշխատանքը յուրաքանչյուր փուլում հարստանում է նոր բովանդակությամբ: Ուստի բնական է, որ այն նոր խնդիրները, որ կառաջադրի XXV համագումարը, կպահանջեն այսուհետ ևս գիտական հիման վրա կատարելագործել կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 104):

Անդրադառնալով կադրերի պատրաստման ու վերապատրաստման հարցին և անհրաժեշտ համարելով այդ ամբողջ աշխատանքի կատարելագործումը՝ Լ. Ի. Բրեժնևն առաջ է քաշում արդեն այսօր գործի լծված ղեկավար կուսակցական կադրերի, հատկապես գաղափարական ճակատի աշխատողների գաղափարատեսական ու գործարարության մակարդակը բարձրացնելու և կենտրոնական կուսակցական ուսումնական հաստատությունների գործունեությունը բարելավելու խնդիրը: Ահա հենց այդ կապակցությամբ էլ համագումարը առաջ քաշեց կուսակցական կադրերի պատրաստման անցյալի փորձը հիշելու, նրա դասերը պատշաճորեն օգտագործելու հարցը: Դա մեծապես նպաստում է կուսակցական-սովետական ղեկավար աշխատողների ներկա և գալիք սերունդներին անցյալի լավագույն ավանդույթներով դաստիարակելու, ուսուցման փորձված մեթոդները պահպանելու և զարգացնելու գործին: ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց, որ «Կուսակցությունը բարձր է գնահատում կադրերին, հավատում է նրանց ստեղծագործական հնարավորություններին, հոգատարությամբ աճեցնում ու դաստիարակում է նրանց: Կասկած չկա, որ մեր կադրերը, գիտակցելով իրենց պատասխանատվությունը ժողովրդի հանդեպ, այսուհետ ևս բոլոր ուժերը, գիտելիքները ու փորձը կնվիրաբերեն կոմունիզմի գործին» (Նույն տեղը, էջ 107):

[1] *ՍՄԿԿ բանաձևերում, որոշումներում... մ. 1-ին, էջ 657:*

**Ց. Ս. ԳԵՎՈՐԳՅԱՆ**



# ՀԱՅ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՀԱԶՈՂՎԱԾ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ

**ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ** պատմությունը հայագիտության ամենաերիտասարդ ճյուղերից է, որն իր գոյության չորս տասնամյակում, ապրելով զարգացման որոշակի էվոլյուցիա, հասել է զգալի արդյունքների: Ձևավորվելով 30-ական թվականներին որպես իմացության առանձին բնագավառ, հետագայում՝ 50—60-ական թվականներին այն ապրում է իր մենագրական փուլը, երբ հայ ժողովրդի անցյալի պատմության հայտնի էջերը ո՛չ միայն խոր և համակողմանի հետազոտվում, այլև համալրըվում էին նորահայտ դեմքերով: Այդ պրոցեսն այսօր էլ շարունակվում է և սկսած 70-ական թվականներից թևակոխել է իր պրոբլեմային հետազոտության շրջանը, որն իր հերթին նըպաստում է հայագիտության նոր բնագավառների ձևավորմանը: Այդ զարգացմանն ու տարբերակմանն է նվիրված պրոֆեսոր Գ. Տ. Խըրլոպյանի ինքնատիպ աշխատությունը[1]: Հեղինակը սույն գրքում քննության է առել հայ հասարակական մտքի զարգացման պատմության հելլենիստական ու վաղ ավատատիրական սոցիալական իմաստասիրության շրջանը և վեր հանել դրա զարգացման օրինաչափությունները: Գրախոսվող աշխատության մեջ այս առումով լուսաբանվել են ո՛չ միայն հասարակագիտական ընդհանուր բնույթի խնդիրներ— սոցիալական իրականության կառուցվածք և փոփոխություն, պետություն, ապստամբություն, պատերազմ, խաղաղություն, ընտանիք, մարդու արժույթային կողմնորոշում և այլն, այլև մարդաբանական, իրավագիտական, հոգեբանական, գեղագիտական հարցեր:

Գրախոսվող աշխատությունը միակն է, որում առաջին անգամ փորձ է արվում սիստեմատիկորեն շարադրելու հին Հայաստանի սոցիալական մտքի պատմությունը: Հեղինակը, հիմնավորելով իմացության այդ բնագավառի ուսումնասիրության անհրաժեշտությունը, աշխատել է վեր հանել դրա դերն ու նշանակությունը հայ ժողովրդի հոգևոր արժույթներն ուսումնասիրող այլ գիտությունների համար: Այդ մասին մենագրության մեջ ասված է. «Ընդունելով հանդերձ, որ իմացության յուրաքանչյուր ճյուղի պատմություն ինքնատիպորեն արդիական է, մենք գտնում ենք, որ հատուկ հետաքրքրություն է ներկայացնում հասարակական իրականության ճանաչման և ղեկավարման ընթացքի պատմությունը, որը պետք է ցույց տա, թե ինչպես են գաղափարական ձև ստացել մարդկային հարաբերությունները ու նրանց միջոցով դրսևորվող բոլոր այլ հարաբերությունները, ինչպես են այդ գաղափարները յուրացվել դասակարգերի, մասսաների կողմից և նյութականացել նրանց գործողությունների միջոցով: Այդ պատմությունը ցույց է տալիս ո՛չ միայն մարդու և բնության, մարդու և հասարակության ու մարդու ինքն իր հետ ունեցած հարաբերության պատմական զարգացումը, այլ նաև այն, թե ինչպես յուրաքանչյուր երևույթ մարդկային իրականության մեջ ձեռք է բերում այնպիսի սոցիալական հատկություններ, որ առանց դրանք հաշվի առնելու անհնար է լավագույնս լուծել այդ երևույթի հետագա զարգացման հետ կապված հարցերը» (էջ 4—5):

Աշխատության մեջ առաջադրված հարցերը հետևողականորեն լուսաբանվում են մարքսլենինյան մեթոդաբանության դիրքերից, որը և ապահովում է շարադրանքի պատշաճ գիտական մակարդակը: Այստեղ հանգամանորեն քննարկված են V—IX դարերի հայ մտածողներ Մեսրոպ Մաշտոցի, Կորյունի, Ագաթանգեղոսի, Եզնիկ Կողբացու, Եղիշեի, Փավստոս Բուզանդի, Ղազար Փարպեցու, Մովսես Խորենացու, Հովհան Մանդակունեցու, Դավիթ Հարքացու, Դավիթ Քերականի, Դավիթ Անհաղթի, Անանիա Շիրակացու, Հովհան Օձնեցու, Հովհան Մայրագոմեցու, Սեբեոսի, Ղևոնդի, Մովսես Կաղանկատվացու և այլ մատենագիրների, մշակութային ու քաղաքական գործիչների

[1] *Գ. Տ. Խրլոպյան, Հայ սոցիալական իմաստասիրության պատմություն, ԵՊՀ հրատ., 1978, 439 էջ:*

տպագիր ու ձեռագիր աշխատությունները: Հեղինակն օգտագործել է նաև հայկական դիցաբանության, ժողովրդական բանահյուսության, ինչպես նաև այդ ժամանակաշրջանի հակաֆեոդալական ժողովրդական շարժման վերաբերյալ արտասահմանյան մասնագետների ուսումնասիրությունները:

Գիրքն ունի մեծ անվանացանկ, որը մենագրության գիտականության վկայություններից է: Այն բաղկացած է առաջաբանից և ութ գլուխներից, որոնցում արծարծված են թեմային վերաբերող զանազան հարցեր: Դրանցից մեկը հայ սոցիալական փիլիսոփայության ծագման ու ձևավորման խնդիրն է, որն, ըստ հեղինակի, ընդգրկում է բավականին երկար ժամանակ՝ մ. թ. ա. IV դարից մինչև մ. թ. IV դարը: Արտադրահարաբերությունների առումով դա այն ժամանակաշրջանն է, երբ հայ իրականության մեջ անցում է կատարվում համայնական կարգերից դեպի ստրկատիրականը, որի հետևանքով երևան են գալիս դասակարգեր, պետություն, ազգություններ, քաղաքներ և քաղաքային կուլտուրա: Թեև մ. թ. ա. IV դարում հայ մշակույթը հասել էր աշխարհի փիլիսոփայական իմացության որոշ մակարդակի, սակայն Գ. Խրլոպյանի կարծիքով այդ շրջանում դեռևս առկա «չէր ինքնատիպ իմաստասիրական միտքն իր ազգային տերմինաբանությամբ և տարբերակներով» (էջ 11): Ցույց տալով, որ հայ իմաստասիրությունն այդպիսի հատկանիշներ ձեռք է բերում միայն հելլենիզմի դարաշրջանում, հեղինակն այնուհետև անդրադառնում է այն գործոններին, որոնք նպաստել են դրա առաջացմանը: Ըստ գրքում եղած տվյալների, վաղ հելլենիզմի շրջանում հայ սոցիալական մտքի ձևավորման գործում, բացի դիցաբանական ավանդույթներից, մեծ դեր են խաղացել հունական մշակույթի երախտավորների (Հեսիոդոս, Եվրիպիդես) գործերը, հայ գահակալների (Արտաշես Ա., Տիգրան Մեծ, Արտավազդ Բ) օրենսդրական, քաղաքական և մշակութային գործունեությունը: Բացի նշվածից, գրքում հատուկ վերլուծված է նաև Լուկուլլոսի կողմից Հռոմ գերության տարված Տիրան Հայկազնի դերը հայկական արիստոտելիզմի հիմնավորման ու Դիոնիսիոս Թրակացու և Կիկերոնի գաղափարները հայ իրականության մեջ տարածելու գործում, իսկ Հայաստանում գործող և հայ մշակույթի ընթացքի վրա որոշակիորեն ազդող օտարազգի թափառաշրջիկ մտավորականներից ուշադրության են առնված Մետրոդորոս Սկեփսիացին և Ամփիկրատես Աթենացին:

Ուշ հելլենիզմի շրջանում հայ իմաստասիրության զարգացման գործում, ըստ Խրլոպյանի, զգալի դեր է խաղացել ականավոր պատմագիրների մի պլեադա՝ Յամբլիխոս, Անհի Արամազդա—Ջևս տաճարի քուրմ Օղյումպ, Բարդեծան Եդեսացի, Մար Աբաս Կատինա Մծուրանցի, ինչպես նաև նոր պլատոնականների մի մեծ խումբ՝ Պարույր Հայկազնի և Լեոնտիոս Հայկազնի գլխավորությամբ: Նրանց շնորհիվ է, որ, ինչպես նշում է հեղինակը, հայ սոցիալական փիլիսոփայության մեջ մուտք են գործում այնպիսի ըմբռնումներ, ինչպիսիք են սոցիալական իրականության աստիճանական փոփոխության, փիլիսոփայության տեսականի և կիրառականի բաժանման, քաղաքական ուժի շնորհիվ պետական իշխանության հիմնավորման, ինչպես նաև հասարակության ֆունկցիոնալ-կառուցվածքային տեսության միջոցով հարուստների և աղքատների դասակարգային հակասությունների հաշտեցման գաղափարները: Այստեղ նշված է, որ նույն ձևով հայ փիլիսոփայության մեջ արծարծվել են Հայաստանում տարածվող քրիստոնեական համայնքների առաքելական հայրերի, ջատագովների և հակագնոստիկներին բնորոշ մի շարք դրույթներ ու գաղափարներ: Վերջապես, հայ սոցիալական իմաստասիրության ձևավորման գործում վճռական նշանակություն է ունեցել նաև հայ աղանդավորական շարժումը, որի արտահայտություններից էին բարդեսանականությունը և վալենտինականությունը: Այդ գնոստիկական հոսանքները, հեղինակի հավաստումով, նըպաստել են հակաֆեոդալական գաղափարախոսության մշակմանը և նեոպլատոնիզմի տարածմանը հայ իրականության մեջ:

Նկատի ունենալով, որ Հայաստանը եղել է այն երկրներից մեկը, որ առաջինն է թևակոխել ֆեոդալական արտադրահարաբերությունների փուլը, գրքում հեղինակն իր առջև խնդիր է դրել հայկական նոր նյութերի հիման վրա բացահայտել նաև այդ դարաշրջանի հասարակագիտական մտքի ձևավորման ու զարգացման օրինաչափությունները: Նա իրավամբ գրում է, որ սխալ է այդ շրջանում պատրիստիկայի և կրոնական վարդապետության նշանակությունը գերագնահատելը: Օբյեկտիվորեն քննարկելով հարցը, նա վաղ ֆեոդալական մըշակույթի զարգացման պրոցեսում տարբերակում է երկու փուլ (IV—VI և VII—IX դարեր): Առաջինում, որտեղ ճշգրտվում են նաև հայ իմաստասիրական մտքի հիմնական առանձնահատկությունները, նկատելի են անտիկ և հելլենիստական մտքի որոշակի ակտիվությունը, հայ ժողովրդի ազատագրական պայքարի գաղափարախոսության հետ անմիջապես առնչվող մաշտոցյան թարգմանչաց և հունաբան մշակութային-քաղաքական շարժումները, դեռևս չսակրացած և չդոգմատիկացված վաղ պատրիստիկան, հայկական նորպլատոնակա-



նությունը և աղանդավորական գաղափարախոսությունը: Վաղ ֆեոդալիզմի երկրորդ փուլում, երբ բացահայտորեն դրսևորվում են ֆեոդալիզմի հակասությունները և ձևավորված ֆեոդալական վարդապետությունը ստանում է սխոլաստիկական տեսք, ֆեոդալական միտքն անկում է ապրում և ժամանակաշրջանի առաջընթացի չափանիշը դառնում է հակաֆեոդալական, մասնավորապես՝ պավլիկյան գաղափարախոսությունը:

Հաշվի առնելով, որ հայ ժողովուրդն ստիպված է եղել պայքարելու ո՛չ միայն սոցիալական հավասարության ու արդարության, այլև քաղաքական ազատության ու մշակութային ինքնատիպության համար, հեղինակն անդրադարձել է նաև պայքարի փիլիսոփայության տարբեր հոսանքների, ձևերի ու եղանակների զարգացման ու ներգործման օրինաչափություններին: Պայքարի փիլիսոփայության կառուցվածքում հատկապես շեշտվում են սոցիալական իրականության կառուցվածքի ու փոփոխության, սոցիալական խմբերի հարաբերության, ցանկալի հասարակության մոդելի, պատերազմի, ապստամբության, ընտանիքի, մարդու և նրա արժույթային կողմնորոշման, բարոյագիտության ու գեղագիտության հետ անմիջականորեն առնչվող հարցերը: Մաշտոցը հակադրվում է քրիստոնեական կոսմոպոլիտիզմին ու փորձում յուրովի բացատրել մարդկության պատմության ընթացքը, կերտել ակտիվ ու բանական մարդու մոդելը: Կորյունը բարձրացնում է անհատի իրավունքների և նրա աշխարհիկ գործունեության նշանակության հարցը: Եզնիկը, հիմնվելով գոյաբանական իր ինքնատիպ լուծումների վրա, աշխատում է բանականորեն մեկնաբանել չարիքի պրոբլեմը և այդ դիրքերից լուսաբանել զավթիչների դեմ պայքարելու անհրաժեշտության տեսական հիմքերը: Ակտիվ և բանական մարդու գործունեության վերլուծությունը նրան առաջնորդում է դեպի պլատոնա-արիստոտելյան ուսմունքը, հետերոնում բարոյագիտությունը, կամքի ազատության պելագյան մեկնաբանության տարբերակը և քրիստոնեության առաջացման հակակրոնական բացատրությունը: Եղիշեն որոշ դեպքերում հակվում է դեպի նախնական քրիստոնեության համայնքային սեփականության գաղափարը, Օգոստոս Երանելու հետ միաժամանակ նա մշակում է երկու թագավորության, երկու իրավունքների և երկու տեսակ պետականության գաղափարը և այլն: Փավստոս Բուզանդը ընդարձակում է մարդկային պատկանելության շրջանակները և շեշտում, որ հայրենիքի համար կատարված ինքնազոհությունը փոխհատուցելի է աստծո կողմից: Սեբեոսը ազատագրական գաղափարախոսությունը կապում է նաև կրոնական հանդուրժողականության հետ: Իսկ Ղևոնդ պատմիչը տեսականորեն հիմնավորում է այն միտքը, որ ոչ մի ազգ իրավունք չունի պնդելու, որ ինքը ի բնե կոչված է ուրիշներին տիրելու: Այդ ճշմարտության խախտմամբ է նա բացատրում պատերազմների առկայությունը:

Ելնելով լենինյան այս ցուցումից, որ ժողովուրդը խիստ էական դեր է խաղացել իմաստասիրության ծագման ու զարգացման գործում, հեղինակն իր առջև դրված խնդիրներից մեկն էլ համարել է Հայաստանում հասարակական մտքի ձևավորման ու զարգացման գործում հայ ժողովրդի աշխատավորական լայն խավերի աշխարհայացքի դերն ու նշանակությունը ցույց տալը: Ըստ նրա, սկզբնական փուլում ժողովուրդը հասարակական մտքի ձևավորման վրա ազդել է դիցաբանության, առասպելի, վիպական շարքի միջոցով, ֆեոդալիզմի պայմաններում՝ աղանդավորության քողով: Այդ շարժումների և դրանց գաղափարախոսության ներգործության աստիճանը բացատրում է ֆեոդալական արտադրահարաբերությունների հակասությունների սրմամբ, սոցիալական տարբեր խմբավորումների ու դասերի ուժերի հարաբերակցությամբ, ժողովրդական զանգվածների և հատկապես գյուղացիության կազմակերպվածության աստիճանով, տիրող մշակութային մթնոլորտով և փիլիսոփայական ավանդույթներով: Այս պատճառով, նա իրավամբ գրտնում է, որ աղանդավորության առաջին փուլում ժողովրդական աշխարհայացքը նվազ հակաֆեոդալական էր, թույլ կազմակերպված և կրում էր Հայաստանում դեռևս գոյավորման վիճակում գտնվող իմաստասիրության կնիքը: Հաջորդ փուլում այն ո՛չ միայն ավելի արմատական և կազմակերպված է դառնում, այլև ձեռք է բերում շեշտված տեղական երանգ, հանդես գալիս որպես այդ շրջանի փիլիսոփայության մակարդակի կարևորագույն չափանիշներից մեկը: Ընթերցողն իսկապես համոզվում է, որ ֆեոդալական պրոգրեսիվ գաղափարախոսության երաշխիքը ժողովրդականի հետ ունեցած իր կապի, ընդհանրության մեջ է: Որքանով առաջադեմ ֆեոդալական գործիչը հեռանում է ժողովրդական ակունքներից, այնքանով թուլանում է նրա պրոգրեսիվությունը: Այդ ճշմարտությունը հատկապես խոսուն է դառնում ազատագրական պայքարի թեժ պահերին: Այս տեսանկյունից է նա գնահատում ժամանակաշրջանի բոլոր հեղինակներին և հստակ նպատակադրվածությամբ շեշտում Մովսես Կաղանկատվացու հետևյալ միտքը. «Արդ, երբ այդ ամբարտավանը (թագավորը— Ա. Թ.) պարտվեց, իր ազդրի վրա սուր կապող ամեն մի ռազմիկ հասկացավ, որ իրենց առջև

ոչինչ են թագավորների իշխանությունը և զորավորների ուժը» (էջ 222):

Հայտնի է, որ հելլենական մշակույթին բնորոշ էր սինկրետիզմը՝ տեղականի և հելլենականի օրգանական համադրությունը: Դրան անմիջապես հաջորդել է մաշտոցյան մշակութային-քաղաքական շարժումը, որի ելակետերից մեկը ինքնատիպ և մարտունակ ազգային մշակույթ կերտելու գործում համաշխարհայինի լայն օգտագործման անհրաժեշտության դրույթն էր: Այս պատճառով էլ հեղինակն անխուսափելիորեն զբաղվել է նաև հայ մշակույթի զարգարման գործում տարբեր մշակույթների ինտեգրացման օրինաչափությունների բացահայտմամբ և այդ երևույթի նշանակության վերլուծությամբ: Չի կարելի չհամաձայնել Գ. Խրլոպյանի այն թեզի հետ, որ բանական ինտեգրացիան ո՛չ միայն նպաստել է հայ մշակույթի զարգացմանը, այլև դրան տվել որոշակի ճկունություն, ակտիվ և արդյունավետ հարմարվողականություն: Այդպիսի ինտեգրացումը ինտերնացիոնալացման միջոցներից մեկն է: Այս հենքի վրա է դիտված հայկական պլատոնիզմի, արիստոտելիզմի և նորպլատոնականության ձևավորման ու զարգացման ընթացքը:

Այդ երեքից յուրաքանչյուրի նշանակությունը պարզելիս, հեղինակը նկատի է ունեցել այն հանգամանքը, որ դրանց առաջադրած դրույթների մի մասը հիմք են ծառայել քրիստոնեական ուղղափառ վարդապետության ու դոգմատիկայի մշակման, իսկ մյուսը՝ աղանդավորական, հակաեկեղեցական և ազատախոհական գաղափարախոսության ձևավորման համար: Նշելով առաջին խմբին պատկանող դրույթների ժառանգորդման մասին, հեղինակն իրավամբ ուշադրությունը կենտրոնացրել է երկրորդի վրա: Միաժամանակ ցույց է տրված, որ հայ պրոգրեսիվ մտածողները հիմնականում ավելի հակված են եղել դեպի արիստոտելիզմը, քան պլատոնիզմը: Պատահական չէ, որ հայկական նորպլատոնիզմը նույնպես ստացել է պերեպաթետիկական կողմնորոշում:

Հայկական պլատոնիզմը, ինչպես դեռևս իր ժամանակին նկատել է Եզնիկ Կողբացին, դրսևորվել է թե՛ կրոնական վարդապետության ու աշխարհիկ ֆեոդալական գաղափարախոսության, թե՛ աղանդավորութան մեջ: Առաջին հոսանքը շարունակել է միաստվածության, նախախնամության, գաղափարական սկզբի, աշխարհիկ կյանքի նշանակության թերագնահատման, դասակարգային հարաբերությունների էության վերաբերյալ պլատոնյան դրույթները: Երկրորդն առավելաբար ժառանգորդել է գիտության ջատագովության, մարդկային գործունեության, հասարակության կառուցվածքի, բարոյականության հարաբերականության, փիլիսոփայի սոցիալական առաքելության մասին դրույթները: Աղանդավորականությունը՝ ֆիզիկականի թերագնահատման պլատոնյան միտումը հասցրել է ընդհուպ քրիստոնեական նյութական սիմվոլիկայի հերքում, պլատոնյան վերհուշի դրույթը վերամշակելով, հանգել մարդու և աստծո միաձուլման գաղափարին: Քրիստոնեությունը Արիստոտելից վերցնում է առավելաբար ձևի մասին ուսմունքը: Աշխարհիկ ֆեոդալական գաղափարախոսության ներկայացուցիչները շարունակում են նրա նախանյութի, աստծո գոյության փիլիսոփայական հիմնավորումը, իրականության աստիճանավորվածության գաղափարը, սենսուալիզմը, ստեղծող և ստեղծված բանականության դրույթը, ոսկե միջինի, հասարակության, գործնական փիլիսոփայության, ընտանիքի, մարդու սոցիալական էության մասին տեսակետները: Աղանդավորականները շեշտում են այն, ինչով Արիստոտելի մատերիալիզմը կարող է հիմնավորել իրենց դուալիզմը, մարդու քաղաքական և աշխարհիկ կյանքի նշանակությունը, մարդու բանական վարքը, օրինականությունը, մարդու և աստծո նույնացման գաղափարը:

Գրքում բացահայտվել են նաև նորպլատոնական և հայկական դպրոցների առանձնահատկությունները: Վաղ միջնադարում կարելի է տարբերակել հայկական նորպլատոնականության զարգացման երեք փուլ: III—V դդ. հեղինակը համարում է այն շրջանը, երբ հայ իմաստասերները ծանոթանում են այդ դպրոցի հետ և պաշտպանում նրա զանազան դրույթները: V—VII դդ. այն տեղայնանում և հանդես է գալիս որպես ամբողջական փիլիսոփայական դպրոց: VIII դարում ձևավորվում է հայկական արեոպագիտյան նորպլատոնականությունը: Իսկ այդ բոլորի հիման վրա IX—X դդ. ձևավորվում է Գրիգոր Նարեկացու նորպլատոնականությունը:

Հասարակական մտքի զարգացումը Գ. Խրլոպյանը բացատրում է ինչպես սոցիալ-քաղաքական հակամարտություններով, այնպես էլ բուն փիլիսոփայական օրինաչափություններով: Առաջինում նա տարբերակում է եռաշերտ մակարդակներ: Ամենահիմնականը սոցիալական արդարության և հավասարության համար գյուղացիների և ժողովրդական լայն զանգվածների պայքարն է ֆեոդալիզմի դեմ, որը հիմնականում հանդես է գալիս աղանդավորականության ձևով: Երկրորդը, ֆեոդալիզմի ներսում աշխարհիկ և կրոնական թևերի հակամարտությունն է՝ հանուն քաղաքական և սոցիալ-մշակութային գերիշխանության: Իսկ երրորդը, հայ ժողովրդի ազատագրական պայքարն է օտար բռնակալների դեմ:

Հասարակագիտության զարգացման ներքին մեխանիզմներում, բուն իմաստասիրության օրինաչափություններում յուրաքանչյուր դեպքում առանձնացված են դրա տարբեր կողմերը: Գյուղացիականը իրեն դրսևորում է այնպիսի օպոզիցիոնիզմի օրինաչափություններով, երբ նկատելի են առկա թերությունները, սակայն դրա հեռանկարները չեն բացահայտվում: Այս պատճառով էլ հակաֆեոդալական ուժերը ձգտում են վերականգնել նախնական քրիստոնեության բնորոշ համայնականությունը, դիմում են միստիցիզմին: Մյուս կողմից, որպես ընդդիմադիր հոսանք, նրանք չեն կարող զուրկ լինել ռացիոնալիզմից, որն արտահայտվում է անտիկ փիլիսոփայության հետ նրա ունեցած կապերում, դեմոկրատական կարգեր հաստատելու միտումի ու հումանիզմի մեջ: Աշխարհիկ ֆեոդալներն առավելաբար ձգտում են սոցիալական երևույթները բացատրող ավելի բնական մոդելներ հաստատել, ընդարձակելով մարդու սոցիալական կապերի շրջանակները, հիմնավորել աշխարհիկ կյանքի նշանակության ընդունելի սահմաններ:

Հեղինակը գրքում վերլուծել է վաղ միջնադարյան հայ իմաստասերների հասարակագիտական հայացքները: Մեսրոպ Մաշտոցը փորձում է տալ պատմության ավելի բնական բացատրություն: Եզնիկ Կողբացին նույնը կատարում է չարիքի մեկնաբանման ասպարեզում և այդ պատճառով էլ տվյալ երևույթը քննում է ո՛չ միայն աստվածաբանական, այլև իրավագիտական, փիլիսոփայական, բարոյագիտական ու հոգեբանական առումով:

Հարցերի բանական լուծման փորձերը միջնադարյան պրոգրեսիվ իմաստասիրության մշակման միջոցներից մեկն է: Միաժամանակ, սակայն, այդ չի նշանակում, որ հնարավոր չէր բարոյախոսության սահմանում պրոգրեսիվ լուծումներ առաջադրել: Սոցիալական կառավարման հարցերի բարոյագիտական վերլուծության ամենաարմատական դիրքորոշում է ցուցաբերում Հովհան Մայրագոմեցին: Նա մարդու բնական հավասարության նախադրյալից բխեցնում է, որ անհավասարությունն ու շահագործումը մարդկային գործունեության արդյունք են, միաժամանակ, նորմալ ու անխուսափելի: Մայրագոմեցին բացահայտում է աղանդավորականության տնտեսական արմատները ու միջոցներ առաջարկում դրանց վերացման համար: Նա սարսափում է անող կրոնական անտարբերության փաստից ու անհրաժեշտ համարում վերամշակել տիրող վարդապետության որոշակի սկզբունքներն ու դրույթները: Հովհան Մանդակունին, նկատելով սոցիալական կառավարման բարդացումը, առաջադրում է ղեկավարի հատկանիշներ մշակելու իր ծրագիրը: Հովհան Օձնեցին այդ հարցում հատկապես շեշտում է իրավական-բանական միջոցառումների կարգավորիչ դերը:

Աշխատության մեջ նկատելի են որոշ թերություններ: Նախ, անհասկանալի , թե ինչու նըման մենագրության մեջ քիչ տեղ է հատկացված Դավիթ Հարքացու, Ստեփանոս Սյունեցու, կամ բոլորովին տեղ չի հատկացված Մովսես փիլիսոփայի, Մամբրե վերծանողի հայացքների վերլուծությանը: Աշխատությունը զգալիորեն շահած կլիներ, եթե պարունակեր այդ մտածողների սոցիալ--քաղաքական, հասարակագիտական ըմբռնումների խոր և հանգամանալից լուսաբանումը: Ավելին, վատ չէր լինի, եթե գրքում որոշ զուգահեռներ անցկացվեր նաև հետազոտվող հեղինակների ըմբռնումների միջև, վեր հանվեր նրանց հայացքների ընդհանրական և տարբերիչ կողմերը:

Հեղինակը ժամանակաշրջանի նկարագրության հարցերը գրեթե ուշադրության չի արժանացրել, որը կնպաստեր հայ սոցիալական իմաստասիրության հոսումների ավելի խոր ըմբռնմանը: Թեև հեղինակը մանրամասնորեն բացահայտել է հայկական նորպլատոնականության ձևավորման լինելությունը, սակայն գրեթե չի զբաղվել դրա տարբերակիչ ու առանձնահատուկ հատկանիշների բնորոշմամբ: Մինչդեռ, դա չափազանց կարևոր է, քանի որ մինչև օրս Դավիթ Անհաղթի նորպլատոնիզմի յուրահատկությունների բացահայտման հարցը մնում է չլուսաբանված: Նկատենք միաժամանակ, որ աշխատության գլուխների վերնագրերը չունեն մեկ միասնական հիմք և հաճախ չեն անդրադառնում տվյալ գլխում քննարկվող հարցերի ամբողջականությանը, թեև բացահայտվում է տվյալ հեղինակի ամենակարևոր ներդրման էությունը:

Վերոհիշյալ թերություններով հանդերձ Գ. Տ. Խրլոպյանը կատարել է օգտակար և շնորհակալ գործ՝ նոր տեսանկյունից իմաստավորելով հելլենիստական և վաղ ավատատիրական իմաստասիրական մշակույթի զարգացման օրինաչափությունները: Անշուշտ, լույս է տեսել արժեքավոր ուսումնասիրություն, որը լուրջ ներդրում է հայ փիլիսոփայական մտքի պատմության մի շատ կարևոր ժամանակաշրջանի լուսաբանման ու բնութագրման գործում:

**Ա. Մ. ԹԵՎՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*նարկատերերը, հակառակ երեխայի իրավունքի դեկլարացիայի 9-րդ կետի, օգտագործում են մանկական աշխատանքը, որովհետև այս դեպքում հարկ չի լինի գործ ունենալ արհմիություններին հետ։*

*Երեխաներն առաջին հերթին և ամենից շատ են տուժում պատերազմներից։ Պատերազմի մոլոքն ամեն տարի կլանում է ավելի քան 400 միլիարդ դոլար։ Այդ գումարը 25 տարի կբավականացներ հետամնաց երկրների զարգացման համար։ Կես օրվա ռազմական ծախսերը կբավականացնեին մալարիան վերջնականապես երկրի երեսից վերացնելու։ Մեկ «Լեոպարդ—2» տանկի արժեքը հավասար է 36 երեքսենյականոց բնակարանի արժեքին։ «Տրայդենտ» սուզանավի համար հատկացված գումարով կարելի կլիներ տարին բոլոր ուսուցանել 16 միլիոն երեխաների։*

*Սովետական Միությունը, սոցիալիստական համագործակցության երկրները և աշխարհի առաջադեմ մարդկությունը պայքարում են հանուն կայուն խաղաղության, սպառազինությունների մրցավազքի դադարեցման, ամեն ազգության ու ամեն գույնի մարդկանց ու նրանց երեխաների ապահով ու երջանիկ մանկության համար։*

Առողջ մանուկ գրքի էջերում իրավացիորեն շեշտվում է, որ երիտասարդ ամուսինների միջև փոխըմբռնողությունը, ինքնասահմանափակումը, անձնական վարքագծի ենթարկումը ամուսնության և ընտանիքի շահերին, նպատակներին՝ նախապայմանն են այն ներդաշնակ միկրոկլիմայի, ուր աշխարհ է գալիս երեխան և որտեղ կազմակերպվում են նրա ֆիզիկական ու բարոյական կյանքը, աճը։

Երեխաների թվի պլանավորումը, որպես ամուսինների գիտակցական գործունեության արդյունք, միաժամանակ սոցիալական պլանավորման ձևերից մեկն է։ Այս հարցի ճիշտ լուծմամբ է պայմանավորված ոչ միայն ամբողջ հասարակության և յուրաքանչյուր ընտանիքի շահերի զուգակցումը, ոչ միայն ժողովրդագրական աճի, այլև հոգեբանական այն մթնոլորտի ապահովումը, որն անհրաժեշտ է կոմունիստական հասարակության ապագա կառուցողի նպատակային դաստիարակության համար։ Համոզիչ են հեղինակի այն խոսքերը, թե «մանկավարժության դիտումները վկայում են, որ ընտանիքում երկու և ավելի երեխաների առկայությունը միանգամայն բարենպաստ միջավայր է ստեղծում նրանց ներարկելու մարդկային այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են հոգատարությունը, ուշադրությունը, ընկերասիրությունը, փոխօգնության, կոլեկտիվիզմի զգացումը և այլն (էջ 30—31)։

Այս ամենից բխում է այն, թե որքան անհրաժեշտ են ընտանեկան համերաշխությունը, ընտանիքի հոգսերն ամուսնու և կնոջ միջև ճիշտ բաշխելը, համատեղ լուծելը։ Դրանք հաշվի առնելով միայն կարելի է ապահովել երեխաների շահերի պաշտպանության լավագույն պայմանները, բացառել ծնողական էգոիզմի դրսևորումները։

Ապագա մոր առողջության պահպանումը կամ հիվանդությունների կանխարգելումը ուղղակիորեն կապվում են սաղմի և, ապա, նորածնի առողջության հետ։ Այս կարևոր ճըշմարտությունը գիտական հիմնավորվածությամբ ներկայացված է «Երեխան պետք է ծնվի առողջ» գլխում, որտեղ նաև հիմնավորապես զգուշացվում է ինքնագլուխ՝ «սեփական հասկացողությամբ» բժշկարարությունից, որի հետևանքները խիստ վտանգավոր են, երբեմն՝ անուղղելի։

Նորածնի խնամքի ճիշտ կազմակերպումը տանը, նրա օրգանիզմի առանձնահատկությունների իմացությունը, հասակի փոփոխման հետ ռեժիմի համապատասխան փոփոխման ապահովումը, նրան շրջապատող իրերի ու առարկաների ընտրությունն ու դասավորությունը, կերակրման եղանակն ու սննդի ճիշտ ընտրությունը, կերակրող մոր սնվելու հետ կապված և բազմաթիվ այլ հարցեր, որոնք կենսականորեն անհրաժեշտ են երեխայի համար, գրքում շարադրված են ամենայն մանրակրկիտությամբ։ Հեղինակը մասնավորապես շեշտում է մեր ժողովրդի կենցաղում արմատացած, իներցիայի ուժով սերնդից սերունդ փոխանցվող սխալ պատկերացումներն ու նախապաշարումները մերժելու, դրանք վերացնելու անհրաժեշտությունը։ Թերևս շատերը չգիտեն, օրինակ, որ մեր ավանդական սիրված ու հարգված խավիծը մեր սիրեցյալ մանկիկների առողջության ոչ թե սատարողը, այլ թշնամին է։

Այս խորհուրդներին տեղյակ լինելն ու դրանք ճիշտ գործադրելը ոչ միայն նորածնի առողջության ու աճի անհրաժեշտ գրավականն են, այլև մոր ուժերի հսկայական տնտեսում են ենթադրում, որը շատ կարևոր է առողջ մանկան շահերի առումով։

Հեղինակը ոչ միայն բժշկի, այլև հոգեբանի ներշնչող, հորդորող, հոգատար ու քաջալերող տոնով գրքի շարադրանքը դարձնում է ավելի համոզիչ, հավատ ներշնչող և, հետևաբար, առավել օգտակար։ Գիրքը ոչ միայն համբերատարության է կոչում սնուցող մորը՝ հաղթահարելու ֆիզիկական ու հոգեկան այն տվայտանքները, որ նա կրում է նորածնին խնամելիս, այլև շրջապատողներին տոգորում ավելի մեծ պատասխանատվությամբ ու հոգատարությամբ մոր ու մանկան նկատմամբ։ Սրանք մենագրության անուրանալի առավելություններից են։



Այստեղ մեծ ուշադրություն է նվիրված երեխաների հիվանդությունները կանխարգելելու և բուժելու հարցերին, հիվանդության ընթացքում և դրանից հետո տանը կազմակերպվելիք խընամքին, երեխայի հասակի, հիվանդության բնույթի ու ընթացքի, երեխայի անհատական առանձնահատկությունների հետ կապված հանգամանքներին, ֆիզիկական ու հոգեբանական հնարավոր փոփոխություններին, բուժման ճիշտ մեթոդներին ու միջոցներին։

Հեղինակն զգալի տեղ է հատկացրել վաղ, նախադպրոցական և դպրոցական հասակի երեխաների դաստիարակության հարցերին։ «Բոլոր մտածողները, կարծում եմ, եկել են այն եզրակացությանը, որ դաստիարակությունը պետք է սկսել օրորոցից»,— ասել է ռուս մեծ բժիշկ և մանկավարժ Ն. Ի. Պիրոգովը։ Հեղինակն անվերապահորեն բաժանելով այս կարծիքը, շեշտում է, որ ժամանակին սկսված ճիշտ դաստիարակությունը վաղ մանկությունից կապահովի երեխայի ֆիզիկական ու հոգեկան ներդաշնակ զարգացումը և կնպաստի նրա անհատական հատկությունների լավագույն ձևավորմանը, կյանքի ավելի ուշ շրջանում զարգացման առավել արդյունքների հասնելուն։

Կոնկրետ օրինակների և հոգեվիճակների հիման վրա հանգամանորեն վերլուծելով երեխայի ու նրա ծնողների փոխհարաբերությունների հոգեբանական կողմը, գրքում ցույց է տրվում, թե որքան էական է երեխայի տարիքի հետ կապված պահանջների, բնական հետաքրքրությունների բավարարումը, մանկավարժական ճիշտ մեթոդների կիրառումը։

Հեղինակը կարևորում է նաև սեռական հասունացման շրջանում պատանիների հետ բացատրական աշխատանք տանելու անհրաժեշտությունը, նշում լռության, անտեղյակության հնարավոր բացասական հետևանքները, խորհուրդներ տալիս նրանց սեռական հիգիենայի և շրջապատի բարոյահոգեբանական մթնոլորտի վերաբերյալ։ Ֆիզիկապես ու բարոյապես առողջ մարդ դաստիարակելու համար ծնողները պետք է օգնեն իրենց երեխային՝ լուծելու կյանքի առաջադրած բոլոր հարցերը։ Իսկ դա հնարավոր է երեխայի անհատական հատկությունները իմանալու դեպքում, ծնողների ու երեխաների փոխադարձ վստահության ու մտերմության պայմաններում։

Երեխային հասկանալը, նրա նկատմամբ զիջողականությունը խստապահանջության ու հետևողականության հետ զուգակցելը, նրա կարողություններին համապատասխան մտավոր ու ֆիզիկական զարգացման ծրագրերի իրականացումը, բժշկական ու մանկավարժական սկզբունքների ճիշտ համադրումը առողջ մանուկ մեծացնելու գրավականն են։

Յուրաքանչյուր երեխա իրավունք ունի երջանիկ մանկության, որի հիմքը, հասարակության ընձեռած լայն հնարավորություններով հանդերձ, դնում են ծնողները։ «Երեխա մեծացնելն իսկական արվեստ է, որը պետք է կատարելագործել ամբողջ կյանքում»։ Աֆորիզմի ուժ ստացած հեղինակի բազմաթիվ մտքերից այս մեկի հետ ևս դժվար է չհամաձայնել, մանավանդ Առողջ մանուկ գիրքն ընթերցելուց հետո, որի էջերը լի են նուրբ դիտողականությամբ, հոգատարությամբ, սիրով։ Ակամա հիշում ես այն հայտնի ասույթը, թե գրող կամ արվեստագետ ծնվում են։ Ծնվում են նաև իսկական մանկավարժներն ու բժիշկները։ Հարուստ գիտելիքներ ունենալուց բացի, նրանք պետք է օժտված լինեն անկեղծ սիրող սրտով, հոգու քնքշությամբ, դաստիարակության հարցերում սթափ բանականությամբ, պետական մտածողությամբ։ Հեղինակը ջանում է այդ ամենով տոգորել բոլոր ծնողներին, նրանց մեջ գորովից ու «սիրել-պաշտելու» իրավունքից զատ արթնացնել նաև ապագա քաղաքացու բարոյաքաղաքական կերպարի համար պատասխանատուների, որոնց ջանքերով մեծապես պայմանավորված են իրենց զավակների ո՛չ միայն առողջությունը, այլև երջանկությունը, իրենց իսկ երջանկությունը, ողջ հասարակության երջանկությունը։

Հեղինակը կոչ է անում ծնողներին չխախտել ապագա քաղաքացիների հոգևոր աշխարհի զարգացման ամենահաստատուն կանխադրույթներից մեկը՝ նրանց փոքրուց վարժեցնել ֆիզիկական աշխատանքի. ֆիզիկական աշխատանքից խորշելը նրանց կարող է դարձնել քաղքենի ու պորտաբույծ։ Հեղինակը վճռականորեն դեմ է խնամակալական, սպառողական հոգեբանությանը։

Այս ամենը համահունչ են մեր կուսակցության առաջադրած արդի խնդիրներին։ «Մենք ջանում ենք երեխաներին սովորեցնել բարություն, ընկերասիրություն, նրանց սովորեցնել բարիդրացիորեն ապրել ամեն ազգության և ամեն գույնի մարդկանց հետ, նրանց սովորեցնել հարգել աշխատանքը և կարողանալ աշխատել՝ ի բարօրություն բոլոր մարդկանց»,— Մանկան տարվա առթիվ իր ելույթում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։

«Ծնողական հեռակա դասընթաց» կարելի է համարել Առողջ մանուկ գիրքը, որն ընթերցողին հանգամանորեն մեկնում է խնդրի ողջ լրջությունն ու կարևորությունը, առավել հարցանքով ու ակնածանքով տոգորում բոլոր մանկաբույժների, բուժքույրերի և, ինչ խոսք, գրքի հեղինակի նկատմամբ, մի անգամ ևս շեշտում

այն օրինական հպարտության զգացումը, թե քաղաքացին ես դու այն հասարակության, որը ոչ միայն կոչ է անում, այլև իրականացնում է «լավագույնը երեխաներին» ամենահումանիստական սկզբունքը:

Հայտնի է, որ բուժում են ոչ թե հիվանդությունը, այլ՝ հիվանդին, այսինքն կոնկրետ անձը հաշվի առնելը բժշկագիտության հիմնական առանձնահատկություններից է: Ակներև է, որ հեղինակը՝ պրոֆեսոր Վ. Ա. Աստվածատրյանը, հաշվի առնելով այս ճշմարտությունը, «տեղայնացրել է» շարադրանքը, նկատի է ունեցել հայկական ավանդույթները, միջավայրի հոգեբանական յուրահատկությունները, ուստի և գիրքն ունի իր «կոնկրետ հասցեատերը»— դա հիմնականում նորատի մայրն է: Սակայն գիրքը նույնչափ օգտակար է նաև «փորձառու» ծնողների համար:

Գրքի շարադրանքը կենդանի է, որոշ հատվածներ ուղղակի բարձրարվեստ նովելներ են հիշեցնում: Խոսուն վերնագրերն ու ենթավերնագրերը, ընդգծված կարևոր մտքերն ու ասույթները առավել հստակ ու շեշտված են դարձնում շարադրանքը, արժեքավորում գրքի տեղեկատու լինելու հանգամանքը ևս: Ցավոք, գիրքը զերծ չէ լեզվաոճական սխալներից, իմաստային աղավաղումներից և վրիպակներից, որոնցից կարելի կլիներ խուսափել այն բարեխղճորեն խմբագրելու դեպքում:

Այսպիսով, մասնագիտական հմուտ շարադրանքով հեղինակը հասել է իր հետամտած գլխավոր նպատակին, այն է՝ ստեղծել մի օգտակար տեղեկատու-ձեռնարկ, որը մանկան առողջության պահպանման ու դաստիարակման գործում դառնար ծնողների ամենօրյա խորհրդատուն: Արժեր, որ Առողջ մանուկ գիրքը հրատարակվեր ավելի մեծ տպաքանակով:

Մ. Դ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ




**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ս., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ), **ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.**

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 06020 Պատվեր 484* ***Թղթի չափսը 70×108 1/16,*** *Տիրաժ՝ 16.582 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 6/III-1980 թ.:*


# Նոր գրքեր

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ելույթ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումում: ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումի որոշումը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Մ. ՍՈՒՍԼՈՎ— Ամբողջ կուսակցության գործը: *Զեկուցում գաղափարախոսական աշխատողների համամիութենական խորհրդակցությունում, 1979 թ. հոկտեմբերի 16-ին: «Հայաստան» հրատ., 1979:*

Մարքս-լենինյան փիլիսոփայության հիմունքները: *«Հայաստան» հրատ., 1979:*

Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին: ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. հուլիսի 12-ի որոշումը: Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունը ուժեղացնելու մասին: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի որոշումը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գիտական աթեիզմ: *Երկրորդ, ուղղված և լրացված հրատ.: «Հայաստան» հրատ., 1980:*

Չարենցյան ընթերցումներ: *Գիրք 4, ԵՊՀ հրատ., 1979:*

Ա. ԿԱՐԻՆՅԱՆ— Մեծ հումանիստ գրող Հակոբ Պարոնյանը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1980:*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Ալյոշա Ջափարիձե: *Կյանքն ու գործը: Ե., «Լույս» հրատ., 1979:*

Է. ԶՈՀՐԱԲՅԱՆ— Սովետական Ռուսաստանը և հայ-թուրքական հարաբերությունները 1920—1922 թթ: *ԵՊՀ հրատ., 1979:*

**Владимир Ильич Ленин.** Биографическая хроника. 1870 — 1924 гг., Т. 10. Январь—июль 1921. М., Политиздат, 1979.

**Воспоминания о Владимире Ильиче Ленине.** В пяти томах. Т. 5. Воспоминания зарубежных современников. Изд. второе. Институт марксизма-ленинизма при ЦК КПСС. М., Политиздат, 1979.

Ю. АНДРОПОВ — **Избранные речи и статьи.** М., Политиздат, 1979.

Е. ЯКОВЛЕВ — **Портрет и время.** М., Политиздат, 1979.

**Русские книги в библиотеках К. Маркса и Ф. Энгельса.** Институт марксизма-ленинизма при ЦК КПСС. М., Политиздат, 1979.

Л. ТОЛКУНОВ — **Главная революционная сила современности.** Мировое социалистическое содружество: становление, развитие, возрастающее влияние. Серия «Социализм: Опыт. Проблемы. Перспективы». М., Политиздат, 1979.

М. КАПИЦА — **КНР: три десятилетия — три политики.** М., Политиздат, 1979.

**Во главе творчества масс.** Партийное руководство социалистическим соревнованием. Серия «Опыт и актуальные проблемы идеологической работы». М., Политиздат, 1979.

**Совершенствовать подготовку руководящих партийных и советских кадров.** Опыт, методика. М., Политиздат, 1979.

**Развитые капиталистические страны.** Социально-экономический справочник. М., Политиздат, 1979.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՏԱՅԳԱՅԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մարդու համար բավական օգտակար նյութեր են պարունակում սիբիրյան տայգայի ծառերը։ Օրինակ, յուղի արդյունահանումը բրգաձև սոճու ասեղնատերևներից հնուց համարվել է տայգաբնակների արհեստ։ Այժմ բժշկության և պարֆյումերիայի համար թանկարժեք այդ հումքն ստացվում է արդյունաբերական եղանակով։ Տոմսկի մարզի անտառահատման տեղամասում գործում են ասեղնատերևների մշակման հատուկ սարքեր։ Բրգաձև սոճու յուղից բացի, արդյունաբերողները պատրաստում են մածուցիկ խեժանյութ— սոճու և մայրու խեժանյութ, որն օգտագործվում է բեկնախեժի և թղթի արտադրության համար։*

## ՄԵՔԵՆԱԳՐՈՒՄ ԵՆ ԲՈԼՈՐԸ

*Լենինգրադցի ինժեներ Գ. Զագորսկին ստեղծել է փոքրիկ գրամեքենա, որը տեղավորվում է նույնիսկ կանացի պայուսակում։ Մեքենայի տառատեսակը սովորական չափսի է, «պատճենահանի» միջոցով ստանդարտ թղթի վրա տպագրվում է տեքստի մի քանի օրինակ։ Հատուկ սարքի շնորհիվ կարելի է գտնել տառերը՝ մատները ստեղնաշարից չվերցնելով։ Երկշաբաթյա ուսուցումից հետո տարբեր տարիքի մարդիկ— թոշակառուներից մինչև դպրոցականները— մեքենագրում են նույնքան արագ, որքան պրոֆեսիոնալը՝ սովորականի վրա։*

## ՎԱՌԵԼԻՔ՝ ՋՐԱՏԱՐ ԽՈՂՈՎԱԿԻՑ

*Սովետական գիտնականներն ավարտում են ավտոմեքենայի համար ստեղծված խառնուրդի՝ բենզինաջրի փորձարկումները։ Վառելիքի նոր տեսակն ունի մի շարք առավելություններ։ Խառնուրդի այրման ժամանակ երկու անգամ պակասում է ածխաթթու գազի և մոտ 20 տոկոսով՝ ազոտաթթվի և այլ վնասակար նյութերի արտազատումը մթնոլորտ։ Դրա կիրառումը հնարավորություն է ընձեռում շոգ եղանակին ավելի երկար օգտագործելու շարժիչը՝ առանց մտահոգվելու, թե շոգից այն ավելի կտաքանա։ Միաժամանակ պարզվել է, որ ջրի ավելացումը նպաստում է վառելիքի որակի բարձրացմանը։ Վերջերս մայրաքաղաքի գիտնականները մշակել են բենզինաջրի խառնուրդի ստացման տեխնոլոգիան՝ արդյունաբերական մասշտաբներով։*

## ԱՊԱԳԱ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆԱԽԱՏԻՊԸ

*Մոսկվացի մասնագետները՝ մետաղահատ հաստոցների փորձարարական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները, «Ստանկոկոնստրուկցիա» փորձնական գործարանի ինժեներները և մի շարք հատուկ կոնստրուկտորական բյուրոների կոնստրուկտորներ համատեղ ստեղծել են արտադրության ավտոմատ հսկողության հատուկ սիստեմ՝ АСК—10 համալիրը։ Մի ճկուն սիստեմում միավորվել են թվածրագրային կառավարմամբ զինված մշակող կենտրոնները, ԷՀՄ-երը, հսկիչ-չափիչ սարքերը, ինչպես նաև տրանսպորտային միջոցները՝ նախապատրաստման և պատրաստի արտադրանքի համար։ Նման կոմպլեքսը նախատեսված է մեքենաշինության բարդ մասերի սև և մաքուր մշակումների համար (ֆրեզերային, ներտաշման և այլ գործողությունների)։ Այն կշահագործվի Վիլնյուսի «Ժալգիրիս» հաստոցաշինական գործարանում։*

*Ըստ Մոսկվայի ինժեներների հաշվարկների՝ արտադրողականությունը կբարձրանա 3—4 անգամ, շեշտակի կբարձրանա որակը և 1,5 անգամ կիջնի ինքնարժեքը։ АСК—10-ն արմատապես փոխում է արտադրության կուլտուրան՝ լրիվ ավտոմատացնելով ձեռքի ծանր աշխատանքը։ Կարևոր է նաև նշել, որ ծրագրային կառավարումը նվազեցնում է պարապուրդները, վերացնում խոտանը, պակասեցնում էլեկտրածախսերը՝ արտադրանքի մեկ միավորի հաշվով։*